ԱՌՁԵՌՆ

# ՆԱՄԱԿԱՆԻ

Պարունակութիւն

ՆՈՐ ՏԱՐՒՈՅ ԵՒ ԱՆՈՒԱՆ ՏՕՆԻ

ՆԱՄԱԿՆԵՐ

ՈՒՂԵՐՁՔ

Յաւակցական, Յանձնարարական

ԿՈՉԻ ՆԱՄԱԿՆԵՐ

Կտակներ, Աղերսագրեր, Վկայագրեր

ՊԱՆԴՈՒԽՏԻ ԵՒ ԸՆՏԱՆԵԿԱՆ ՆԱՄԱԿՆԵՐ

Տոմսակներ, Հեռագրեր

ԳՐԱԳԻՏԱՑ ՆԱՄԱԿՆԵՐ

Յօրինեց

ՍԻՄՈՆ ԳԱՓԱՄԱՃԵԱՆ

معارف نظارت جلیله سنك ۱۱۷ نومرولی
رخصتنامه سیله طبع اولنمشدر

Տպագր. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

Գործոյս հեղինակին հետ թղթակցիլ ուզողը թող բարեհաճի հետեւեալ երեսագիրը գործածել·

*ՍԻՄՈՆ ԳԱԲԱՄԱՃԵԱՆ*

**Կ. ՊՈԼԻՍ**

**Հանը Բուլօ խան թիւ 22**

# ԱՌՁԵՌՆ
# ՆԱՄԱԿԱՆԻ...



ՊԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ

ՆՈՐ ՏԱՐՒՈՅ ԵՒ ԱՆՈՒԱՆ ՏՕՆԻ ՆԱՄԱԿՆԵՐ

ՈՒՂԵՐՁՔ

ՑԱՒԱԿՑԱԿԱՆՔ, ՅԱՆՁՆԱՐԱՐԱԿԱՆՔ

ԳՈՐԾԻ ՆԱՄԱԿՆԵՐ

…ակներ, Աղերսագրեր, Վկայագրեր

ՊԱՆԴՈՒԽՏԻ ԵՒ ԸՆՏԱՆԵԿԱՆ ՆԱՄԱԿՆԵՐ

ՏՈՄՍԱԿՆԵՐ, ՀԵՌԱԳՐԵՐ

Գրագիտաց Նամակներ



Յօրինեց

ՍԻՄՈՆ ԳԱԲԱՄԱՃԵԱՆ

ՏՊԱԳՐԻՉ
ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ
Կ. ՊՈԼԻՍ. ԷՍԿԻ ԶԱՊԹԻԷ ՃԱՏՏԷՍԻ, ԹԻՒ 61

1893

# ՁՕՆ

ԱՌ

ՈՒՍԱՆՈՂ

# ՀԱՅ ՄԱՆԿՏԻՆ

# ՆԱԽԱԲԱՆ



Ի՞նչ հարկ *Նամականի* հրատարակել, մինչ մարդս իւր ընդունած դաստիարակութեամբ եւ փոքր ի շատէ գրելու վարժութեամբ կրնայ բան մը խմբագրել։

Այս առարկութիւն ըստ երեւութին ո՛րքան եւս հիմնաւոր թուի, չէ կարող Նամականւոյ մը հրատարակութիւնն անպէտ ցուցընել։ Զի Առձեռն Նամականիներ անոնց համար են՝ որք պէտք ունին օրինակներ տեսնելու։ Յաճախ նաեւ ընտանեկան կամ առեւտրական նամակ մը գրելու քաջ իսկ կարող մէկը շատ կը շուարի, երբ հարկ ըլլայ գրել արտաքոյ կարգի թուղթ մը, աղերսագիր մը կամ նամակ մը՝ որ անպատասխանի պիտի մնայ, եթէ հին սովորութեամբ որոշուած ձեւեր ճշդիւ պահուած չըլլան։

Ընդէ՞ր ապա արհամարհանօք մէկդի նետուի առաջնորդ մը՝ որ շատ անգամ կրնայ օգտակար ըլլալ։

Այսպիսի առաջնորդ մը ըստ կարելւոյն վստահելի եւ ձեռնհաս կացուցանելու համար՝ ջանացինք բազմաթիւ նամականիներ ուսումնասիրել։

Եւ ահա թարգմանածոյ եւ ինքնագիր օրինակներով կը կազմենք մեր այս գործ։

Կը յուսամք թէ ոչ նուազ օգտամատոյց կը լինին Նամակաց ընդլայնելի 48 նիւթեր, Հայ հեղի-

նակաց ոմանց նամակներ, մեծաւ մասամբ անտիպ եւ յոյժ հետաքրքրական եւ գեղեցիկ ոճով։

Հայ հեղինակաց Նուիրեալ ժԱ. գլուխն՝ գործոյս քոլորովին նոր եւ հրապուրիչ հանգամանք մի կ՚ընծայէ։ Շնորհակալութի՛ւն ամէն անոնց՝ որք իրենց անձնական նամակատուփերն սիրայօժար մեր առջեւ բացին, այսու իւրեանց Թանկագին բարեկամութեան նոր հաւաստիք մատուցանելով առ Հեղինակն գործոյս։

Գործոյս վերջին մասն կը կազմէ Թղթակցութեան մասին պատմական ծանօթութիւններ, ամէն ինչ խնամով հետազօտուած, նոյնպէս Թղթակցութեան կանոններ, սակագիններ, եւայլն, որք մասնաւոր հոգածութեամբ ճշդուած են։

Հետամուտ եղած եմք ամէն տեսակ նիւթի համար օրինակներ տալ։ Պէտք չէ կարծել Թէ այս օրինակներ վերջնական են. այդ՝ սխալ մ՚է։ Իւրաքանչիւր ոք պարտի ընել այն փոփոխութիւններ, զորս ողջմտութիւնն ցոյց պիտի տայ եւ պարագայից պատշաճեցնել անոր ձեւն։

Բացի այն *դիտողութիւններ*՝ զորս ի սկիզբն գլխոց ուրեք ուրեք դրած եմք, հետեւեալ ընդհանուր կանոններն եւս աստ կը զետեղեմք։

***Թուղթ***.— Պէտք է առ հասարակ Թուղթն եզերքէն ուղիղ կտրուած ըլլայ։ Աղերսագրի համար կը գործածուի միածալ Թուղթ, papier ministre (պաշտօնական Թուղթ) կոչուած։ Պէտք է երկԹերԹ ըլլայ այն։

Քառածալ կամ սովորական նամակի Թուղթն ընտանեկան կամ գործի նամակներու համար պէտք է գործածուի, անպատեհ է կէս Թերթ գործածել։

Սովորութիւնն միայն առեւտրական նամակներու համար կը ներէ այսմ. ուժածալ թուղթը տոմսակներու համար կը գործածուի։

*Թուականը*. — Կը ցուցնէ տեղին՝ ուր կը գրուի ամսաթիւը եւ տարին. գործի կամ առեւտրական նամակներու մէջ ստորագրութեններէն վերջ վարը ձախ կողմը դնելու է։ Անպատշաճ չէ սակայն միշտ ըստորեւ դնելն. հաւասարներու մէջ քաղաքավարութիւն մը աւելի ընելն վայելուչ է գործողին համար։

*Գլխագրութիւն նամակաց*. — Պէտք է մէկ տողի վրայ ըլլայ. ասոր եւ գրուածին մէջ թողուած միջոցը յարգանաց նշան մ'է։ Աղերսագրաց կամ հրաւիրագրաց մէջ սովորութիւն է թերթին մէջ տեղէն քիչ մը վեր դնել։ Պէտք չէ որ երբեք համառօտագրեալ ըլլայ. *Տէր*, *Տիկին* բառերն կը բաւեն պարզ նամակաց մէջ։ Աղերսագրաց մէջ սովորութիւն է վերնագրէն վեր ցուցնել աղերսագիրն ընդունող անձին պատուանուններն ու աստիճանն, եւայլն։ Գլխագրութիւնը պէտք է դրուի թերթին մէկ երրորդ մասին վրայ, գլխագրութեան եւ նամակին բուն գրուածքին մէջ պէտք է հաւասար միջոց թողուլ։ Պէտք չէ մոռնալ թէ այս պատշաճութեան նշաններն անհրաժեշտ են, եւ թէ անոնցմէ յաճախ կախումն ունի յաջողութիւն մը։

*Նամակի բուն գրութիւն*. — Ամէն բանէ առաջ պէտք է դիւրընթեռնլի գրուած ըլլայ. տարիքով կամ դիրքով ակնածելի անձանց ուղղեալ նամակներու մէջ պէտք է համառօտիւ ծանուցանել նամակին նպատակը. Կարեւոր է յաճախ կրկնել *Տէր*, *Տիկին* բառերն ըստ աստիճանի այն անձանց՝ որոց կը գրը-

ուի ։ Ջուարճաբան ոճն միայն երիտասարդաց կամ հաւասարներու մէջ ընդունելի է ։

Այս վերջին դէպքի մէջ միայն հարցումը ներելի է․ յոյժ քաղաքավար ձեւով կրնայ ըլլալ պատկառելի անձի մը․ չպիտի ըսէք․ տեղեկութիւն տուէք, կաղաչեմ, այլ պէտք է ըսել․ ներելի՞ է աղաչել որ ինծ տեղեկութիւններ շնորհէք . . . եւայլն ։ Մտերմութեան մէջ միայն ներելի է նամակն առնող անձին միջոցաւ նոյն քաղաքը բնակող ուրիշ անձի մը բան մը ըսել տալ ։ Ազգականաց համար ընդունելի են պատուասիրական խօսքեր ։ Բայց պէտք է միշտ ակնածական բանաձեւ մը գործածել ։ Զոր օրինակ, ներեցէք որ Ձեր պարոն եղբայրը նամակիս մէջ գտնէ յարգանացս հաւաստիքը ։

***Ներքնագրութիւն կամ աւարտ նամակի*** · — Տարիքոտ ծնողաց կամ ազգականաց ուղղեալ նամակներուն մէջ պէտք է միշտ յարգանք բառն դնել ։ Պաշտպանի մը ուղղեալ նամակաց մէջ երախտագիտութիւն բառն ։ Առ հաւասարս նամակաց մէջ քաղաքավարութիւն միշտ բարւոք ընդունելի է ։ Առեւտրական նամակներն կ'աւարտին այսու ։ Պատիւ ունիմ զՁեզ բարեւել ։ ***Անձնուէր ծառայ Ձեր*** բանաձեւն կրնայ գործածուիլ նոյն աստիճանի անձանց միջեւ, որմէ անհաճոյ հետեւանք մը չծագիր ։

***Ստորագրութիւն*** · — Ընդհանուր կանոն է որ գրութիւնն պէտք է դիւրընթեռնելի ըլլայ, եւ անունն աւելի եւս ։ Զգուշացէ՛ք գծերու խառն ի խուռն մանուածէ ։

***Յետ գրութեան*** · — Նամակին շարունակութիւն մ'է այս, որ ստորագրութեան տակ կը գրուի ։ Յետ

գրութեան մասը պէտք է յաւելուլ պատուասիրական բանից համար, նոյնպէս մոռցուած բան մը նըշանակելու համար, եւ այսպիսի դէպքի մէջ գրուելու է այնպէս, ինչպէս ցցուցինք *բուն գրութիւն նամակի* յօդուածին մէջ: Ուրիշ ամէն առթի մէջ անմտադրութեան նշան է. հաւասարներու մէջ ներելի է այն:

*Ծալել եւ կնքել*. — Պէտք է որ նամակները խընամով ծալուին, այնպէս որ անզգոյշ հետաքրքրութիւնը չկարենայ աչք նետել անոր վրայ: Աղերսագիրք եւ կարեւոր գործոց տեղեկացուցիչ գրութիւնք չորս ծալուելով պահարանի մէջ պիտի դրուին։ Այսպէս պիտի ըլլայ նաեւ երեւելի անձանց գրուած նամակներու համար։ Կարմիր կնքամոմը պիտի գործածուի աղերսագրաց եւ պահարանով գոցուած նամակներու համար։

*Երեսագիր*. — Գրեցէք անունն, արուեստն կամ աստիճանն այն անձին՝ որուն կ'ուղղէք նամակը։ Հոս ալ մի՛ մոռնաք թէ *Տէր* կամ *Տիկին* բառերն ամբողջ գրերով պէտք է գրուին։ Եթէ մեծ քաղաքի մէջ բնակող անձի մը կը գրէք, փողոցին անունն կամ տան թիւն անհրաժեշտ կարեւոր են։ Եթէ երկու քաղաքներ մի եւ նոյն անունն ունենան, պէտք է յաւելուլ նաեւ նահանգին կամ գաւառին անունն

Այսպէս։

*Մեծապատիւ*

*Սարգիս էֆէնտի Աբգարեան*

*Ի ՍԻՎՐԻՀԻՍԱՐ*

*[Էնկիւրիւի կուսակալութիւն]*

Եթէ նամակդ պիտի երթայ գիւղ մը կամ դըղեակ մը՝ մօտաւորագոյն քաղաքին անունը պէտք է նշանակէք ։

*Ազնիւ*

*Պարոն Թադէոս Կարապետեան*

ՀԱՍԳԻՒՂ

*[Կոստանդնուպօլսոյ]*

խոշոր գրերով պէտք է գրուի անունն այն քաղաքին՝ ուր պիտի մնայ Նամակն ։ *Ստիպողական* բառը զոր ոմանք երբեմն իրենց Նամակաց Ներքեւ կը դնեն, երբեք չպիտի գործածուի Թղթատարութեամբ խրկուած Նամակի մը համար ։ Պէտք չէ ենթադրել թէ Վարչութիւնը իւր ծիերուն թիւը պիտի կրկնապատկէ Ձեր Նամակը տանելու համար ։ Այս զեկոյցը կարելի է սակայն գործածուիլ երրորդի մը ձեռամբ խրկուելիք Թղթի մը համար կամ քաղաքի մէջ մէկ անձէ միւսի խրկուած տոմսակի համար, որպէս զի եթէ բարեկամ մը կէս օրուան ճաշի կը հրաւիրէք, անոր դռնապանը Ձեր հրաւիրագիրը կէս օրէն վերջ ժամը 7ին չտողու ։



*Հետեւեալ ցանկը պատշաճութիւններու համեմատ պատրաստուած է, եւ որ կը ճշդէ շքանուանց գործածութիւնն։*

## ՇՔԱՆՈՒԱՆՔ ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ

### Ա. Կաթողիկոսական կամ հայրապետական

Վեհափառ կաթողիկոս. — Տէր Հայրապետ կամ Աստուածընտիր Հովուապետ. — Հոգեւոր Տէր. — Օծութիւն։

### Բ. Մասնաւոր կաթողիկոսաց

Սսոյ եւ Աղթամարայ. — Երանաշնորհ Կաթողիկոս. — Ամենապատիւ Տէր. — Ամենապատուութիւն։

### Գ. Պատրիարքական

Ամենապատիւ Սրբազան Պատրիարք. — Սրբազան Հայր կամ Տէր. — Բարձր Սրբազնութիւն։

### Դ. Հրաժարեալ Պատրիարքաց

Ամենապատիւ Արքեպիսկոպոս. — Ամենապատուութիւն։

### Ե. Եպիսկոպոսական

Գերապատիւ Եպիսկոպոս. — Սրբազան Հայր կամ Տէր. — Գերապատուութիւն։

### Զ. Վարդապետաց կամ Աւագ քահանայից

Արժանապատիւ Սուրբ Հայր կամ Տէր. — Արժանապատուութիւն։

Է. Ճանապարհական

Ճանապարհ Տէր Հայր. — Հայրութիւն։

Ը. Սարկաւագական

Բարեկրօն Սարկաւագ. — Տիրացու եղբայր. — Եղբայրութիւն։

ՇՔԱՆՈՒԱՆՔ ԱՇԽԱՐՀԱԿԱՆԱՑ

Ա. Թագաւորական

Վեհափառ Արքայ կամ կայսր. — Օգոստափառ Տէր. — Վեհափառութիւն։

Բ. Իշխանական

Վեհազն իշխան. — Վեհազն Տէր. — Վեհազնութիւն։

Գ. Եպարքոսական

Բարձրապատիւ Եպարքոս. — Բարձրապատիւ Տէր. — Բարձրութիւն։

Դ. Նախարարական

Վսեմապատիւ Նախարար. — Վսեմապատիւ Տէր. — Վսեմութիւն։

Ե. Աւագական

Վսեմաշուք Տէր, Պէյ, էֆէնտի. — Վսեմութիւն։

Զ. Ազնուականաւորաց

Ազնուաշուք Տէր. — Ազնուութիւն։

Է. Հասարակական

Մեծապատիւ կամ Մեծարգոյ Տէր. — Մեծապատուութիւն ։

ՏԻՏՂՈՍՔ ԻԳԱԿԱՆ ՍԵՌԻ

Ա. Կայսրուհւոյ կամ թագուհւոյ

Վեհափառ թագուհին կամ Կայսրուհին. — Միրանափառ դշխոյ. — Վեհափառութիւն ։

Բ. Իշխանուհւոյ

Վեհազուն Իշխանուհին. — Վեհազուն Տիկին կամ Տիրուհին. — Շնորհաշուք Վեհազնութիւն ։

Գ. Նախարարուհւոյ

Վսեմաշուք Բամբիշ. — Վսեմափայլ Տիկին. — Վսեմութիւն ։

Դ. Ազնուահւոյ

Ազնուաշուք Տիկին. — Շնորհափայլ Ազնուութիւն. — (*օրիորդաց*). Ազնիւ Օրիորդ. — Ազնուութիւն ։

Ե. Հասարակական

Համեստափայլ Տիկին, Շնորհափայլ կամ Նազելաշուք Օրիորդ. — Ազնուութիւն ։



# ՆԱՄԱԿԱՆԻ



## ԳԼՈՒԽ Ա.

## ՆՈՐ ՏԱՐՒՈՅ ԵՒ ԱՆՈՒԱՆ ՏՕՆԻ ՆԱՄԱԿՆԵՐ

—

**Դիտողութիւն**. — Ընդհանրապէս կարճաբան ոճն այսպիսի նամակներու մէջ պէտք է իշխէ, որոց նպատակն իսկ է գորով եւ յարգանք յայտնել։ Այսպիսի պարագայի մէջ մեծցի երեւելու նկրտիլն անմտութիւն է։ Ծնողաց, ազգաց, բարերարի, բարեկամի ուղղեալ այսպիսի պաշտօնական խօսքեր միմիայն ի սրտէ թելադրեալ լինելով աւելի լաւ կ'ըլլան։ *Պարզութիւն* եւ *Յստակութիւն* են գլխաւոր տարերք այսպիսի ոճոյ։

### 1. *Մանկան մը նամակն առ իւր ծնողս։*

*Սիրեցեալ ծնողք իմ,*

*Յոյժ երջանիկ պիտի լինէի, եթէ այսօր Ձեր քով լինէի յայտնելու համար առ Ձեզ բարեմաղթութիւններս։ Բայց կը մխիթարուիմ, երբ այս մի քանի տողերն կ'ուղղեմ, որոնցմով միանգամ եւս կը յայտնեմ թէ կը սիրեմ զՁեզ ի բոլոր սրտէ։*

*Ձեր երջանկութեան կը փափաքիմ, եւ կը մաղթեմ Ձեզ անախտ եւ անվիշտ ծերութիւն մը։*

*Ձեզնէ հեռի ժամանակն ինձ կը թուի երկար, յոյժ*

երկար . կը յուսամ ընդ հուպ տեսնել զՁեզ , և եռանդեամբ ողջագուրել ։ Այժմ չունիմ այլ ինչ յղել Ձեզ , բայց եթէ սիրոյս համբոյրներն ։

Ձեզ յոյժ սիրող որդի

[Թուական] * * *

---

2 . Թոռան մը նամակն առ իւր հաւն .

Սիրելի պապիկ ,

Այս պահուն ուրախութեան հետ խառն տխրութիւն ունիմ . տխուր եմ, զի հեռի եմ Ձենէ . ուրախ՝ զի ունիմ շատ բարեմաղթութիւններ առ Ձեզ ուղղելու ։ Ինչո՞ւ այս օրն մանաւանդ զուրկ լինէի Ձեր գրգուանքներէն ։ Թող իմ նամակս յայտնէ սրտիս խանդաղատանք , բայց կը վախնամ որ գուցէ չկարենայ իմ յաջող թարգմանս լինել . այս մասին դատապարտեցէք գրիչս , բայց մի՛ կարծէք զիս Ձեզ նկատմամբ անտարբեր ։

Նամակիս կը կցեմ ստացած թուերս , երջանիկ եմ, զի գէթ այս կերպով կը փոխարինեմ այն երախտեաց , զորս ընդունած եմ Ձենէ ։

Կ'աղաչեմ, սիրելի ծնողք իմ, որ ընդունիք սիրալիր և անկեղծ բարեմաղթութիւններս ։

[Թուական] * * *

---

3 . Աղջկան մը նամակն առ իւր մայրն ։

Սիրելի մա՛յր իմ,

Նոր տարւոյ այս օրն բարենշան է ինձ , զի վաղուց ի վեր սահմանուած է այն սիրոյ և գորովանաց փո-

*խանակութեան մը, բան մը՝ որ ինծի շատ հաճելի է․ որովհետեւ միանգամ ևս սէրս յայտնելու պատեհն կ'ունենամ։ Անշուշտ գիտէք թէ ինչ կ'զգամ Ձեզ նըկատմամբ․ բայց քաղցր է ինծի հաստատել զայն այս առթիւ ևս։ Մեծ հաճոյքով կը կարդամ Ձեր նամակներն, և չեմ տարակուսիր թէ դուք ևս միևնոյն ըզգացմամբ կը կարդաք իմիններս։*

*Հեռաւորութիւնը ինծի դառն է միշտ․ ո՜հ․ չկրցայ վարժուիլ բաժանման վշտերուն։*

*Սիրելի մա՛յր իմ, աներկմիտ եղէք թէ իմ ընթացքս պիտի համապատասխանէ Ձեր սիրոյն և հոգածութեան, զորս վայելած եմ յօրրանէ։*

*Անհամբերութեամբ կ'սպասեմ Ձեր թղթոց․ մինչ հեռի եմ Ձենէ՝ անոնք են իմ ուրախութիւններս։ Կենացս մէն մի օրն կ'աճի ու կ'աւելնայ առ Ձեզ ունեցած սէրս։*

*Ընդունեցէք, սիրելի մայր իմ, Նոր տարւոյ առթիւ ջերմ բարեմաղթութիւններս և սիրոյս համբոյրներն։*

*Հնազանդ դուստրդ*

[Թուական] * * *

---

*4․ Փոքրիկ աղջկան մը նամակն առ իւր հայրն։*

*Սիրելի հա՛յր իմ,*

*Ինչ ուրախութեամբ կուգամ այսօր և կ'ըսեմ դարձեալ Ձեզ թէ սիրտս լի է առ Ձեզ ունեցած սիրոյս և երախտագիտութեանս զգացմամբք։ Բարեբաղդ եմ զի հեռի լինելով հանդերձ կրնամ զգացմանցս արտայայտութիւնն ընել։ Այո՛, պիտի ջանամ Ձեր սիրոյն*

արժանի լինել և վայելել Ձեր յարատև սէրն։ Կը փափաքիմ տեղեկութիւններ առնուլ Ձեր ողջախութեան մասին, որովհետև սրտիս պէտքն է ապրիլ Ձեզ հետ և գիտնալ թէ գոհ էք և բարեկեցիկ։

Հնազանդ դուստր

[Թուական] * * *

---

5. Նամակ առ կնքահայր ումն։

Սիրելի կնքահայր իմ,

Եթէ այս պահուն կ'ուղղեմ առ Ձեզ ջերմագին բարեմաղթութիւններս, ոչ թէ սովորութեան մը հարկը վճարելու համար է, այլ սրտիս պէտքն կատարելու։ Դուք իմ հայրագիրն եղած էք, և ինձ սիրելի է յայտնել միշտ երախտագիտութիւն առ Ձեզ։

Սիրելի կնքահա՛յր իմ, կ'աշխատիմ հաստատամտութեամբ. Ներփակեալ միւերն պիտի ցուցնեն թէ ջանահնար եմ միշտ Ձեր երախտեաց արժանի երևելու։ Երախտագիտութեանս դոյզն տրիտուրն է աշխատասիրութիւնս։

Ներկայ երկտողիւս բարեմաղթութիւններս կը յղեմ առ Ձեզ, և վստահ էք թէ անկեղծ են անոնք, որովհետև գիտէք Ձեզ նկատմամբ ունեցած սէրս։

Կ'ողջագուրեմ զՁեզ սրտագեղմամբ, միևնոյն ժամանակ յայտնելով զիս Ձեր երախտագէտ սանը։

[Թուական] * * *

---

## 6. Նամակ առ կնքամայր ոմն.

*Սիրելի կնքամայր իմ,*

*Մեծ ուրախութեամբ կուգամ այսօր և կը յայտնեմ յարգանացս, սիրոյս, երախտագիտութեանս հաւաստիքն, որովհետեւ բարեպատեհ է այս օրն իմ ըզգացումներս յայտնելու համար Ձեզ իբրև իմ երկրորդ մօր։ Չպիտի մոռնամ Ձեր քաղցր և անշէջ սէրն, ում պիտի ջանամ յաւէտ արժանանալ։*

*Վստահ եղէք, սիրելի կնքամայր իմ, բանիցս անկեղծութեան և հաւատացէք ջանիցս՝ որովք պիտի պսակեմ Ձեր բոլոր իղձերն։*

*Ձեր խոնարհ և անձնուէր դուստր*

[Թուական] * * *

---

## 7. Նամակ առ հօրեղբայր մը, հօրաքոյր մը, եւայլն.

*Այս տարի շատ հեռի եմ, որպէս զի շուրթն ի շուրթըն սիրոյս արտայայտութիւնն ընեմ առ Ձեզ։ Ուստի ստիպեալ եմ շատ անզօր միջոցի մը դիմել, գրչիս, որ հակառակ իւր տկարութեան պիտի յայտնէ բոլոր իղձերս, զորս ունիմք ես և մեր տուն Ձեր երջանկութեան համար։*

*Հաճեցէք ընդունիլ զանոնք, որք այնքան անկեղծ են։*

*ՁՁեզ սիրող*

[Թուական] * * *

---

### 8. Առ բարեկամ ոմն։

Սիրելի բարեկամ իմ,

Հարկ չիկայ սովորական բանաձեւեր գործածել, մինչ կը գրեմ առ Ձեզ։ Մեր վաղեմի եւ հաստատ բարեկամութիւնը իրաւամբ չհաճիր ատոր։ Սակայն կը փափաքիմ ըսել թէ հեռաւորութիւնը գիս կը տխրեցնէ յոյժ։

Գործերս կ'ստիպեն զիս հեռի մնալ տակաւին իմ ծննդավայր քաղաքէս։ Առաջին անգամ է որ հեռի կ'անցունեմ Նոր տարւոյ այս օրն, հեռի Ձենէ, հեռի իմ բոլոր բարեկամներէս։ Ուստի բարեմաղթութիւններս կը ծրարեմ ի թղթիս եւ կը մաղթեմ Ձեզ երջանկութիւն։

Ձերդ

[Թուական] * * *

---

### 9. Առ պաշտպան ոք։

Տէ՛ր,

Ձեր բարեսրտութիւնը ոչ միայն այսօր, այլ յաւէտ եռանդագին օրհնութեանց կ'արժանանայ։ Պարտք մ'է ինձ, քաղցրագոյն պարտք երախտագիտութիւնս յայտնել առ Ձեզ այս երջանիկ առթիւ։

Հաճեցէք ընդունիլ, Տէր, կանխայայտ բարեմաղթութիւններս Ձեր եւ Ձեր ազնիւ ընտանեաց բարօրութեան համար։ Առ Ձեզ տածած զգացմունքս են եռանդուն եւ անկեղծ. ահա անոնց բովանդակ արժանիքը։

Ձեզ երախտագէտ եւ անձնուէր

[Թուական] * * *

---

### 10 · Նամակ ընկերուհւոյ մը առ իւր ընկերուհին ։

Սիրունի՛կս,

Ի՜նչ գրեմ, չգիտեմ · քե՛զի՝ որուն կը թռչին միշտ զգացումներս · շատ սովորական է գրչիս համար ըսել թէ կը սիրեմ զքեզ ։ Սիրտս ատով չգոհանար · կ'ուզեմ մանաւանդ գրել, կը պաշտեմ զքեզ ։ Այս բացատրութիւնն ալ կամաց կամաց կը հիննայ · աւելի հրեղէն ոճ մը կ'ուզեմ · բառեր չեմ ուզեր, այլ կայծեր, որոց վառարանն է սիրտս, բայց թղթի մէջ չեն կրնար ծրարուիլ անոնք ։ Ինչո՞ւ հեռի լինիմ քենէ · հեռի լինել ինծ համար տանջանք մ'է ։ Կը փափաքիմ որ գրկացս մէջ լինիս, ջերմ համբոյրներս դրոշմեմ պաղպաջուն ճակտիդ, և երջանիկ լինիմ ։

Թո՛ղ անտարբերն ըսէ, ի՜նչ խօլ փափաքներ · բայց դուն · քո՛յր իմ, կ'աղաչեմ արգահատանօք նայէ՝ ըղձացմանցս, սրտի՛ս՝ ոյր սլաքն ուղղուած է միշտ քեզ ։ Ի սրտիցս կը գրկեմ զքեզ, և կ'աղաչեմ որ նամակներդ ստէպ ընես · ի՜նչ փոյթ, ընտրէ՛ քեզ երկարաբան ոճն և ես յափշտակութեամբ պիտի կարդամ զանոնք ։

Նոր տարւոյ բարեմաղթութեամբք

Քոյդ

[Թուական] * * *

---

### 11 · Առ բարեկամ ոք ։

Սիրելի բարեկամ,

Որոշած էի անձամբ գալ և մատուցանել բարեմաղթութիւններս, բայց յանկարծադէպ պարագայ մի

գրկեց զիս իմ այս փափաքս կատարելէ ։ Կ'ուզէի Ձեր ոտքը նետուիլ և իմ սիրտը բանալ· բայց հիւանդ եմ և բժիշկն կ'արգիլէ ինծ դուրս ելնել ։

Լաւագոյն օրերու կ'սպասեմ ինծ համար, զի բարեկամական այս հարկը մատուցանեմ առ Ձեզ· իսկ առ այժմ ուրախ եմ զի գրիչս կարող կը լինի փոքր ի շատէ այս պարտքս կատարելու և մաղթելու Ձեզ երջանիկ տարիներ ։

Կը ցաւիմ որ այս անկենդան թղթով կը յայտնեմ, ինչ որ կենդանի բարբառով պիտի ուզէի արտայայտել ։

Ընդունեցէք, սիրելի բարեկամ, Նոր տարւոյ ջերմ նորհաւորութիւններս ։

[Թուական] * * *

---

12. Նամակ խօսնայրի մը առ իւր խօսնային ։

Ամենասիրելի՛դ իմ,

Երջանկագոյն է ինծ Նոր տարւոյ այս առաջին օրն, որովհետեւ բախտ կ'ունենամ գէթ ի հեռուստ Ձեզ հետ խօսակցիլ ։

Շատ դանդաղ կը թուի ինծ ժամանակն, և հեռաւորութիւնն՝ որ զմեզ կը բաժնէ, հետզհետէ անհանդուրժելի կը դառնայ ։ Հեռի՜ լինել Ձենէ· ո՜հ, կը շուարիմ թէ ի՞նչպէս բացատրեմ այս մասին հոգւոյս կրած տագնապը · Միայն քաղցրիկ նկար մը, այն է Ձեր հրեշտակային նկարը կը հանդարտեցնէ խռովեալ վիճակս ։

Ձեր հայրը այսօր պիտի ընդունի փոքրիկ ծրար մը · յիրաւի այն դոյզն նշան մ'է սիրոյս, հեռաւորութեան մի յիշատակն, զարդ մի, որ սակայն Ձեր այնքան հը-

բապոյրներուն վրայ բան մը չաւելցնէր․ բայց գոնէ կը յիշեցնէ թէ կայ հեռուն մէկն՝ որ Ձեր վրայ կը մըտածէ միշտ ։

Բոլոր կարեւոր նամակներն հասած են․ կը համբուրեմ որդիական սիրով ծնողացդ ձեռքերն․ ե՞րբ արդեօք երկինք պիտի բերէ ինձ ցանկալի վայրկեանն ։

Մնա՛ բարով, չքնա՛ղդ իմ, չեմ համարձակիր ողջագուրել զՁեզ, այլ կը համարձակիմ ըսել թէ զՁեզ տեսնելու համար շատ անհամբեր եմ։

[Թուական] * * *

---

13․ Նամակ աղջկան մը առ իւր հանին ։

Սիրելի մեծ մայր իմ,

Արտասուեցիր դու և ես բաժնուեցայ, գացի դըպրոց ։ Այն ատեն իմ մորմոքն նուազ էր, երկար ուղեւորութեան մը հեռանկարը, մեծ քաղաք մը տեսնելու գաղափարը, նորագոյն մտերմուհիներ գտնելու յոյսը, ամէն ինչ կը չափաւորէին տխրութիւնս ։ Մինչ դուք կը հառաչէիք, ես մտօքս իբրեւ թռչուն կը թըռչէի ի դպրոց ․

Եւ այսպէս մեկնեցայ, և գրեթէ ժպտուն, կամովին ծածկուեցայ կրթարանին մէջ ․

Աստ քանիցս կը յիշեմ մանկութեանս նուիրած խընամքներդ, և քանի՛ բերկրութեամբ կը նայիմ դէպ ի անցեալն ։ Կը լսեմ կարծես Ձեր ձայնն՝ որ հօրմէս ներում կը խնդրէ մէկ յանցանքիս համար, և միեւնոյն ժամանակ բարի խրատներ կուտայ ։ Ո՛չ, չեմ մոռնար երբեք․ ո՛չ տքնութիւններդ անկողնոյս սնարն, երբ ես հիւանդ եղած եմ, ո՛չ այն գիշերներն, երբ ինձ հա-

մար բարեձեւ չրջազգեստ մը կը պատրաստէիք, ո՛չ այն ամէն խնամքներն՝ որ Ձեզ կը պատճառէին այնքան յոգնութիւն և նեղութիւն։

Այն ատեն կարող չէի Ձեր սիրոյն մեծութիւնը հասկնալ. բայց այսօր կ՚զգամ զայն, և այս պահուն մինչ իւրաքանչիւր ոք կը բերկրի, կը մտածեմ Ձեր վրայ, սիրելիդ իմ մեծ մայր, և երախտագիտութեամբ լի շնորհակալութիւն կը մատուցանեմ Աստուծոյ և կ՚աղօթեմ առ Նա որ պարգեւէ Ձեղ երջանկութիւն։

[Թուականն] * * *

---

14. Նամակ Տիկին Ս... ի առ կոմսն....

Շնորհաւոր Նոր տարի, սիրելի՛դ իմ կոմս. Թող այս տարին անցեալ տարիներէն աւելի բարեբաստիկ ըլլայ Ձեզ. Թող Ձեր վայելքը լինին անդորրութիւն, հանգիստ և առողջութիւն։ Վերջապէս թող ձեր օրերն այսուհետեւ հիւսուին իբրեւ ոստայն ոսկեթել և մետաքսեայ։

(Թուագր.)

---

15. Նամակ օրիորդ Տ... Ն...ի առ իւր մայրն։

Սիրելի՛ մայրիկ, ընկերուհեացս հետ Նոր տարւոյ առթիւ այցելեցի այս տան պատկառելի Հիմնադիր Տիկնոջ։ Պատշաճութիւնն և երախտագիտութիւնն իւր քով առաջնորդեցին զմեզ։ Զգացում մը աւելի քաղցր, աւելի սիրալիր, աւելի զօրաւոր եւ աւելի տեւական, վասն զի կենացս հետ միայն պիտի վերջանայ, զիս Ձեր քով կը բերէ, սիրելի և բարի մայրիկ։ Ձեզ

կը մաղթեմ առողջութիւն, Ձեզ կը մաղթեմ երջանկագոյն օրեր, կը մաղթեմ ամէն ինչ որ Ձեզ փափաքելի է. վերջապէս կը մաղթեմ Ձեզ այնչափ տարիներ, որչափ այսօր կ'սպառին շաքարներ։ Անկեղծ ճշմարտութեան միայն յարգանք կը մատուցանեմ, հաւաստելով Ձեզ թէ կը սիրեմ զՁեզ, թէ կը պաշտեմ զՁեզ, թէ ինձ համար երջանկութիւն չիկայ առանց Ձերոյն. առանձնութեան ձանձրութեանց և տարակայութեան կը հանդուրժեմ միայն, որ իմ անձս Ձեզ արժանի կացուցանեմ, և օր մը աղջկանց ամենէն երախտագէտը, պատկառոտը և խանդակաթը իբրև Ձեր բարեկամուհին գանէք։

(թարգմ.)

---

## 16. Առ բարեկամ ոք։

Քաղցր է սրտիս հատուցանել առ Ձեզ զոր պարտի. մտերմական գուրգուրանքն է այն, զոր ամէն ժամ կ'զգամ Ձեզ նկատմամբ։ Եթէ չեմ կարող ստէպ գրել առ Ձեզ, գէթ այս խորհրդաւոր օրն լռել ինձ համար մեղանչում մ'է։

Տարւոյն վերջին օրն է այսօր, և վաղիւ Նոր օր, Նոր կեանք կը սկսի։ Հին Թուականն յիշատակներու շղթային մի օղակն կը կազմէ այլ ևս, և անտարբեր չեմք կարող լինել Նոր Թուականին՝ որ կուգայ սառ ու ձիւն կտրելով անցնելով, սակայն կը ներշնչէ ջերմ յոյսեր։

Ինչ որ ըլլայ Նոր Թուականն ընդհանուր մարդկութեան համար, ես կը փափաքիմ որ պարգեւէ այն Ձեզ իւր թանկագին պարգեւն, երջանկութիւնն, ում արժանի էք։ Եթէ անհնար է զի ամէնուրեք գարուն տիրէ, գէթ Դուք և Ձեզ նմաններ վարէք ծիծեռնակի կեանք, անհոգ ու անփոյթ թռչտիք զուարթ մըթ-

*նոլորտներու մէջ։ Պարզ և սովորական մաղթանք մը չէ այս, այլ սիրոյս պարտքը։ Հաւատացէք թէ ո՛րչափ անցնին տարիներ, պիտի բիւրապատկի խանդս Ձեզ բարօրութիւն մաղթելու։*

*Ահա մաղթանքս այս Նոր տարւոյ առթիւ, որոյ հետ կը ցանկամ զի բազում երջանիկ տարիներ բոլորէք։*

*Ձերդ*

* * *

---

## ԸՆԴԼԱՅՆԵԼԻ ՆԻՒԹԵՐ

1. **Նոր տարի մաղթել կնքամօր մը.** — *Նոր տարի մաղթեցէք. յայտնեցէք ձեր սէրը։ Ձեր ընտանեաց վրայով լուրեր հաղորդեցէք։ — Վերջաբան.*

2. **Մանուկ դուստր մի առ իւր հանին** — *Մանուկ աղջիկ մը իւր Նոր տարւոյ բարեմաղթութիւնները կ'ուղղէ առ իւր հանին։ — Նա բաժնուած է տարիէ մ'ի վեր հանիէն. — Անցեալ կենաց յիշատակներ։ — Այս աղջիկն՝ որ մայր չունի, հանւոյն խնամքներն վայելած է։*

3. **Առ հայր մեր.** — *Մեր հայրն ուղեւորութեան մէջ է. կը շնորհաւորենք նորա անուան տարեդարձ եւ կ'ըսենք թէ այս տարի իւր անուան տօնախմբութիւն մեզ ուրախութիւն չպատճառեր. որովհետեւ նա հեռի է։ Բաղձանքներ մեր հօր վերադարձին համար։*

4. **Պատասխան Նոր տարւոյ բարեմաղթութեանց.** — *Դժուար է ինձ պատասխանել սիրուն բարեմաղթութեանց։ Նոր տարւոյ այս ձեւերն այնքան կը գործածուին, այնքան կը կրկնուին, որ մարդ կ'ուզէ փոփոխել զանոնք բոլորովին. բայց ինձ համար դարձեալ քաղցր է երջանկութիւն մաղթել այնմ՝ ում կը պատասխանեմ։*

5. — **Որբուհի մը առ իւր մօրաքոյրն՝ որ զինք մեծցուցած է.** — *Անուան շնորհաւորութիւն։ — Կը ցաւի որ անցեալ տարուան պէս իւր իղձերն չկրնար յայտնել կենդանի բարբառով. փոքրիկ աղջիկը միշտ հլու չէ եղած։ — Այս տարեդարձին առթիւ կ'որոշէ . . . ։ Երկաթուղւոյ միջոցաւ նուէր մը կը խրկէ։ Արձակուրդի առեն աւելի մեծ անակնկալ մը պահած է։*

# ԳԼՈՒԽ Բ.

## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՆՑ, ՇՆՈՐՀԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ, ՑԱՒԱԿՑՈՒԹԵԱՆՑ, ՅԱՆՁՆԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ ՆԱՄԱԿՆԵՐ

—

**Դիտողութիւն.** — Շնորհակալութեան նամակաց ոճոյն գըլխաւոր հիմնն է ընդհանրապէս մատուցուած ծառայութեանց համար երախտագիտութիւն յայտնել. ուստի այս զգացումը պէտք է արտայայտուի թէ՛ անկեղծութեամբ եւ թէ փափկութեամբ։ Սակայն (որչափ որ ալ զոյլենք, ի՞նչ է այն անձն՝ որ իր նամակագրական դասուց մէջ այս մասին երախտագիտութեան իւր վրայ դըրած պարտքերը լիովին կը կատարէ) Սակայն, կ'ըսեմ, աստիճաններ եւ սահմաններ կան, զորս պէտք է ճարտար կերպիւ պահել։ Անկարելի է հոս որոշ սահմաններ տալ թէ ո՛ր պարագաներուն մէջ ի՛նչպիսի ոճ պէտք է գործածել. այս մասին սիրտն եւ ողջմտութիւնը կրնան առաջնորդ լինել. սակայն չմոռնանք ըսելու թէ ընդհանուր առմամբ շնորհակալութիւն յայտնելու համար հարկ է ստորին ոճէ խոյս տալ, իւր արժանապատուութիւնը չկորուսանել, եւ մանաւանդ իւր ստացուածքը մատուցուած ծառայութեան ստորին համեմատել։ Ոճ մը, այս տեսակէտով, կատարեալ եւ հըրապուրիչ կը լինի, երբ երախտագիտութիւնը յայտնուի առանց շողոքորթութեան, եւ նրբամտութիւնը զուարթութիւն մը տայ այս տեսակ նամակաց՝ որք ի բնէ բաւական չոր կը լինին։ Անտարակոյս պէտք է շնորհակալ ըլլալ զմեզ երախտապարտ կացուցանող անձանց, բայց նաեւ պէտք է զգոյշ մնալ, զի փոխանակ անոնց հանոյք պատճառելու, անոնց աւելի ձանձրոյթ չառթենք։

———

## 1. Առ բարերար ոմն։

*Մեծանո՛ւն տէր,*

*Դժուարին է ինձ գտնել այնպիսի բառեր՝ որք յայտնեն երախտագիտութեանս խորին զգացումներն Ձեր նոր բարեգործութեան համար՝ որով հաճեցաք զիս պատուել։ Դուք իմ գերազանց խնամակալն էք, զի ամէն դժբաղդ պարագայի մէջ ինձ ձեռն կը կարկառէք։ Իրաւի դուք իմ երախտագէտ սրտին համար այն էք, ինչ որ արեւուն լոյսն այն նաւաստւոյն՝ որ ազատած է մրրկէն։*

*Գոհութի՛ւն երկնից, զի ամէն դժբաղդութեանցս մէջ զՁեզ ունիմ. ամէն առթիւ քաղցր է ինձ արտասուագին աչերս առ Ձեզ ուղղել, առ մեծահոգի բարերարդ, որուն քով թշուառն կը գտնէ սփոփանք, եւ իւր արցունքներն կը սրբէ։*

*Այդքա՛ն երախտիք զիս կ'ընկճեն. ինչո՞ւ արդեօք չունենամ աւելի պերճաբան լեզու իմ երախտագիտութիւնս յայտնելու. կ'ուզեմ ամէն ժամ փող ի բերան լինել իբրեւ զՀամբաւ ձեր երախտիքը հռչակելու համար։ Երկինք զՁեզ օժտած են բարի սրտով։ Ապրի՛ք. այսուհետեւ եւ միշտ հեշտեաւ պիտի արձակեմ ջերմ օրհնութիւններ Ձեր արեւշատութեան եւ երջանկութեան համար։*

*Խորին մեծարանօք առ Ձեզ,*
*Ամենախոնարհ եւ ամենահնազանդ*

*ծառայ*

[Թուական] ***

---

## Զ· Առ Դաստիարակ ոք·

Ազնիւ դաստիարակ իմ,

Երբ շնորհակալութեան մրմունջներ կ՚արձակեմ, միտքս կը յածի այն երջանիկ ժամանակներուն վրայ, յորս Դուք ինձ օգտակար դասեր կ՚աւանդէիք։ Չէի զգար այն ատեն մեծութիւնն այն գործոյն՝ ում նըւիրած էիք Ձեր կեանք, այլ կ՚ուրախանայի միայն զի երկինք ինձ պարգեւած է դաստիարակաց ամենէն պատուականն, գորովալիցն, որոյ համար օգտակար լինելու պաշտօնն գաղանիք մի չէ։

Յաւիտեան չպիտի մոռնամ Ձեր երախտիքն· ես ի ծնողական բունին վրայ աճած տկար ոստ մ՚էի, Դուք, յաջողա՛կ պարտիզպան, ամէն խնամք նուիրելով պըտղալից ոստ մի ըրիք զիս։

Դեռ ականջիս կը հնչեն այն խօսքերն՝ զորս աննախանձաբար կ՚ըսէիք ինձ, բարոյական մարդն կը գովէիք, և կը բռնադատէիք ինձ ունենալ սրտի և մտաց ազնուականութիւն։ Մանկական հասակի յիշատակներն դիւրաւ կը ջնջուին, բայց ի՛նչ զօրութիւն է այն, որ սիրտս կը գերէ կը տանի. տարիներ կ՚անցնին, բայց Ձեր յիշատակներն կը մնան մշտադալար։

Պատճառն դիւրին է գուշակել, զի Ձեր դաստիարակութիւնք, հայրական սիրտն կարող չեն մոռացութեան դատապարտուիլ։ Գալով ինձ, սիրելի դաստիարակ իմ, պիտի աշխատիմ Ձեր խրատուց արժանի լինիլ, պատուաւոր դիրք մը շահիլ ընկերութեան մէջ, որով այն ատեն պիտի համարձակիմ առաւել իրաւամբ կոչուիլ՝

Ձեր երախտագէտ սանն

[Թուական] * * *

### 3. Առ տիկին ումն նորա գրական գործունէու-թեան մասին շնորհակալութիւն:

Ազնուաշուք տիկի՛ն.

Քանի՜ բարենշան է ինձ այս պահն՝ յորում կը համարձակիմ յայտնել իմ առ Ձեզ տածած համակրանքս: Հանճարե՛ղ Տիկին, Դուք ունիք այն սահուն գրիչն՝ որով կը դիւթէք զմեզ. Դուք գիտէք խաւարէ ի լոյս տանող ճանապարհն:

Կ՚երգէք և Ձեր բանաստեղծութիւնն սուրբ է եւ վսեմ:

Երբ կը կարդամ Ձեր նրբիմաստ հրապարակախօսի գրութիւններն, կը յափշտակուիմ. անգիտակից զօրութիւն մը հոգւոյս խորէն աղօթքներ կը հանէ Ձեզ համար, եռանդեամբ կ՚աղօթեմ և անմեկնելի գոհունակութիւն մը կ՚զգամ յիս:

Այո՛, պարտականութիւնս է աղօթել Ձեզ համար. կ՚օրհնեմ զՁեզ, որ կ՚աւելցնէք իգական սեռի շուքն:

Դուք բանականութեամբ մեծ և զգացմամբ վսեմ էք: Դուք գորովոյ ցնցման ներքեւ երկնային նուագ մը կ՚արձակէք: Ձեր ամէն նախադասութեանց մէջ ճշմարտութեան կնիքը կայ:

Ձեր գրութիւններն են փառաւոր անուան մը յաւերժական հրիտակներն:

Մեծարա՜նք և շնորհակալութի՜ւն Ձեզ:

Պատի՛ւդ իգական սեռի:

[Թուական] * * *

---

## Կ. Հարսանեկան շնորհաւորութիւն։

Ազնուաշուք տէր և տիկին,

Ձեր շնորհագեղ դստեր հարսանեաց հրաւիրագիրն պատիւ ունեցայ ընդունել։

Շնորհակալութիւնս անբացատրելի է այն պատուոյն համար՝ որով հաճած էք և զիս խնդակից ընել Ձեզ։ Եղո՜ւկ, զի հարկեցուցիչ պարագայ մի հեռի կը պահէ զիս այդ շքեղ հանդէսէն։

Արդ ի հեռուստ կը խառնեմ տկար ձայնս հանդիսականացդ զուարթ ձայներուն հետ, մաղթանքս՝ անոնց մաղթանաց, հոգիս՝ անոնց հոգւոյն, անխառն և երջանիկ կեանք մը հայցելու յերկնից այս Նորապսակ ամուսնաց համար։ Զքնա՜ղ տօն երկու սրտերու միութեան, ի՜նչ կ՚ըսեմ, ճառագայթից միացման։

Ահա նոր յարկ մը ևս կը բարձրանայ նման այն բոյնին՝ զոր երգ ի բերան կը դնէ ծիծառնը գարնան ծաղիկներու, սիւքերու, շաղի ու շողի մէջ. անոր լուսեղէն սեմոց վրայ կը կանգնի կոյսն դեռատի, շնորհագեղ, ամօթլեած. իւր տկարութեան մէջ հզօր, իւր երկչոտութեան մէջ դիւցազնուհի մը. իւր սրբութեամբ տունն տաճարի պիտի փոխէ, և կամ դրախտ մը՝ ուր կը փթթի ծաղիկն, ուր կը փայլի ճաճանչն, ուր կը ծաղկի ժպիտն, ուր կը շողայ և սէրն։

Եւ կա՞յ միթէ աշխարհի մէջ աւելի հմայիչ բան մը քան զայն, երբ օր մը զիրար կը գտնեն երկու էակներ, և ի միմեանց անբաժան մնալ կ՚ուխտեն։ Երեկեա՜ն անծանօթներ, որք այսօր բարեկամ ու բարեկամուհի կը լինին, նոյն իսկ եղբայր եւ քոյր, և իրերաց

*հետ կը բաժնեն իրենց հաճոյքն ու ցաւ, իրենց ժպիտըն ու արտօսր, իրենց սրտազեղումներ, ամէն տենչեր, ամէն յոյսեր, ամէն երազներ։*

*Այսպէս ահա Ձեր դուստր ևս կը միանայ օժտեալ երիտասարդի մը հետ, տանելու կենաց բեռնը ի միասին։ Ուրեմն սոքա երկուքն թող վայելեն ընդմիշտ երջանկութիւն փոխան իւրեանց առաքինութեանց։*

*Այսոքիկ են մաղթանք Ձեր մտերմին։*

[Թուական] ***

---

## 5. *Առ հայր ոք ուսուցչէ մը ուղղեալ շնորհակալութիւն։*

*Ազնուազարմ տէր,*

*Հիացումս որպէս և շնորհակալութիւնս շատ մեծ են առ Ձեզ, զի հաճեցաք ինձ յանձնել Ձեր դստեր մտքի զարգացման սատարելու վսեմ գործը։*

*Այն օրէն ի վեր՝ երբ այդ պաշտօնին կոչուելու պատիւ ունեցայ, գոհ սրտիւ և անընդհատ կը կատարեմ զայն. Ֆրանսական դպրութեան թաքուն գանձերը կը բանամ համակրելի աշակերտուհւոյս առջեւ. և նա քաղցր հետաքրքրութեամբ և ոչ նուազ եռանդեամբ կը հետեւի դասախօսութեանցս։*

*Գեղեցիկ են ուսմանց նուիրեալ օրեր. տպաւորութիւնքն՝ զորս կ'ստանայ օրիորդն, անհուն են և շատ հաճոյական. Նա մեղուի նման կը լնու մեղր իւր մտքի փեթակն. ուրախառիթ է այս, բայց ուրախութեանց հետ խառն կ'ունենայ անբացատրելի տխրութիւն մի, մելամաղձոտ լռութիւն մի կը պահէ և հարցական ձև*

մ՚ունի յաճախ, որ կարծես կ՚ըսէ։ Ո՞ւր ես, հա՜յր իմ...։

Հեռո՜ւ, շատ հեռու էք դուք. տարւոյն ամենէն սիրելի տօներուն չէք նախագահեր Ձեր տան հանդէսներուն Ազնիւ Տիկնոջդ հետ՝ որ իրաւի յամենայնի անզգալի կ՚ընէ Ձեր ներկայութիւն։

Իցի՜ւ շուտ ծագի այն օր, յորում Ձեր քաղցր ներկայութեամբ ոգեւորէք տան մէջ անխառն ուրախութիւններ։

Յղելով առ Ձերդ Ազնուութիւն խորին մեծարանացս և համակրանացս արտայայտութիւններն,

Իմ

Ձերդ խոնարհ ծառայ

[Թուական] * * *

---

6. Աղքատ հիւանդի մը՝ որ այն ինչ ապաքինած է, շնորհակալութեան նամակ առ իւր բժիշկն։

Գերազնի՛ւ տէր,

Եթէ մարդասիրութիւնը մեր ընկերական պարտականութեանց առաջինն է, եթէ քաղցր է մեր արտասուաց եւ հեծեծանաց մէջ տեսնել գորովալից անձնաւորութիւն մի՝ որ մեր արցունքն կը սրբէ, և կ՚ըսէ. Զուարթ եղի՛ր, երջանիկ եղի՛ր։ Ուրեմն ոչ նուազ պարտք է մեզ երախտագէտ լինել այն շնորհաց, զորս յանուն մարդասիրութեան կ՚ընդունիմք, այն բարեաց, որ մեզ կ՚ընծայուին առատապէս։

Տէ՛ր, դեռ նոր ազատած հիւանդութեան տագնապներէ՝ առաջին պարտք կը նկատեմ ինձ Ձեր ան-

ձանձիր խնամոց համար շնորհակալ լինել. այսուհետև կեանքս Ձեզ կը պարտիմ. Նուաղեալ աչքերովս կը դիտէի զմայլուն թէ ինչպէս կը մաքառէիք չարագուշակ ախտին դէմ, որ իմ էութիւնս քայքայել կ՚սպառնար; ինչպէս ոգի ի բռին Ձեր ճարտարութեամբ կը ջանայիք ի դերեւ հանել անոր ամէն հնարքները, և ամէն օր, ամէն ժամ նոր յոյս կը ներշնչէիք ինձ։

Ահա անցան գնացին կենացս այդ աղետալի օրերն, ահա հետզհետէ կորով և աշխոյժ կը վերստանամ։ Իրաւ է որ հիւանդութեանս մէջ այնքան չէի սոսկար մահուանէ. բայց այժմ կ՚զգամ թէ ի՛նչ պարապութիւն պիտի թողուի մահուամբս մեր տան մէջ, զի ունիմ հայր ու մայր, որոց անմիջական նեցուկն եմ, եւ որոց համար դառն է իրենց ձեռօք փակել որհասի վայրկենին մարած աչքերս։ Բժշկութիւնն անհրաժեշտ պէտքի մը, կենաց պահպանման ծնունդն է. այն՝ միջոց իմն է վերին Տեսչութեան՝ որ մեր քայլերուն առջեւ սփռած է ծաղիկ, տունկ, բոյս ի դարման մեր ցաւոց և ախտից, և սատի յայտ է թէ երկինք անգամ չհաճիր տարաժամ մահերու։

Ուրեմն յաւէտ օրհնութեանց արժանի էք դուք, Գերազնիւ Տէր, երբ կը կատարէք աստուածային գործ, երբ մանաւանդ ինձ նման աղքատ հիւանդներու կեանք կը բաշխէք առանց ոեւէ շահու ակնկալութեան։

Երբեք չպիտի մոռնամ Ձեր այս թանկագին ծառայութիւն, և միշտ ջերմ ըղձիւք Ձեր արեւշատութեան և երջանկութեան պիտի մնամ Ձեզ՝

Երախտագէտ և ամենախոնարհ
ծառայ

[Թուական] * * *

## 7 · Մանկան մը ծննդեան առթիւ շնորհաւորական նամակ։

Տէ՛ր,

Քանի՜ կը բերկրիմ այս պահուն, մինչ աստուածային շնորհք կը գեղուն Ձեր տան մէջ, մինչ նորածին մը կարծես լուսափթիթ ամպոց կողերէն փրթած հրաշագայթի նման կ'ողողէ Ձեր տուն ուրախութեամբ, կը բերէ Ձեզ երջանիկ հանդէս, որ իցի՜ւ սկիզբն ըլլար շատ մը երջանկաւէտ հանդէսներու։

Մինչև ցարդ այս մանկիկ հրեշտակ մ'էր որ կը թռչտէր երկնից մէջ. այժմ որդի կ'ըլլայ Ձեզ, մինչև ցարդ ծաղիկ մ'էր երկնային դրախտին, այժմ կը ծլի Ձեր բուրաստանին մէջ՝ գեղեցիկ բուրմամբ և շնորհագեղ տեսլեամբ, յափշտակելով սրտեր։

Եւ այժմ մտօքս կը մտնեմ այս երախայի փառաւոր ապագայի մէջ. կը տեսնեմ աճած հասակով և իմաստութեամբ. ամենքն երանի՜ կուտան իւր ծնողաց, մինչ փառօք պսակեալ կ'երևի աշխարհի առջեւ. փառաց աստղերով զարդարեալ ճակատն կը թրջի բարի հօր և մօր սիրակաթ համբոյրներով, առաքինութիւնը կը վարձատրէ զայն այնպիսի դափնիներով՝ որ անմահ են։

Այո՛, այժմ նա փափկիկ և տկար է, բայց այդ քնքուշ մարմնոյ մէջ մեծ հոգի մը կը բնակի, իւր սիրտ խորան է արդէն իսկ վեհ զգացմանց։ Ուրեմն իւր երախտագիտութիւնն ևս պիտի ըլլայ միշտ փառաւոր, երջանկաւէտ, և կեանքն իւր բոլոր սիրելեաց բարեմաղթութեանց արժանի կեանք։

Այսօրքիկ են կանխագուշակութիւնքս՝ յորս կը հաւատամ թէ չեմ խաբուիր բնաւին ։

Ձեր խոնարհ ծառայն

[Թուական] * * *

---

## 8 · Շնորհաւորական նամակ առ մեծ հայր ։

Ամենասիրելի մեծ հայր իմ,

Զունիմ տարբեր բան մը յայտնելու առ Ձեզ · այլ ինչ որ սիրտս յաճախ , գրեթէ ամէն ժամ կ'զգայ, ինչ որ միտքս մէն մի վայրկեան կը մտածէ · այսինքն սէր և երախտագիտութիւն առ Ձեզ ։

Ինձ համար տարւոյն ամէն օրն Ձեր մեծ անուան տօնի օրն է , զի ամէն օր , ամէն ժամ Ձեզմով կ'ուրախանամ, Ձեր սիրով կը բաբախէ սիրտս ։

Ուրախութիւն է ինձ ունենալ մեծ հայր մը, որ մեր գերդաստանին փառքերէն մին է ։ Մայրս շատ անգամներ ինձ խօսած է այն բարեմասնութեանց վըրայ՝ որովք օժտեալ էք · ի՞նչ փառք , եթէ ունենամ Ձեր սրտի բարութենէն կայծ մը , Ձեր ազնուութենէն ճառագայթ մը ։

Իցի՜ւ թէ յառաջիկային մէջ կարենամ աւելի հրապուրիչ ոճով բացատրել զգացումներս · դեռ խօսիլ չըգիտցող երախայի մը կը նմանիմ, որ իւր ապաւորութիւններն արցունքով կամ ժպիտով կը բացատրէ · ա՜հ, կ'ուզեմ խօսիլ, և բաւական բառեր չունիմ ։ Իմ բոյնիս մէջ ճճուող ճնճղուկ մ'եմ, կ'ուզեմ արծիւ ըլլալ և յանհունութիւն սլանալ ։

Սակայն Ձեր ներողամտութեամբ քաջալերուած՝ այս մի քանի տողերով կը յայտնեմ Ձեզի բարեմաղթութիւններս առ Ձեզ ։

Հաւատացէք , Սիրեցեալ մեծ հայր իմ, Ձեզ նը-

կատմամբ ունեցած զգացմանցս անկեղծութեան և սիրոյս անքաւութեան, և ընդունեցէք, կ'աղաչեմ, զիս Ձեր շնորհապարտ Դուստր

[Թուական] * * *

## 9. Շնորհաւորութիւն առ բարեկամուհի մը։

Սիրելիդ իմ Գոհար,

Կը յիշե՞ս այն օրն, երբ ի միասին կը շրջէինք Պէօյիւքտէրէի քարափանց վրայ, տեսանք ծերունի մը՝ որ մենէ ողորմութիւն խնդրեց։ Հէքն բոկանի էր, տըժգոյն, ողորմուկ և վաստակաբեկ։ Աւա՜ղ, մեր նպաստըն ի՞նչպէս կարող էր սփոփել թշուառին այնքան տառապանքն։ Տխրութեամբ կը դիտէիր ծերոյն հեռանալը, և պարապ քսակդ ցուցնելով ինծ, կը ցաւէիր որ չես կրնար աւելի ևս սփոփել թշուառները։ Այն ատեն արտասուալից էին աչերդ, և սեղմելով ձեռքս, լաւ կը յիշեմ թէ այսպէս ըսիր. «Ա՜հ, ինչու՞ հարուստ չեմ։»

Անշուշտ բարերար ոգի մը լսեց քու ձայնդ, երկինք պսակեց իղձերդ, որովհետեւ դու այսօր հարուստ ես այն ինչ ստացած ժառանգութեամբդ։

Այսու կը շնորհաւորեմ քաղաքիդ աղքատները, կ'օրհնեմ զանի՝ որ կարծես հասկնալով քու բարեսրտութիւնդ, քեզ ընծայեց դիւրութիւն զայնս երջանկացնելու։ Բազումք պիտի օրհնեն զքեզ, ի՜նչ փոյթ թէ երախտիք պատահին ապերախտներու։

Շնորհակալութի՜ւն, սիրելի մտերմուհիդ իմ, զի հաճած ես առաջին առթիւ տեղեկացնել ինձ քու երջանկութիւնդ։

[Թուական] * * *

## 10. Շնորհակալութիւն ընկերուհւոյ մը կողմանէ առ իւր ընկերուհին։

Քաղցրի՛կդ իմ,

Դու ևս ականատես եղար այն ցնծութեան, երբ դպրոցէն հրաժարեցայ։ Արդարև յոյժ երջանիկ էի, զի նորէն պիտի տեսնէի ծնողքս, և մեր դաշտերն՝ որք գարնան հետ կը գեղեցկանան։ Հրճուանքս անխառն էր պահ մը. երջանկութիւն մ'էր յաւէտ վայելել ծընողացս տեսքը։

Նոյնպէս գոհ էի զի վերստին կը գտնէի իմ սպիտակ և բարեյարդար սենեակս, զի ա՛լ չպիտի լուծէի խնդիրներ, չպիտի գրէի շարադրութիւններ, ևլն։ Այնչափ գոհ էի, որ պահ մը մտածեցի լճակը նետել գրքերս, տետրերս, վերջապէս ամէն բան՝ որ ինձ կը յիշեցունէ դպրոցական կեանքը։

Բայց այս նախկին եռանդս նուազած է։ Ո՛հ, սըրտիս պէտքն կ'ըլլայ տակաւ մտածել դպրոցին վրայ, ուսուցչաց վրայ, ընկերուհեաց վրայ, որոնց հաճոյից և փշաց մասնակից էի, ընկերուհեացս՝ զորս գուցէ յաւէտ չտեսնեմ. որովհետեւ ո՞վ գիտէ թէ ապագան զմեզ ո՞ւր պիտի տանի։

Երբ այս ամէնը կը յիշեմ, հոգիս կ'ալեկոծի։ Կը վայելեմ ծնողացս տեսքը, բայց կը ցաւիմ կորուստներուս վրայ, և կորուստներս ասոնք են. ուսուցիչք և ուսուցչուհիք, ազնիւ ընկերուհիք, դուք։ Վերջապէս այս ամէնը զիս կը խռովէ յոյժ։

Ինչո՞ւ համար կատարելապէս երջանիկ չենք կրնար ըլլալ։ Ա՛հ, եթէ հեռաւորութիւնք կը բաժնեն զմեզ,

թող մեր նամակները մերթ ընդ մերթ զմեզ իրարու մօտեցնեն, որպէս զի կարելի եղածին չափ կենդանացընենք մեր բարեկամութեան քաղցրիկ յիշատակները։

Շնորհակալութի՜ւն այն չքնաղ նուէրին համար՝ որով կը յիշեցնես ինձ մշտավառ սէրդ։ Ես կարող չեմ կենդանի բացատրութիւններով յայտնել, ինչ որ կը զգամ քեզ համար։

Մնա բարեա՛ւ, սիրելի մտերմուհիս, դու ես ցանկա՝ վերադարձիդ ի ծոց ընտանեաց. բայց յիշէ՝ թէ երբ դպրոցը թողլով այլուր փնտռես երջանկութիւն, պիտի հրաժարիս նաև շատ մը ուրախութիւններէ՝ որոնց վրայ սիրտդ վաղ կամ անագան պիտի մորմոքի։

[Թուական] * * *

---

11. Կնքաւոր մը նամակն առ իւր սանուհին՝ որ այն ինչ աւարտած է դպրոցական շրջանն։

Սիրեցեալդ իմ,

Երէկ ընդունեցայ նամակդ՝ որ ինձ մեծ հաճոյք պատճառեց. որովհետև անով հասկցայ թէ գիւղական աշխատութիւնք քեզ չեն մոռցուցած դպրոցը։ Կը վախնայի թէ բազում այլ աղջկանց նման ըսես. ա՜հ, ես ազատուհի՞ մ'եմ, որ խոհանոցի գործեր տեսնեմ, հնձոց վրայ հսկեմ, հաւեր պահեմ»։ Ասի սխալ մ'է, ուր կը հետեւին շատ անխուսափելի աղէտք՝ զորս յետոյ դժուար է բառնալ։

Առանց ծանրանալու այն անհուն գոհունակութեան վրայ, զոր թէ՛ բարւոքընթերցմունք կը պատ-

ճառեն և թէ՛ գրութիւնք՝ որոնցմով մեր մտածումները այլոց կը հաղորդենք, կ'ըսեմ թէ կրթութիւնն մեծամեծ բարիքներ կը մատուցանէ։ Որովհետեւ դու գեղջկուհի մ'ես, ժրաջան, համեստ, բարենախանձ ոգի ունիս, հարկ կը համարիմ քեզ շօշափելի օրինակ տալ և ցուցնել թէ կրթութիւնն աղբիւր է երջանկութեան։

Հօրս կալուածներուն մէջ կան երկու բաւական կարեւոր ագարակներ։ Մին յանձնուած է Պետրոսի՝ որ կանուխէն ամուսնացաւ Ատրինէի հետ, որուն համար կ'ըսէին թէ թէպէտ չունի հարստութիւն մը, սակայն իւր դպրոցի դասերէն օգտուած է, միւս կալուածն կը յանձնանձէ Գրիգոր, որոյ կինն Սերարփին հարուստ կը կոչուի, որովհետեւ մեծ հարստութեան մը տիրացած է։

Երկու վարձակալներն ալ հաւասարապէս մտացի են, աշխատասէր, և պարկեշտ. ուրեմն ինչո՞ւ համար Պետրոս չյառաջադիմեր, մինչ Գրիգոր լաւ դրից մէջ է և մտադիր է արդէն փոքրիկ դաշտ մը գնել։ Միոյն բաղդն յաջո՞ղ է, և միւսոյն ո՞չ։ Արդեօք կարկուտը և եղեամը միոյն կը խնայե՞ն և միւսը կը հարուածեն։ Ո՛չ. բայց Ատրինէ, որ գիտէ կարդալ, գրել, հաշուել, կանոնաւորապէս կը բռնէ տետրակներ, առուծախի հաշիւներ. և ոչ ոք կարող է զանի խաբել։ Երբ օր մը ծախքը մուտքէն աւելի ըլլայ, ամէն խնայողութիւն ի գործ կը դնէ որպէս զի հաւասարակշռութիւն պահուի. ամէն ինչ կարգին է հոն, ոչ դրամ կը կորսուի, և ոչ շռայլութիւն կ'ըլլայ։ Մանաւանդ երբ ամուսինն և ծառայք երեկոյին ի տուն դառնան, օրուան աշխատութիւններէն յոգնած, երիտասարդ վարձակալուհին կը կարդայ անոնց շահագրգիռ և զբօսեցուցիչ

*գերք մը։ Ամէն ոք կ՚ունկնդրէ Ատրինէի և ոչ ոք կ՚երթայ գինետունն։ Նա այսու դիւրութիւններ գտած է քաղաքին մէջ վարկ բանալու իւր ամուսնոյն համար, և Պետրոս այս դասերէն խրատուած օր աւուր կը բազմացնէ իւր հարստութիւններն։ Ընդհակառակն Գրիգոր որևէ օգուտ մը չքաղեր իւր կնոջ գիտութիւններէն, ոչ մէկ դիւրութիւն կը գտնէ իւր տան մէջ։ Թէպէտ նորա կինն Սերաֆի մեծ դրամօժիտ բերած է, սակայն օրէ օր կը ծախսուի այն. աղախինք, ծառայք կը վարուին իրենց ուզածին պէս։ Երեկոյներն փոխանակ ընթերցումներ մտիկ ընելու, կը կանչէ դըրացիներ, կ՚արբենան, կը խաղան և դրամը կը վատնուի։ Ագարակին հասոյթը տարուէ տարի կը նուազի, և վարձակալը նորանոր պարտքեր կ՚ունենայ։ Ահա թշուառութիւն։ Այսպէս կը տեսնես, սիրելիդ իմ, մէկ կողմէն տգիտութիւն և աղքատութիւն, և միւս կողմէն կրթութիւն եւ դիւրակեցութիւն։*

*Աշխատէ՛, աղջիկս, օգտուէ՛ այն դիւրութիւններէն որք քեզ ո՛չ թէ գիտուն մը, այլ ուսեալ մը պիտի հանդիսացնեն։ Դպրոցը քեզ սորվեցուցած է կարդալ, գրել, քերականութիւն, հաշիւ. խորհէ՛ անոնց վրայ՝ որ քեզ ըսած են, և անո՛նց՝ զորս դու աչքերով պիտի տեսնես։ Աւելին չեմ պահանջեր։ Ի խրախոյս քեզ կը յղեմ մի քանի գրքեր յընթերցումն։ Գրէ՛ ինձ մերթ ընդ մերթ, որպէս զի քու յառաջադիմութեանդ տեղեկանամ։*

*Շնորհաւորութիւններս դպրոցական շրջանն յաջողապէս աւարտելուդ համար։*

[Թուական] [Թարգմ.] * * *

---

## 12. Հօր անուան տօնի առթիւ աղջկան մը նամակ։

*Բազմերախտ հա՛յր,*

*Ո՛չ, ստուերի մէջ չպիտի նկրհէ յիշատակդ, սո՛ւրբ և պաշտելի յիշատակդ, որ կենացս առաջին րոպէէն մանկական խաղ ժպիտներուս ու արցունքներուս մէջէն երևցաւ։ Բարւոյն դէմքն էր այն, արդարի դէմք, որ որրանիս վերև ցոլացաւ։*

*Ո՛վ քաղցրիկ երազ մանկութեանս։*

*Դո՛ւ, ո՜ սիրեցեալ հայր, խունկեր ցանեցիր այն մթնոլորտին մէջ՝ ուր արև տեսայ, մեղր լեցուցիր կենացս բաժակին մէջ, երջանկութիւն ինծ նուիրեցիր։*

*Ի՞նչ փոխարէն տամ քեզ, հա՛յր պատուական։*

*Նորափթիթ կենացս ամբողջ աւիւնը և սէրն կը նըւիրեմ առ քեզ. ո՛հ, ամէն ժամ խանդ մը կը հրդեհէ զիս, երախտագիտութեան կրակը կը լափէ զիս։*

*Յաւէտ օրհնութի՜ւն քեզ։*

*Սէրն՝ զոր կը նուիրեմ քեզ, հա՛յր անզուգական, այն ճրագն է՝ որ քաղցրանշոյլ կը վառի հոգւոյս խորանին վրայ, տաճարի կանթեղին նման՝ որ կը նշուլէ հեզիկ և կը լայ կարծես սրտաթունդ մրմունջներ։*

*Այդ որդիական զուրգուրանքն զիս կը խռովէ, և աչերէս արցունք կը ցայտեն, ուստի մենիկ, հեռաւոր անկեան մէջ կը փակուիմ ծածկելու այլայլութիւնս, երբ այսպէս հեռու եմ քենէ։*

*Թէպէտ հեռու, բայց կուգամ ձայնս խառնել անղուանդ շնորհալի հանդիսին մասնակցողաց բարեմաղթութիւններուն և կ'աղաչեմ որ ընդունիս ջերմ զգա-*

ցումներս թանկագին կենացդ երջանկութեան և երկարութեան համար։

Միշտ

Ամենահլու դուստրդ

[Թուական] * * *

---

### 13. Նամակ քրոջ մը առ իւր եղբայրն. — անուան շնորհաւորութիւն։

Եղբա՛յր իմ խանդակաթ,

Առիթն պատեհագոյն է, սիրելի անուանդ տօն, որ կը նորոգէ յիս այնքան ջերմագին զգացումներ. գէթ այս պահուն քու քովդ լինէի, շունչ ի շունչ խառնէի բարեմաղթութիւններս. բայց դպրոցական կեանքն հեռի կը պահէ զիս ի քէն։ Դու եւս այժմ չե՞ս պանդուխտ ինձ նման, այլ քան զիս մեղու ժրաջան՝ աշխատութեան փեթակին մէջ։ Սակայն պիտի անցնին այս տարիներ և սիրալից սիրտն պիտի գտնէ դարձեալ իւր ընտանեկան վառարանն, նորա շուրջ խմբուած իւր հոգւոյն հատորները, հայր, մայր և քոյր. անդ պահուած են իմ ուրախութիւններս, իմ երջանիկ ժամերս։ Ո՛վ հայրենի տուն, ո՛րչափ սուրբ է մթնոլորտդ։

Սիրելի եղբայր իմ, այս տարի ինձ համար խորհրդաւոր կերպով կը ներկայանայ անուանդ տարեդարձը, զի առաւել քու սէրդ սրտիս կը խօսի. կ՚զգամ թէ ինձ փառք է քեզ նման եղբայր մը ունենալ, այնպիսի կատարելութեամբ զարգացած, որպէս կ՚երևակայեմ ընդ միշտ, այնպիսի բարձր ձիրքերով օժտեալ՝ որք եթէ պատիւ են մեր տան, մանաւանդ ինձ երջանկութիւն են։

Ո՜հ, քաղցր է ինձ մաղթել զի ապրիս երկար և երջանիկ, և անունդ փառաց տիտղոս մը ըլլայ շատերու առջեւ։

Ցաւէրժ անձնուէր
Քոյրդ

[Թուական] * * *

---

## 14. Քրոջ մը առ իւր եղբայրն ուղղեալ շնորհաւորական նամակ։

Եղբա՛յր իմ,

Ի՜նչ մակդիր կցեմ եղբայր բառին, որ ինձ համար քաղցրագոյն անունն է, և այն ինքնին կը բացատրէ ամենասիրելի ածականն. եղբօր մի համար զգացած սէրս հզօրագոյն զարկն է սրտիս։

Բայց հեռի ապրիլ ի քէն, չվայելել քաղցրիկ տեսութիւնդ դժնդակ էր ինձ, և ահա սահեցան գացին պանդխտութեան տարիներ, յորս շնորհիւ անխոնջ աշխատութեան՝ տանդ ուրախութիւնն և գերդաստանիդ պատիւն աւելցնելու դիրք մի ստացար. բազմաթիւ մրցակիցներու մէջէն յաջողեցար և դու բժշկական վկայագիր ընդունիլ, վկայագի՛ր՝ որ պերճախօս էր արդէն քու աննման ձիրքերուդ մասին. այլ եւս ի՜նչ՝ քան զայս ուրախութիւն, մանաւանդ ի՜նչ երջանկութիւն քրոջդ համար՝ որ միշտ իւր աղօթից մէջ կը հայցէր յերկնից քու գերազանց յաջողութիւնդ։ Ո՜հ, այժմ առաւել կը հաւատամ թէ երկինք լսած է սրտաբուղխ ձայնիս. յիրաւի նա՝ որ հաւատքով և եռանդով կը խնդրէ, անոր ձայնին կը լսէ Աստուած։

*Եւ այժմ մտօքս կը յածիմ այն վայրերն՝ յորս ընդհուպ սփոփանք պիտի սփռես, յուսահատ հիւանդին անկողնոյն սնարն կանգնած՝ կեանք պիտի բաշխես նմա, պիտի սրբես շատերու արցունքն և զքեզ սիրելի պիտի ընծայես. որովհետև ճարտար բժիշկ մի օրհնութիւն է մարդկութեան։ Երբ կը մտածեմ թէ դու թանկագին ծառայութեամբքդ արժանի պիտի լինիս ընդհանուրին օրհնութեանց, ամէն շրթունք պիտի գովեն զքեզ, բարեմաղթու պիտի լինին երջանիկ կենացդ համար, յանհունս կը հրճուիմ։*

*Եղբա՛յր իմ, ժամէ ի ժամ կ՚սպասեմ ցանկալի դարձիդ։ Ա՜հ, ո՜րքան մեծ ուրախութիւն պիտի պատճառէ մեր տան՝ փառաւոր դարձդ, երկարատեւ բացակայութենէ մը վերջ քաղցր է սիրելեացդ գրկաբաց ընդունիլ զքեզ։*

*Համբուրելով զքեզ սիրաջերմ շրթամբք՝*

*Եմ ընդ հուպ դարձիդ*
*Տենչացող քոյրդ*

[Թուական] * * *

---

## 15. Նամակ Տիկին տը Սիմիանի։

*Կը փափաքէի իմ երախտագիտութիւնս յայտնելու եղանակ մը գտնել՝ որ յարմարի և համեմատ ըլլայ այն բովանդակ երախտագիտական զգացման, զոր սրտիս մէջ ունիմ խեղճ փոքրիկ Բեռնարին Ձեր կողմանէ եղած բարւոյն համար։ Դուք անոր ընթացքէն գոհ պիտի ըլլաք, աղէկ տղայ մ՚է. Նա Ձեր բոլոր բարութեանց համապատասխան եռանդ ցոյց պիտի տայ, որով մեր ամենուս ալ երախտագիտական պարտուց դոյզն ինչ բան ըրած ըլլայ։ Լաւ համոզուեցէք, եթէ*

հաճիք, որ ապերախտ կնոջ մը բարիք ըրած չպիտի ըլլայիք, և Ձեր բարութիւնք այնպէս կ'ազդեն յիս, որ բոլորովին Ձեզ կը նուիրուիմ: Եթէ այսու հանդերձ վստահ նաւու գրագիր կարգուի, չգիտեմ այլ ևս ի՛նչ ընել: Իմ մամս (տիկին Սեվինեէ) կ'ըսէր այսպիսի դէպքի մէջ թէ՝ երբ մարդ այս աստիճան երախտաւոր ըլլայ, ապերախտութիւնը միայն կրնայ ամէն բան թօթուել: Ձեր մասին այս կերպ խորհելու զգացումը չունիմ, և այլն:

[Թարգմ.]

---

## 16. Նամակ Վ... ի

Տէ՛ր,

Ձեզ ո՛րչափ պարտական լինելուս վերահասու եղայ: Դուք չէք այն մարդոցմէ՝ որ իրենց բարեկամաց բարիք միայն կը մաղթեն, այլ դուք բարիք կը գործէք խկ: Եթէ ուրիշներն ըլլային, պիտի ըսէին. ի՛նչպէս ելնելու է ասոր մէջէն, գործը տագնապիչ է: Եւ երբ մարդոց վրայ արգահատիլ հարկ ըլլայ, կը թողուն զայն և իրենց ճաշին կ'երթան: Իսկ դուք ամէն բան կը կարգադրէք, և յոյժ արագ, և յոյժ բարւոք, և ըստ ամենայնի ծառայութիւն կը մատուցանէք բարեկամաց:

[Թարգմ.]

---

## 17. Նամակ Տիկին տը Մէնթընոնի առ Օր..:

Շատ ուրախ եմ Ձեր առնուորութեան համար: Նա՝ որ Ձեզ հետ կ'ամուսնանայ, շատ յարգելի անձ է. Նա

Նախամեծար կը համարի Ձեր առաքինութիւնն այն հարստութիւններէն՝ զորս կրնար գտնել, և Դուք իւր առաքինութիւնը կը նախադասէք այն ընչից՝ որ պիտի վայելէք իրեն հետ։ Այսպիսի զգացմամբք ամուսնութիւն մը երջանիկ միայն կրնայ լինել։ Աստուած պիտի օրհնէ երկու ամուսիններ՝ որոց յօժարական է բարեպաշտութիւնն։ Անդադար պիտի սիրեմ զՁեզ և պիտի յիշեմ յարաժամ որ սիրելի եմ Ձեզ։

[Թարգմ]

---

18. Առ օրիորդ մի՝ նորա նշանախօսութեան առթիւ։

Օրիո՛րդ,

Այնքան բուռն է իղձս Ձեր երջանկութեան համար, զի կը կարծեմ թէ անհնար է որ ինձ չափ այլ ոք բերկրի ի լուր Ձեր նշանախօսութեան։

Վաղուց արժանի էիք լաւագոյն ընտրութեան մը, և կ'իմանամ թէ Ձեր խօսնայրն եւս մշակեալ մտքի մը հետ ունի բարի սիրտ. ի բնէ քաղջատոհմիկ է և այնպիսի ձիրքեր ունի, որոց վրայ աշխարհ կը հիանայ։

Ի՜նչ խորհրդաւոր է այն պահն, երբ թողլով հայրենի տունն պիտի երթաք ընտրեալ երիտասարդին տունէն. ի՜նչ հզօր է այն ձայն, որ կը հրամայէ Ձեզ հեռանալ ծնողաց գրկէն իբրև նոր Ռեբեկա մը՝ ում հարցուցին. կ'երթա՞ս այս անծանօթին հետ. և նա ըսաւ. կ'երթա՛մ։

Ուրեմն գնացէ՛ք և դուք, Ազնի՛ւ օրիորդ, Ձեր ճակատագրի տունէն, գնացէ՛ք ողջունել երջանիկ կենաց մը լոյսերն, որք աւետեն Ձեզ միշտ պայծառ օրեր։

Այսպէս կը մաղթէ ի սրտէ Ձեր ազգական՝

[Թուական]

* * *

# ՑԱՒԱԿՑԱԿԱՆ ՆԱՄԱԿՆԵՐ

**Գիտողութիւնք.** — Այս տեսակ նամակաց մէջ ամենէն կարեւոր կէտն է զգոյշ կենալ սեթեւեթեալ ոճի մը պահանջումներն ու ոգին գործածելէ (նամակներ՝ որոց նպատակն է ըստ սովորութեան ազգականի մը կամ բարեկամի մը մահուամբ տխրազգած անձանց հոգւոյս մէջ մխիթարանք ներշնչելու ճգնիլ)։ Այդպիսի ասացուածոց պչրանք մը խիստ ծաղրելի եւ անյարմար կը լինի, որովհետեւ այդ եղանակաւ նամակագիրն ցոյց պիտի տայ աւելի մտացի նամակ գրելու նպատակ ունենալն քան ուրիշի ցաւոց կարեկից ըլլալն։ Այս տեսակ նամակաց մէջ երբեմն ի դէպ կը լինի կրօնական գաղափարներ եւս խառնել. մեր ոչնչութիւնը մեր աչքին առջեւ ունենալով աւելի մեր խորհրդածութիւններն կը դարձունենք **Գերագոյն Էակին** զօրութեան եւ մեծութեան վրայ. Մեր մտածմունքն ի տես դագաղի մը աշխարհային կապերը խզելով կը սլանայ անսահմանելի ապագայի մը բնագաւառներ, անմահութեան անհուն դաշտեր. այս աշխարհի մէջ մեր յարգած եւ մեր խնկարկած ամէն ինչ մեզ կ'երեւի իբրեւ ծաղրելի խաղալիկներու կոյտ մը . . . ։ Այսպէս մի քանի երկիւղած եւ փիլիսոփայական պարզ խորհրդածութիւններ, ընդ նմին հանգուցելոյն գովեստք կը մեղմացնեն մորմոքներ։ Նամակագիրն այս կերպով նոր արցունքներ կը խլէ իւր արտաշարժ եւ մելամաղձոտ գովաբանութեամբ եւ կը ծնուցանէ վշտի մէջն իսկ ներքին բերկրանք զգացնող հրապոյր մը։ Նամակառուն խանդաղատանօք կը կարդայ եւ այդ ընթերցման գործածած ժամանակն տեսակ մը սփոփում է իւր վշտին։ Միւս կողմանէ չմոռնանք ըսելու որ մարդ իւր ժամանակն ի զուր կ'անցունէ կարդալով յաճախ արարողական այն սին ձեւերն՝ որ կը գործածուին այնպիսի գրութեանց մէջ, յորս նշմարիտ ցաւը երբեք չերեւիր իւր կինն կամ իւր ամուսինն կորուսանող անձին ուղղուած ցաւակցական նամակին մէջ։ Բայց անուրանալի է որ նշմարիտ բարեկամներու չափ չեն տխրիր պարզ ծանօթներ, կը բաւէ որ այդ գրողներէն միայն մին անկեղծաբար Ձեզ ցաւակից լինի. ահա այդ բարեկամն է որ չը գրեր այնպիսի նամակներ, որոնց մէջ արարողական ձեւեր միայն

ի նկատի կ'առնուին, այլ նա կը խառնէ իւր արտասուքներն Ձեր արտասուաց։ Այս այլ եւ այլ խորհրդածութիւններէն յետոյ՝ որոնցմով ուզեցինք նամակագիրն պատրաստել ցաւակցական ամէն տեսակ նամակաց շարադրութեան վրայ, փութանք այժմ այս նիւթերուն վրայ օրինակներ տալ։

---

### 19. *Ցաւակցական նամակ առ տիկին ոմն իւր ամուսնոյն մահուան առթիւ։*

*Տիկի՛ն,*

*Ծանրաթախիծ սգով իմացայ Ձեր ամուսնոյն մահուան գոյժը։ Դեռ այնքան մատաղ, իրեն հետ կը թաղուին գեղեցիկ յոյսեր. իւր բարեմասնութիւնք եւ ազնիւ հոգին կը խոստանային Ձեզ անխառն երջանկութիւն։ Կորսնցուցիք զանի, հազուագիւտ ընկեր մ'էր՝ որ բաժնուեցաւ ի Ձէնջ. սակայն ո՞չ ապաքէն ամենքս ալ ստիպուած ենք միմեանց ըսել յաւիտենական մնաս բարով։ Ա՜հ, իմ արցունքներս ալ կը խառնեմ ձերիններուն հետ. սակայն միթէ անհնա՞ր է չը մխիթարուիլ. այո՛, անկարելի է մոռնալ իւր կորուստն, բայց անկարելի չէ չմխիթարուիլ։ Երկինք՝ ուր կ'ուղղենք մեր արցունքոտ աչքերը, ձայն մ'ունի՝ որ մեր ականջին կը հնչէ այսպէս. մխիթարուեցէք, ես եմ որ կ'երջանկացնեմ իմ սիրելիներս։*

*Տիկին, Ձեր ամուսինն այնքան առաքինի և երկիւղած՝ կը վայելէ այժմ Աստուծոյ սիրելեաց պահուած երջանկութիւն։ Յիշենք թէ աստ մենք վաղանցիկ, կարճատեւ դեր մ'ունինք. յորմանէ ի մահ կը դիմենք, բայց առաքինւոյն համար կայ ուրիշ կեանք մը, որ կը*

վարձատրէ զանի մշտատեւ իւր բարեաց համար։ Այն երկնային օթեւանին մէջ արդարք պիտի գտնուին. Ձեր ողբացեալ ամուսինն գլխաւորաբար կը քաջալերէ զՁեզ արիաբար տանիլ ամէն վշտաց։ Յետ այսորիկ ստանձնեցէք Ձեր որդւոց վրայ մօր և հօր կրկին պարտաւորութիւններն։ Այն անմեղ էակներն զՁեզ ունին նեցուկ. ի նոսա կը գտնէք իրենց հօր գծերը. Թող անոնք թանկագին լինին Ձեր մայրենի գթոյն առջև։

Յանձնելով զՁեզ Հոգւոյն Սրբոյ սփոփանաց՝ պատիւ ունիմ լինել, տիկին, Ձեզ հնազանդ և ցաւակից

Ծառայ

[Թուական] ***

---

20. Պատասխան ցաւակցական նամակի՝ տիկնոջ մը կողմէ ուղղեալ։

Ազնուազարմ տէր և բարեկամ,

Ներեցէք նամակիս կարճառօտ ոճոյն. անագորոյն կացութիւնս զիս կը չքմեղացնէ անշուշտ։ Ձեր սփոփանքն ի խոր ազդեց ինձ։ Երախտապարտ եմ Ձեզ, զի կը ջանաք վշտացս բեռն թեթեւցնել։ Կը յուսամ թէ կրօնական զգացմունքս, և որդւոցս աչերն մորմոքս կը նուազեցնեն։

Սակայն այս վշտացս մէջ քաղցր է ինձ մտածել թէ ունիմ բարեկամ մը՝ որ կը յուզուի իմ տառապանացս վրայ։ Կ՚զգամ Ձեր մխիթարութեանց արժէքն, և շնորհակալութիւններս կը յայտնեմ առ Ձեզ, զի

այնքան զգայուն սրտիւ կը հաճիք ցաւակից լինել իմ դժնդակ կորստեանս համար։

Կ'աղաչեմ որ ընդունիք այս առթիւ խորին մեծարանացս հաւաստիքն, որով պատիւ ունիմ լինել

Ձեզ անձնուէր

[Թուական] ***

---

## 21. Ցաւակցական նամակ առ հայրակորոյս որդի։

Տէ՛ր,

Ձեր պատուական հօր տարաժամ մահն զիս եւս խորին թաղծութեան կը մատնէ. ապահով եղէք թէ անկեղծօրէն ցաւակից եմ Ձեզ։ Կը սիրէի Ձեր հայրը, մտացս առջեւ կուգայ այն ազնիւ քաղաքացին, եւ ինքնին կ'երեւակայեմ Ձեր խորին ցաւը։ Ո՛չ, չպիտի ուզեմ Ձեր սգոյն մեծութիւնը նուազեցնել, զի օրինաւոր է այդ. լացէ՛ք Ձեր կենաց հեղինակին վրայ, որդիական սուրբ հարկ մ'է այդ, լացէ՛ք. ձեր արտասուք պատիւ են Ձեզ, և կ'ապացուցանեն Ձեր զգայուն հոգին և բարի սիրտն։ Ծաղիկներ սփռեցէ՛ք այն հողին վրայ՝ ուր կ'ամփոփուին ոսկերք որդեսէր հօր։

Տէր, այժմ առիք կենաց տխուր փորձն. մեր ճակատագիրն այս է, հետզհետէ երթալ ի լուռ գերեզման, բնակիլ ի գիշեր շիրմին։ Ձեր որդին իսկ մի օր պիտի մատուցանէ որդիական հարկն Ձեր գերեզմանին վրայ։ Երանի՜ Ձեր հօր, զի իւր առաքինութիւններ կուտայ ժառանգութիւն Ձեզ, իւր բարի համբաւն։

Եղէ՛ք նմանող նմա, նորա ոգին կրելով երեւցի՛ք աշխարհի առջեւ ։

Ձեր կացութիւն կը յուզէ զիս ։ եւ կը ցաւիմ որ կանուխէն կ'ունիք տառապիլ, սիրելեաց կորուստներ տեսնել, նկատել շուրջն պարապութիւն մը՝ որ կը տխրեցնէ իրաւամբ ։

Այսու հանդերձ կ'աղաչեմ որ արիանաք Ձեր մորմոքանաց մէջ, եւ ընդունիք զիս Ձեզ՝

Սգակից բարեկամ

[Թուական] * * *

---

## 22. Ցաւակցական Նամակ ։

Ազնիւ բարեկամ,

Ո՞ւր է նա, չքնաղածիր քոյրդ, որ արդէն դպրոցի գրասեղաններուն վրայ լինելով, բայց կը փայլէր գեղեցիկ համբաւ ։

Նա քեզ եղբօրդ հրճուանքն էր, ծնողացդ ոսկեղէն երազն ։ Ա՜հ, ի՞նչու խամրեցաւ այն ծաղիկն, ո՞ւր արդեօք սլացաւ այն նորափետուր թռչուն ։

Իւր անմեղի կեանքն ի՛նչ հմայք կը ներշնչէր, իւր սուրբ պատկերն ի՛նչ խոկմամբ կը յափշտակէր զսիրտն; ինք իւր ժիր եւ զգաստ աշակերտուհի մը ի՛նչ նախանձելի տիպար էր իւր համատի ընկերուհեաց ։ Զգիտեմք, արդեօք նա մի՞ն էր այն իմաստուն կոյսերէն, որ իրենց լապտերներն վառելով գնացին երկնային հարսանիքն ։

Դեռ կենաց դարնան մէջ կը ծաղկէր սիրուն, ծաղ-

*կի մը քնքուշ տեսլեամբ, թոյրով ու բոյրով լի․ հեզահամբոյր, բարեմոյն, յուսալից էակ մ՚էր, ընդհուպ պիտի պսակուէր շրջանաւարտի պսակով ի տրիտուր իւր այնքան չքնաղ աշխատութեանց և յաջողուածոց։*

*Աւա՜ղ, փոխան այդ պսակին ծաղիկներ ծածկեցին իւր թօշնեալ ճակատն, իւր դագաղն։*

*Եւ սակայն սփոփուէ՛, ազնիւ բարեկամ, նա կ՚ապրի դեռ իւր անմեռ յիշատակաւ․ Նա յաւէտ պիտի մնայ կենդանի ի սիրտս սիրելեաց։ Եւ երբ ամէն գարուն ծաղկին շուշան և մանիշակ, պիտի յիշեցնեն մեզ վաղամեռիկ քրոջդ, այն ամբիծ կուսին շնորհքներ և զգաստ ոգին։*

*Հայցելով քեզ և ընտանեացդ թաղծեալ սրտին երկնային սփոփանք՝*

*Եմ*

[Թուական] * * *

---

## 23․ *Ցաւակցական Նամակ։*

*Տէ՛ր,*

*Ձեր քրոջ տիկին Վիլռուայի մահն իմացայ, և այժմ առաւել կը ցաւիմ Ձեր քով չգտնուելուս համար, որովհետեւ ուրախութիւնն այնքան սրտազեղութեան պէտք չունի, որքան տխրութիւնն․ և բարեկամութիւնը շատ աւելի թանկագին է վշտի քան թէ հաճոյքի մէջ։ Որքան մահկանացուք արգահատանաց արժանի են, որ մշտատեւ սիրով կը կապուին իրարու հետ։ Ա՛հ, քանի որ հարկ է անցունել կեանքն լալով*

մեր սիրելեաց, մեր ննջեցելոց վրայ, և անոնց՝ որք անարժան են ապրելու, ո՜րքան ցաւալի կը գտնեմ կեանքը ամէն տեսակէտով։ Մեռնողներն ապրողներէն երջանիկ են. ոչինչ ունին ողբալու։ Այս խորհրդածութիւններն սովորական են. ի՞նչ փոյթ, ադով միթէ նուա՞զ բնական են։ Այս խորհրդածութիւններն ընողը այնպիսի ոք է որ աւելի դիւրամէտ է վշտանալու իր բարեկամաց հետ քան թէ զանոնք սփոփելու, եւ որ կ՚զգայ իր վշտերուն իսկ զայրանալը, երբ կը վշտակցի իր բարեկամաց վրայ։

[Թարգմ]

---

## 24. Ցաւակցական Նամակ։

Ի՜նչ կորուստ, Աստուա՛ծ իմ, և ո՛րպիսի փորձութեանց ենթարկել ուզած է Նախախնամութիւնը Ձեր առաքինութիւն, պարոն։ Այսպէս ահա կը ծաղրէ նա այն գաղափարներն՝ որք ամենէն օրինաւոր կը թուին մեզ։ Ցարդ վայելեցիք կենաց բոլոր բարիքները. երկար և յարատեւ յաջողութիւն մը, կայուն հարստութիւն մը, Ձեզի արժանի ընտանիք մը. ահա խել մը չնորհներ՝ զորս Աստուած ստիպուած չէր Ձեզ ընելու և գուցէ դուք ալ ըստ բաւականին խորհած չէք թէ միայն իրեն կը պարտիք այս ամէնը։ Մարդուն սովորութիւնն է Նախախնամութեան վերագրել չար բախտը և կարծել թէ իր անձին կը պարտի բարի բախտը։ Սակայն հարկ է որ վաղ կամ անագան վճարենք մեր պարտքը և ի մտի ունենանք թէ Աստուած մեզ

*չէ խրկեր յաշխարհ երջանիկ ըլլալու համար։*

*Նկատեցէք Ձեր վիշտն իբրեւ քաւութիւն այն յանցանաց՝ որոց ամէնքնիս ալ ենթակայ եմք այս կենաց մէջ։ Նկատեցէք զայն իբրեւ գրաւական մը այն երջանկութեան զոր Աստուած Ձեզ կը պատրաստէ հանդերձեալ կենաց մէջ։ Որդի մ'ալ ունիք. ամէն հոգ տարէք զանի Ձեզի պէս պարկեշտ մարդ ընելու. մէկ բառով, մխիթարուեցէք անով որ Ձեզ կը մնայ և աղօթեցէք անոր համար՝ որ ոչ եւս է։*

*Թերեւս զարմանաք այսպիսի խորհուրդներ ընդունելով վերտառութիւններ գրողէ մը. բայց գոհութի՛ւն երկնից, անոր պատիժը կրած եմ, և ինքզինքս դըժբախտ պիտի համարէի, եթէ պատժուած չըլլայի։*

[Թարգմ.]

---

## ՅԱՆՁՆԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ ՆԱՄԱԿՆԵՐ

**Դիտողութիւն**. — Երբ կը յանձնարարէք բարեկամ մը, ազգական մը, օտարական մը, պաշտպանեալ մը, վերջապէս թշուառութեան մէջ գտնուող անձ մը, կուզէք մի եւ նոյն անձին վայելել տալ այնպիսի շնորհներ, զորս աստիճանաւոր անձ մը կրնայ կատարել։ Ուրիշ կերպով բացատրելով, ձեր վարկն կը գործածէք ի նպաստ երկրորդի մը։

Յանձնարարութեանց բազմաթիւ տեսակներ կան. շատ զգուշանալու է զանոնք անխորհրդաբար եւ անխտիր կերպով գործածելէ, որովհետեւ աղով դուք տեսակ մը պատասխանատուութիւն ստանձնած կ'ըլլաք ձեր յանձնարարած անձին համար եւ վերջէն նորա գործելիք յանցանքներն եւ յիմարութիւններն կրնան Ձեր վրայ ծանրանալ, ուստի պէտք է այնպիսի անձեր յանձնարարել, որոց վրայ լաւ համարում ունիք, . եւ որոց բարոյականին վրայ կան-

խաւ նպաստաւոր տեղեկութիւններ հաւաքած ըլլաք ․ որովհետեւ դարձեալ կ'ըսեմ, վերջէն նոցա գործելիք թերութիւններն կերպիւ իւիք զՁեզ մեղսակից կը կացուցանեն ։ Սակայն հարկ չիկայ այդ խոհեմութիւնը մինչեւ չարակամութեան եւ անձնասիրութեան հասցնել ։ Անկեղծաբար կ'ըսեմ որ ինձ համար նախապատիւ է այն անձն որ չափազանց մարդասիրական բնաւորութեամբը զանձը կը վտանգէ քան այն անձ՝ որ այդպիսի անպատեհութենէ մը խոյս տալու համար ոչ մէկուն բարիք կը մատուցանէ ։

**Յանձնարարականի** մը գլխաւոր նիւթն է ընդհանրապէս յանձնարարելի անձին գովեստն, որով կը ջերմենք սիրտն այն անձին, յորմէ պաշտպանութիւն եւ բարեացակամութիւն կը խնդրենք ։

Աւագի մը, նախարարի մը յանձնարարութիւնն հրաման մ'է զայն ընդունողին համար ։ Յանձնարարական նամակներն պաշտօնական բան մ'են ։ Սոքա օտարականի մը, վաճառականի մը համար մեծ առաւելութիւն ունին, որոց վստահութիւնը կը շահեցնեն յանձնարարելոյն ։

---

## 25․ *Որբ աղջիկ մը յանձնարարել ։*

*Ազնիւ բարեկամ,*

*Ինձ պատիւ ըրած էք Ձեր մտերմութիւնն և թանկագին վստահութիւն նուիրել ։ Եւ քաջ գիտեմ թէ յամենայն դէպս կը հաւանիք իմ խորհրդոց, որոց գըլխաւոր արժանիքն է անկեղծութիւնն ։*

*Ուստի ապատաբար կը յանձնարարեմ Ձեր խնամոց և բարեսրտութեան Օր․ Ոգոհէ՝ որ շատ կանուխէն որբացած, ամէն շնորհաց և ձրից տէր աղջիկ մ'է․ իւր հայրը պատուաւոր քաղաքացի մ'եղած է․ հէքն անզօր լինելով մաքառիլ մի անողոք հիւանդութեան դէմ,*

վերջին շունչը մնչած է կնոջ և որդւոց համար հառաչելով։ Ընտանիքի հայրն այսպէս զոհուելէ յետոյ հը՞նա՞ր է որ կլինն եւս ապրի, նա՝ որ ուխտած է անբաժան մնալ ամուսնէն. այսպէս կլինն եւ բաժնուած է յաշխարհէ թողլով անպաշտպան որբեր։

Ահա այն վիճակ՝ որում ենթարկուած էր սոյն հէք որբուհի կենաց առաջին օրերէն. և սակայն հակառակ բնական դժուարութեանց ստացած է ընտիր դաստիարակութիւն մի, որ իւր այլ ձրից հետ միանալով իւր հարստութիւնն կը կազմէ։ Նա կարող է լինել տան վստահելի օրիորդ, մանկավարժուհի, ընթերցուհի, ևլն։ Իւր կերպարանքը վեհ է, և շարժումներն կիրթ, այնպէս որ իւր տեսքն արգահատանքի հետ խառն գորով մը պիտի ծնուցանէ ի Ձեզ։

Կը հաւատամ որ իմ բարեկիրթ և սիրուն պաշտպանեալս դուք առաջին պիտի լինիք պատուաւոր դըրից մէջ դնելու, այն հաստատ համոզմամբ թէ այսպիսի օրիորդ մը պաշտպանել Ձեր փափուկ զգացմանց համապատասխան կը գտնէք։

[Թուական] ***

---

26. Գանգատ ուսանողի մը առ Ս. Պատրիարքն ուղղեալ նամակն նորա պաշտպանութիւնն հայցելու մասին.

Բարձրաշնորհ Սրբազան Հայր,

Եթէ համարձակութիւն կ՚առնում դիմել յառս Ձեր Բարձր Սրբազնութեան, և Ձեր ծանրածանր զբաղ—

մանց մէջ պահիկ մը ունկնդրութիւն խնդրել, պատճառն բարձրագոյն դաստիարակութեան մը համար ունեցած տենչս է։

Ազգախնամ Տէր, պանդուխտ եմ, ուսման և գիտութեան սիրով ելայ իմ երկրէն, ուղեւորի ցուպը ձեռք առի, և եկայ հոս. աստ ի Պոլիս շատ են բարձրագոյն վարժարանք։ Բայց ո՞վ է որ ինձ նուիրէ թանկագին պաշտպանութիւն։ Ցիրաւի կրնամ տանիլ պանդխտի ցաւերուս, թող կարօտը սիրտս կրծէ. կը յիշեմ միշտ թէ գիւղէս ելած ատեն մայրս յորդ արցունք թափեց, պզտիկ քոյրս քղանցքէս բռնեց և ըսաւ, «Աստո՛մ, քեզ չպիտի թողում, դո՛ւն ալ պանդուխտ»։ Ո՜հ, ասոնք դառն են. բայց չէի կրնար եզան պէս մեր արտերն ակօսող գութանին լծուիլ և տգէտ մնալ։ Կ'զգայի թէ աշխար՝ նոր պահանջներ ունի, ինչպէս արհեստական լոյսեր կը վառին ամէն կողմ, նոյնպէս ուսմանց լոյսեր ալ կան։ Եւ ես պարտ էի ըսել. մնացէ՛ք բարով, հին ժամանակներ։

Արդ, Սրբազան Հայր, արտասուագին կ'աղաչեմ որ Ձեր բարձր հեղինակութեամբ պաշտպան կանգնիք ինձ և բանաք իմ առջեւ դպրոցի մը դռներն՝ որոց փեղկերուն վրայ կը թրթռան յոյսերս, Ձեզմով լինիմ ապագայ ուսեալ մարդ մի և երթամ մօրս արցունքը սրբեմ, քրոջս գիրկը նետուիմ, Ձեր հօտին մէկ ոչխարը լինիմ։

Ակնդէտ ըղձիցս կատարման
Մնամ Ձերդ Բարձր Սրբազնութեան

[Թուական] * * *

---

## 27. *Հօր մը նամակն հեռաւոր ծանօթի մը պաշտպանութեան յանձնարարել զիւր որդին։*

*Տէ՛ր,*

*Պատիւ ունիմ ծանուցանել Ձեզ թէ որդիս քաղաքիդ գործարաններէն միոյն մէջ պաշտօն ստանձնած է. ի բնէ հակում ունէր նա արուեստագէտ լինել, և ես չուզելով հակառակիլ իւր յօժարութեան, ուղարկեցի հոդ։ Սակայն որովհետեւ դեռ այնքան մատաղ է, և այն հասակի մէջ է՝ յորում դիւրաւ կը զեղծանի, ներկայիս հարկ կը համարիմ յանձնարարել զնա Ձեր խնամոց և պաշտպանութեան։ Ունիք դուք ևս սիրասուն որդիներ, հետեւաբար դուք և ձեր նմաններ կ'զգան խնդրանացս արժէքը։*

*Որդւոյս տեղեկացուցի թէ նա այլ ևս այդ տեղ ունի մէկն՝ որ հօր մը աչքով պիտի հսկէ իւր վրայ։ Այսուհետեւ մեծ բեռ մը ազատած կը համարիմ զանձնս, քանի որ կը դիմեմ առ Ձեզ։ Նա պիտի հնազանդի Ձեզ յամենայնի, և զՁեզ պիտի նկատէ իբրեւ իւր մենտորը. Նա կարօտ է Ձեր բարի խրատուց, և պարտաւոր է իւր ընթացից համարը տալ Ձեզ իբրեւ իւր հօրը։*

*Այսու երախտապարտ կը կացուցանէք զիս՝*
*Ձեր անձնուէր ծառայն*

[Թուական] * * *

### 28. Կարեւոր անձի մը պաշտպանութիւնը խնդրելու նամակ ։

*Ազնուաշուք Տէր .*

*Ձեր բարեսրտութիւն այնքան հռչակեալ է, զի վստահաբար կ'ուղղեմ ներկայս առ Ձեզ․ Ես խսկ խորապէս զգացած եմ Ձեր երախտիքն, որց յիշատակն այնքան դրուած է գիս, անմոռա՛ց յիշատակ ։ Ուրեմն թոյլ տուէք ինձ ուղղել իմ աղերսն առ Ձեզ, և Ձեր պաշտպանութիւնը հայցել։*

*Կ'ուզեմ* (պէտք է յայտնել խնդիրքն յստակօրէն եւ քիչ բառերով) *Ձեր շնորհներն և ես վայելել․ Ձեր հըզօր ազդեցութիւնն ինձ համար մեծ գրաւական մ'է թէ պիտի յաջողիմ խնդրանացս մէջ և թէ ընդհուպ ակնկալութիւններս պիտի պսակուին ։ Այսու կը հանդարտի մտահոգութիւնս ապագայիս համար․ այժմէն կ'ստանամ գոհացում իմ բոլոր փափաքանացս մասին և Ձեր պաշտպանութեան ապաւինելով կ'ունենամ վստահութիւն իմ բարւոք կացութեանս նկատմամբ ։*

*Պատիւ ունիմ լինել խորին մեծարանօք՝*

*Ձեր ամենախոնարհ և ամենահլու*

*ծառայ*

[Թուական] * * *

---

### 29. Որ եւ է յանձնարարական նամակ ։

*Սիրեցեալ Տէր ,*

*Չունիմ երկիւղ զեղծանելու Ձեր բարութեամբ, ներկայացնելով առ Ձեզ գրամատոյցս, Պարոն Թադէ–*

ու ։ Վաղուց ի վեր կը ճանաչեմ զինք ըստ ամենայնի վստահութեան արժանի անձ ։ Սակայն նա կարող չէ կենալ ճամբէն անցնիլ առանց պաշտպանութեան, և որովհետեւ զՁեզ կը ճանաչեմ դիւրապատրաստ ի պաշտպանութիւն, չեմ վարանիր առ Ձեզ յանձնարարել յիշեալն՝ որ կը փափաքի Ձեր ծառայութեան ներքեւ մտնել և անձնուիրաբար աշխատիլ առանց թերանալու իւր պարտուց մէջ, որք են ուղղութիւն, աշալրջութիւն և հաւատարմութիւն ։

· Ընդունեցէք ևայլն ։

[Թուական]

* * *

---

30․ Յանձնարարական նամակ ։

Տէ՛ր,

Ի՞նչ պիտի ըսէք ինձ համար․ դուք Ձեր բարութիւններին զգացուցիք ինձ օգտակարագոյն եղանակաւ ։ Գոգցես դուք միայն երախտագիտութեան զգացումներ կ՚ազդէք ինձ, և տակաւին պէ՞տք է որ ձանձրացնեմ զՁեզ ։ Ո՛չ, մի՛ կարծէք զիս բաւական համարձակ․ բայց ահա իրողութիւնն․ կորովի, մտացի և լաւ տաղեր սիրող երիտասարդ մը չգիտելով ի՞նչ ընելն՝ չեմ գիտեր ի՞նչպէս կը մտածէ գալ ներկայանալ ի Սիրէյ ։ Նա կը լսէ Ձեր վրայ խօսիլս, իմ պահապան հրեշտակին ։ «Ո՜հ, ո՛հ, կ՚ըսէ, քանի որ նա Ձեզ բարիք կ՚ընէ, ուրեմն ինձ ալ կ՚ընէ ։ Ինձ ի նպաստ գրեցէք նմա» ։ «Բայց, պարոն, մտածէ՛ որ չարաչար պիտի գործածեմ իւր բարեսրտութիւնն» ։ «Հէ՛յ ուրեմն,

*գործածէ՛, կ'ըսէ նա։ Բոլորովին նմա պիտի նուիրուիմ, ոչինչ կը խնդրեմ, անոր պիտի ծառայեմ յամենայնի։ Ժրաջան եմ, հլու եմ, յօգնութեան կը դիմանամ։ Վերջապէս, անոր համար ինձ նամակ մը տուր»։ Ես, որ բարեմիտ մէկն եմ, անոր կուտամ նամակ։ Նամակն առնելուն պէս շատ երջանիկ կը համարի զիւր անձ։ «Պիտի տեսնեմ....» կ'ըսէ։ Եւ ահա այս կորովի երիտասարդը Փարիզ կը վազէ։*

*Տէ՛ր, պատիւ ունիմ ուրեմն Ձեզ զեկուցանել զայդ։ Նա Ձեզ պիտի ներկայանայ գեղեցիկ դիմօք և չնչին յանձնարարականով մը։*

*Կը պաղատիմ Ձեզ. այս ձանձրութեանս համար ներեցէք ինձ. յանցանքն իմս չէ, չկրցայ դիմադրել Ձեր բարութիւնները գովելու հաճոյքին, և անցորդ մը ըսաւ. Ես ալ իմ բաժինս կուզեմ։*

[Թարգմ.]

---

## 31. Յանձնարարական նամակ գործաւորի մը համար։

*Տէր,*

*Գրամատոյցս է ժիր գործաւոր, որ իւր աշխատասիրութեան և յաջողակութեան փորձերը տուած է ինձ ամէն առթիւ։ Ուստի մասնաւորաբար կը յանձնեմ զնա Ձեզ։ Կրնաք գործածել զնա Ձեր հրամանին տակ և կամ այլուր յանձնարարել վստահաբար։*

[Թուական] * * *

---

## 32. Աղքատաց խնամակալութեան մը կողմէ հիւանդ մը յանձնարարել բժշկի մը։

*Ազնուասիրտ տէ՛ր,*

*Տնօրէն խորհուրդս երախտագիտութեամբ լի քանիցս վայելած է Ձեր աջակցութիւն յօգուտ աղքատ հիւանդաց․ դուք իբրեւ բարեկամ, իբրեւ հայր մօտենալով հիւանդին անկողնոյն քով, անդ յոյս ցոլացուցած էք։*

*Արդ կը փութամք դարձեալ Ձեր բարեսրտութեան դիմել և խնդրել որ ..... թաղէն* (այս անուն) *հիւանդն բարեհաճիք դարմանել։ Ձեր այցելութիւն մեծ սփոփանք պիտի մատուցանեն սոյն հիւանդին՝ որ Ձեր խնամոց յանձնարարուելու արժանի է ամէն կերպիւ։ Մարդասիրութիւնը Ձեր բնածին ձիրքն է, հետեւաբար հարկ չենք տեսներ երկարօրէն յորդորներ կարդալ առ Ձեզ, ըստ որում դուք Ձեր ազնուութեամբ նուիրական պարտք կը նկատէք օգնել աղքատին, եւ Ձեր ճարտարութեան նոր նոր առհաւատչեայ ընծայել։*

*Վստահ եղէք թէ ի վարձ Ձեր բարեգործութեանց պիտի ընդունիք աղքատաց օրհնութիւններ, ոյց կը կցենք մեր խորին շնորհակալութիւններն։*

*Ատենադպիր* *Ատենապետ*

[Թուական] *** ***

## 33 . Այլ յանձնարարական ։

*Տէ՛ր ,*

*Ամենամեծ վստահութեամբ Ձեր ուշադրութիւնը կը հրաւիրեմ այն խնդրոյ մասին՝ որոյ նկատմամբ խօսած եմ Ձեզ ։ Ձեր խօսքն ինձ համար մեծ կշիռ ունի , և գերազանց կարևորութիւն ։*

*Ուստի կը խնդրեմ որ բարեհաճիք ի նպաստ ինձ խօսիլ առ . . . , որով իմ գործն շատ պիտի յաջողի եւ Ձեր շնորհիւ պիտի արժանանամ լաւագոյն դիրք մը շահելու ։*

*Կը յուսամ, Տէր , թէ քաղցր ակնարկութեամբ կը նայիք խնդրոյս , և այս յուսով կը մնամ Ձեզ*

*Շնորհապարտ բարեկամ և ծառայ*

[Թուական] * * *

---

## 34 . Վաճառատան մը մէջ պաշտօն խնդրել ։

*Տէ՛ր ,*

*Պատիւ ունիմ խնդրել ի Ձէնջ հաշուակալի պաշտօն մը Ձեր վաճառատանց մէջ ։ Գիտեմ տօմարակալութիւն ըստ բաւականին՝ Ձեր հրամանին ներքեւ գործելու համար ։*

*Տէր , պարտիմ ըսել Ձեզ թէ Պ . . . կատարեալ վըստահութեամբ կը յանձնարարէ զիս առ Ձեզ ։ Եւ եթէ հաճիք ընդունել զիս Ձեր գրասենեակներուն մէջ , ամենայն անձնուիրութեամբ աշխատող մի պիտի ու-*

Նենաք Ձեր տրամադրութեան ներքեւ, արժանի Ձեր պաշտպանութեան և շնորհաց։

Պատիւ ունիմ լինել, Տէր, Ձեր յոյժ խոնարհ

Ծառայ

[Թուական] * * *

---

## ԸՆԴԼԱՅՆԵԼԻ ՆԻՒԹՔ

1. **Շնորհակալութիւն առ բարերար մը.** — Ներեցէք ինձ, եթէ չկարենամ յայտնել ամբողջ երախտագիտութիւնս Ձեր բարեաց փոխարէն։ Քաղցր է ինձ հաստատել թէ դուք Ձեր ազնիւ սրտին անսացիք այս գործը կատարելով։ Ձեր յիշատակը սրտիս մէջ անջինջ պիտի մնայ. — Վերջաւորութիւն։

2. **Շնորհակալութիւն առ բարերար մը.** — Մ.ր բարեկամն յաճախ իւր օժանդակութիւնը նուիրած է մեզ եւ զմեզ շատ առիթներով երախտապարտ կացուցած է իրեն. այժմ դարձեալ տեսնելով մի նոր ապացոյցն իւր բարեկամութեան՝ մեր խորին շնորհակալութիւններն կը յայտնեմք նմա։

3. **Շնորհակալութիւն.** — Մատաղ օրիորդ մը, որուն եղբայրը վաճառատան մը մէջ ընդունուած է, կը գրէ տիկնոջ մը՝ որ զանի պաշտպանած է, եւ շնորհակալութիւն կը մատուցանէ նոյն տիկնոջ յանուն բոլոր ընտանեաց։

4. **Շնորհաւորութիւն առ բարեկամ մը.** — Ի՞նչ ուրախութեամբ իմացայ ամուսնութեանդ լուրը. Լուրջ եւ բարեմիտ կնոջ մը գորովանօք պիտի թեթեւնան վշտերդ եւ պիտի աւելնան ուրախութիւնքդ։ — Դրուատիք իւր յաջող ընտրութեան համար, եւն։

5. **Շնորհաւորութիւն.** — Մեր բարեկամն առեւտրական մեծ յաջողութիւն ունեցած է. մեր խնդակցութիւնը կը յայտնեմք եւ կը մաղթեմք մի եւ նոյն ժամանակ, զի միշտ այսպէս թռչի յաջողութենէ յաջողութիւն։

6. **Շնորհաւորութիւն.** — Մեր ընկերուհին ծանր հիւանդութենէ մ՚ազատած է. կը շնորհաւորեմք նորա ապաքինումն եւ կը հրաւիրեմք զնա՝ որ այս տարի գիւղագնացութեան տանն մեր մօտ գայ, որպէս զի ի միասին ուրախանամք։

7. **Շնորհաւորութիւն.** — Կ'իմացնեմք դպրոցականի մը թէ մեծ ուրախութեամբ տեղեկացանք նորա յաջող քննութիւններ անցունելը։ Աշխատութիւնն այսպէս կը վարձատրուի եւ կը փառաւորուի։ Ուրախակից եմք իւր այս յաջողութեան համար։

8. **Ցաւակցական նամակ առ հայր մը.** — Հէք հայրը կորսնցուցած է որդի մը լի արժանեօք, տաղանդով, առաքինութեամբ։ Կը ցաւակցիմք նմա. անոր արտասուաց կը խառնեմք մեր արտօսրը։ Ամէն ոք ցաւած է այսպիսի դժնդակ կորստեան մը համար։ Այս ընդհանուր համակրութիւնն իցի՛ւ չափաւորէ թըշուառ հօր վիշտը։

9. **Ցաւակցական նամակ առ այրի կին մը.** — Ամենէն դժնդակ հարուածը կը կրէք, տիկին, այս կորստեամբ. իբրեւ մայր կը կորսնցնէք ամենէն ապահով նեցուկ ձեր որդւոց։ Սփոփուեցէք սակայն, մտածելով թէ Երկնային կամաց հպատակիլ ա՛նկ է ձեզ նման առաքինի կնոջ։

10. **Քրոջ մը մահուան համար ցաւակցական նամակ.** — Մեր բարեկամին, որ կորսնցուցած է քոյր մը, զգացած վիշտն զմեզ կը յուզէ խորին։ Օրիորդն էր չքնաղաձիր, բոլոր աշխարհի մեծարանաց արժանի։ Մեզ եւս դառն է գրել այս նիւթին համար մեր բարեկամին եւ աւելի պիտի սիրէինք լռել, եթէ մեր լըռութիւն անտարբերութեան նշան մը չերեւէր։

11. **Ցաւակցութիւն.** — Իւր ընտանիքէն հեռացած բարեկամուհւոյ մը ուղղեալ նամակ։ — Այս բարեկամուհին, որ մի քանի ամիս առաջ եղբայր մը կորսնցուցած էր, այժմ եւս կը կորսնցնէ հայրը։ — Անոր համար անմիջապէս չգրեցինք, որպէս զի իւր սիրտն շուտով չախրեցնենք։ — Իւր մօրը նկատմամբ լուրեր։ — Կը ցաւինք որ այս դժնդակ պարագային մէջ իրեն մօտ չեմք։ — Սփոփանք։

12. **Ցաւակցութիւն.** — Որդի մը իւր հայրը կորսնցուցած է. կը յայտնեմք նմա մեր ցաւակցութիւն, եւ կըսեմք թէ հանգուցեալը կը թողու իւր որդւոյն ի ժառանգութիւն առաքինութիւններ եւ բարի օրինակներ, որք էական ստացուածք են. եւ իբրեւ ի սփոփանս՝ քրիստոնէի մը կենցաղն եւ գեղեցիկ մահ մը։ Կը մաղթէք որդւոյն՝ հօրը կենաց նման չքնաղ կեանք մը։

13. **Յանձնարարական.** — Շրջանաւարտ օրիորդի մը նամակն առ տիկին ոք՝ որ կը բնակի հեռուն։ — Օրիորդը կը փափաքի դպրոցի մէջ պաշտօն ստանձնել. — ըստ որում որբուհի մ'է, որոշած է աշխատիլ։

14. **Յանձնարարական.** — *Մեր մի բարեկամն կ'ուղեւորի ի Պրուսա. անդ կը ճանչնամք մէկն՝ ում կը յանձնարարեմք մեր բարեկամն եւ կը խնդրեմք որ ի հարկին իւր որեւէ աջակցութիւն նուիրէ մեր այս բարեկամին։*

15. **Յանձնարարական.** — *Մեր մի բարեկամին ջերմապէս կը յանձնարարեմք երիտասարդ մը, որ գործ կը խնդրէ։ — Այս երիտասարդն մեզ ծանօթ է իւր անձնուէր գործունէութեամբ. մտացի է եւ բարեհամբոյր։ — Եթէ անկարելի ըլլայ գործ մը գտնել, վստահ եմք թէ մեր բարեկամն կը ջանայ ծանօթացնել յանձնարարեալն ուրիշ վաճառատանց։*

# Գ Լ Ո Ւ Խ Գ.

## ԱՌԵՒՏՐԱԿԱՆ, ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ԵՒ ԴՐԱՄ ԽՆԴՐԵԼՈՒ ՆԱՄԱԿՆԵՐ

**Դիտողութիւն.** — Ըստ որում բնական հետեւութեամբ հարկ կը լինի գործի եւ առեւտրոյ վերաբերեալ նամակներ գրել, երբ առանձին ստորագրութեամբ մուրհակներ, հասարակ պարտամուրհակներ, վաճառականական մուրհակներ, փոխանակագրեր, համերաշխ յանձնառութեանց գրեր, յանձնեալ վաճառաց ցուցակներ, եւայլն գրուին եւ ստորագրուին, եւ ըստ որում այդ յանձնառութիւնք յաճախ տեղի կուտան բազում վիճմանց, հակառակութեանց, մերժմանց, յանդիմանութեանց. աստի յառաջ եկած է գործի եւ առեւտրոյ թղթակցութիւնն, կամ դժուարութիւններ բառնալու, մեկնութիւններ տալու, ճահեր պատսպարելու համար եւ կամ զայնս օրէնքի մարդոց եւ ատեաններու յանձնելու։ Ուրեմն բանաւոր կը կարծեմք այն զանազան նամակներէն վերջ՝ որոց վրայ տեղեկութիւն տուինք, մեր կողմանէ այս նոր նամակաց

օrինակնեrը դնել, վասն զի սօfա cաs անգամ ծագում կուsան միuնեrուն։

Այս sեսակ նամակներ ընդհանrապէս բոլorովին ի բաց կը մեrժեն եrեւակայութեան եւ մsfի նիզ ։ կաrելի եղածին չափ համառօsութիւն եւ յօsակութիւն մանաւանդ առեւsrական նամականւոյ համաr. Սակայն պաrզ գrել ուզելով՝ սsօrին ոնով մի՛ գrէf։

---

## 1. Շրջաբերական ։

Կ. Պօլիս 1/13 Յունուար 1893

Տ.

Պատիւ ունիմ ծանուցանել Ձեզ թէ քաղաքիս մէջ առեւտրական տուն մի հաստատած եմ ընդ անուամբ

Կ. ԱՍԱՏՈՒՐԵԱՆ

որ պիտի զբաղի՝ ամէն տեսակ վաճառաց արտածութեան և ներածութեան, փոխանակագրոց միջնորդութեան ու յանձնարարութեան գործերով։

Հաճեցէք, Տ. ծանօթանալ մեր ստորագրութեան, որ ի ստորեւ, և ընդունիլ մեր խորին յարգանաց հաւաստիքն։

ԿՈՊԵՐՆԻԿ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ

---

## 2. Վարկագիր ։

Կ. Պօլիս 20 Փետր. 1893

Տ.

Վիէննա

Պատիւ ունիմ Ձեզ յանձնարարել գրամատոյցս

Գ. ..........................., որուն կրնաք մինչեւ 1000 Օսմ. ոսկի վճարել, փոխարէնն իմ հաշուայս անցունելով։

Գ..... Ձեզ պիտի տայ առած գումարներուն դէմ երկերկու օրինակով ընկալագիր, որոց մի օրինակն Ձեր քով պիտի մնայ, իսկ միւսն ինձ պիտի ղրկէք։

* * *

Ահաւասիկ Գ. ի ստորագրութիւնը։

---

3. Վաճառf խrկեյ։

Տրապիզոն, 1 Յունուար 1893

Մեծարգոյ Տ...

ի Կ. Պոլիս

Պատիւ ունիմ ծանուցանել Ձեզ որ այսօր մեկնող Բաղմա շոգենաւով յուղարկեցինք Ձեր ապսպրած 200 պարկ լուբիա։ Ներփակեալ կը գտնէք անոնց բեռնագիրն և հաշուեգիրն, որոց գումարն է 400 Օսմ. ոսկի. — զոր յետ քննութեան հաճեցէք անցունել մեր պահանջքին Յունուար 31։

Յոյս ունիմ որ գոհ պիտի ըլլաք յիշեալ ապրանաց թէ՛ տեսակէն, թէ՛ գնոց աժանութենէն և թէ՛ ծախուց չափաւորութենէն, և պիտի հաճիք ի մօտոյ նորանոր հրամաններ ղրկել մեզ, զորս պիտի ջանամք ձեզ նպաստաւոր կերպիւ կատարելու։

Հաճեցէք, Տէր, ընդունիլ մեր յարգանքներն։

* * *

---

4. *Ստացագիր*։

*Ստորագրեալս կը յայտարարեմ որ ստացայ* ............ *է*, 50 *ոսկի Օսմ*., *ի հաշիւ* 20 *պարսկական գործերու*, *զորս իրեն ծախած եմ թուականէս* 25 *օր յետոյ յանձնելու պայմանաւ*։

*Կ. Պոլիս* 25 *Յուլիս* 1892

* * *

---

5. *Բ. Օրինակ Ստացագրի*։

*Ստացայ Տ.* ............ *է* 100 *լիրա Օսմանեան Պ.* ............*ի հրամանաւն և անոր հաշուոյն համար*։

*Կ. Պոլիս* 15 *Օգոստ.* 1891

* * *

---

6. *Փոխանակագիր*։

*Կ. Պոլիս* 10 *Սեպտ.* 1890

Փ. Վ. Լ. Օ. [redacted]

*Թուականէս երեսուն և մէկ օր յետոյ*, *վճարեցէք այս միակ փոխանակագրով Տ. Պէրպէրեանի հրամանին* հազար չորս հարիւր լիրա Օսմանեան, *արժէքը կանխիկ ընդունած եմ*, *և անցուցէք ի հաշիւ ըստ ծանուցման*։

Ս. ՄԱՆՈՒԷԼԵԱՆ

*Առ Տ. Գ. Մըսըրեան*

*ի Կարին*

---

### 7. *Մուրհակ։*

*Կ. Պոլիս*, 20 *Յուլիս* 1890 Մ. Վ. Լ. Օ. 100

*Թուականէս երեսուն և մէկ օր յետոյ, պարտիմ վճարել ի հրաման Յ. Մանիկեանի,* հարիւր լիրա Օսմանեան, *արժէքն ապրանքով ընդունած եմ։*

Ա. ԱՌԱՔԵԼԵԱՆ

---

### 8. *Բաց Մուրհակ։*

*Թուականէս երեսուն և մէկ օր յետոյ, այս թուղթըս ներկայացնողին (կամ բերողին) պարտիմ վճարել* երկու հարիւր լիրա Օսմանեան։

*Կ. Պոլիս*, 5 *մայիս* 1892

Ս. ԵՐԱՄԵԱՆ

**Լ. Օ. 200**

---

### 9. *Հրամանագիր։*

*Կ. Պոլիս*, 30 *Հոկտ.* 1890 Հ. Վ. Լ. Օ. 250

*Յառաջիկայ դեկտ. 30ին. վճարեցէք այս հրամանագրովս, Տ. Գրիգոր Տիլպէրեանի հրամանին,* երկու հարիւր յիսուն լիրա Օսմանեան. *արժէքն կանխիկ ընդունած եմ, և անցուցէք ի հաշիւ ըստ ծանուցման։*

Ա. ՋԱՍՊԱՐ

*Առ Տ. Սարոյեան ի Տփղիս։*

---

### 10. Դրամ խնդրել.

Տէ՛ր,

*Մինչեւ երէկ հաշուած էի թէ դրամական վիճակս պիտի ներէր լաւ վճարում մ'ընել Խնայողական Սընտուկին՝ յորմէ կարեւոր գումար մը փոխ առած եմ Պատէմլիքի տանս համար։ Արդ անհնարութեան մատնուելով վճարումս կատարելու մասին, կ'աղաչեմ որ …… Օսմ. ոսկի բարեհաճիք վճարել ինձ։ Վստահ եղէք թէ ներկայ ամսոյս մէջ կը վճարեմ զայն։*

*Վայրկեան մը չեմ տարակուսիր թէ կը յօժարիք ինձ ծառայութիւն մը մատուցանել, ուստի կը մնամ կանխաւ Ձեզ երախտապարտ։*

[Թուական] ***

---

### 11. Ժխտական պատասխան.

*Սիրելի բարեկամ,*

*Կը ցաւիմ յոյժ մերժելով Ձեր յինէն խնդրած ծառայութիւն։ Այս պահուն գործ ունիմ այնպիսի անձերու հետ, որք ինձ չեն կրնար վճարել պահանջքներըս, և հազիւ այժմու վիճակս կը ներէ օրական ծախուցս։*

*Հաւատացէք իմ մորմոքանացս և անկեղծ բարեկամութեանս։*

[Թուական] ***

---

### 12. Նպաստաւոր պատասխան ։

*Սիրելի բարեկամ,*

*Մեծ հաճոյքով կը կատարեմ Ձեր խնդիրքն ։ Գիտցէք թէ երջանիկ կ'զգամ զանձս Ձեզ որեւէ ծառայութիւն մը մատուցանելուս ։*

*Կրնաք վստահիլ բարեկամութեանս ։ Վաղիւ հաճեցէք ներկայանալ գրասենեակս, ուր պատրաստ է որոշեալ դրամն Ձեր տրամադրութեան ներքեւ ։*

[Թուական] * * *

---

### 13. Բարեկամէ մը փոխառութիւն ։

*Սիրելի՛ բարեկամ իմ,*

*Ներկայիս կը խնդրեմ Ձենէ ծառայութիւն մը. առ Ձեզ կը դիմեմ, որովհետեւ կը ճանչնամ զՁեզ իբրեւ բարեկամացս ամենէն անձնուէրը ։*

*Այս պահուն քիչ մը դրամական տագնապ կը կրեմ. այն վարչութիւն՝ որոյ ներքեւ կը ծառայեմ, այս անգամ իւր վճարումներն օրաձգեց ։ Կը խնդրեմ Ձենէ ինձ փոխ տալ ......................... դրամ, զոր ամսաթոշակս ստանալուս առ Ձեզ կը վերադարձնեմ ։*

*Կրնա՞ք ինձ այս ծառայութիւնը մատուցանել ։ Եթէ այո՛, ապահով եմ որ այսու կ'ընծայէք ինձ Ձեր բարեկամութեան նոր նշան մը ։*

*Ձեզ երախտագէտ*

[Թուական] * * *

---

## 14. Կնոջ մը նամակն առ իւր ամուսին, շալ խնդրելու համար։

Սիրելի՛ ամուսինս,

Ո՛րչափ ժամանակէ ի վեր մեկնած ես աստի։ Ցիրաւի ես շատ երկար կը գտնեմ զայն առանց քեզ։ Նոյն իսկ մտահոգութեան մէջ եմ, չստանալով քեզ նկատմամբ լուրեր։

Թէպէտև հեռի ի քէն, բայց միշտ մտօք կը հետեւիմ քեզ։ Գրէ՛ ինձ շուտ թէ որպիսութիւնդ լաւ է, և թէ ինձ քիչ մը դրամ խրկէ՛։

Գիտես արդէն թէ վճարմունքդ հազիւ կը բաւեն մինչեւ այս ամսոյ վերջ մեր որդւոց պէտքերուն եւ տան համար։

Կը յուսամ թէ ընդհուպ կը պատասխանես ինձ։ Կ'ողջագուրեմ զքեզ հանդերձ շնորհակալութեամբ։

[Թուական] ***

---

## 15. Գիշերօթիկ աշակերտ մը առ իւր հայրն, դրամ խնդրելու համար։

Գորովագո՛ւթ հայր իմ,

Քառամսեայ քննութիւնն յաջող անցուցի։ Ներփակեալ վիճակացոյցս կը հաստատէ խօսքիս ճշմարտութիւնը։ Շատ լաւ է վիճակս։ Հոս ամէն բանէ գոհ եմ. դասատուներս ալ ինձմէ գոհ կ'երեւին։ Միւսիւ Գ...ի դասերուն ամենէն աւելի կը հետեւիմ, առանց

սակայն միւս դասերուս մէջ թերանալու։ Ո՛հ, մեծ փափաքս է բժիշկ ըլլալ, և մեր քաղաքին մէջ ծառայել։ Հոս ի Պօլիս բժիշկներ շատ կան, մինչդեռ մեր քաղաքին մէջ հազուագիւտ են։

Սիրելի հայր իմ, անցեալ օր Տնօրէն էֆէնտին իւր սենեակը կանչեց զիս և քաղցրութեամբ յիշեցուց դըպրոցին օրէնքը վճարմանց մասին։ Ես ալ խոստացայ գրել Ձեզ։ Կ'աղաչեմ շուտ ղրկէք այս տարեկանը։ Շատ անհանգիստ եմ այս մասին։ Ղրկեցէք ի Պօլիս Գ. Սարգսի. ես անկէ կ'երթամ կ'առնում։

Շուտ պատասխանեցէք նամակիս։

Կը համբուրեմ Ձեր և քաղցրիկ մօրս ձեռքերը, եղբայրներուս և քոյրերուս աչքերը։

Ձեր հնազանդ որդին

[Թուական] * * *

---

16. Նամակ առ տանուտէր ոք՝ տանը վարձքը վճարելն յապաղելու մասին։

Տէ՛ր,

Պատիւ ունիմ խնդրել ի Ձէնջ յերկարաձգում տանը վարձքը վճարելու մասին։

Գիտէք թէ նիւթական անձկութիւն մը ունինք. աշխատութիւննիս դադրած է, և կինս և որդիքս չեն քաջառողջ։ Մինչև ցարդ խղճամիտ ճշդութեամբ վըճարած եմ Ձեզ, և վստահ եղէք թէ պիտի շարունակեմ այնպէս, եթէ հաճիք ինձ տալ պայմանաժամ մը։

Յարգանօք

[Թուական] * * *

---

17 · Նամակ առ տանուտէր մը՝ խնդրելու համար անկէ վարձելու դաշնագրին երկարաձգումը։

Տէ՛ր,

Մեր վարձած տան պայմանաժամը ներկայիս կը լրանայ, և այժմ հարկ է ինձ գիտնալ թէ յետ այսօրիկ ևս կը հաճի՞ք տան պայմանաժամը նորոգել։ Ես կը փափաքիմ երկարաձգել պայմանաժամն միևնոյն պայմաններով։

Չեմ տարակուսիր թէ կ'ընդունիք մեր խնդիրքն ի նկատ առնլով մեր բարւոք յարաբերութիւններ։ Սակայն կ'աղաչեմ որ վաղ ընդ փոյթ պատասխանէք ինձ, վասն զի եթէ այլ նկատումներ ունիք, կ'ուզեմ կանուխէն ինձ տեղ գտնել։

Հաճեցէք ընդունիլ յարգանքներս։

[Թուական] * * *

---

18 · Նամակ առ տանուտէր մը վարձակալի մը կողմէ անոր տունէն ելնելու առթիւ։

Տէ՛ր,

Անակնկալ պարագայ մի կ'ստիպէ զմեզ թողուլ Ձեր տունը։

Չեմ կարծեր որ մեր ելնելովը Ձեզ մեծ վնաս պատճառէ, որովհետև մեր կողմերը հետզհետէ յարգ կը ստանան և տանց գիները կ'աւելնան, և չեմ տարա-

*կուսիր թէ անմիջապէս նոր վարձակալ մի պիտի գըտնէք։*

*Նոյնպէս համոզուած եմ թէ կը հաւանիք խնդրանացս. մեր բարուք յարաբերութիւնները առ այս երաշխիք են ինձ։*

*Ձեր պատասխանին սպասելով, Տէր, պատիւ ունիմ զՁեզ ողջունել խորին յարգանօք՝*

[Թուական] ***

---

## 19. Գործ խնդրել։

*Սիրեցեալ բարեկամ իմ,*

*Համարձակութիւն ունիմ այս պահուն խնդրել ի Ձէնջ օգնութիւն մի։ Կը դիմեմ առ Ձեզ, զի բարեհաճիք Ձեր վարչութեան ներքեւ առնուլ զիս։ Ապահով եղէք թէ պաշտօնս ո՛րքան խոնարհ լինի, զիս պիտի ուրախացնէ և յետ այսորիկ պիտի նկատեմ զՁեզ ինձ բարերար։*

*Ընդունեցէք նախ և առաջ բարեկամի մը շնորհակալութիւններն։*

[Թուական] ***

---

## 20. Վարձակալի մը նամակն՝ որ ժամանակ կը խնդրէ իւր տանուտէրէն։

*Տէ՛ր,*

*Գիտէք թէ այս տարի մեր ցորեններն կորսուեցան դէշ եղանակներու պատճառաւ։ Այսու չկրցայ վը-*

ճարել որև է գումար պարտուցս համար։ Երախտապարտ պիտի լինիմ Ձեզ, եթէ հաճիք երկարել պայմանաժամն։ Վճարմանց մասին ունեցած ճշգապահութիւնս ինձ յոյս կուտայ թէ պիտի հաճիք իմ խնդիրքս չմերժել։

Եմ Ձեր ամենահնազանդ և ամենախոնարհ ծառայ։

[Թուական] * * *

---

21. Այլ նամակ վարձակալի առ իւր տանուտէրն՝ մեծ աղէտէ մ՚յետոյ։

Տէ՛ր,

Սոսկալի ուրական մը երէկ քիչ ժամանակի մէջ աւերեց մեր գաւառներն։ Նա անցաւ իբրեւ իրական թաթառ մը, և ջրով ծածկեց, տապալեց տուներ, պտղատու ծառեր, և հողն բոլորովին տակնուվրայ ըրաւ։ Այլ ևս հունձք չէ մնացած. և այս այնքան արագահաս եղաւ, որ չկրցանք ազատել արջառներն։ Ագարակին պատերը ամէն կողմէ փլած են. հարկ է ի հիմանէ նորոգութիւն։ Մեր կարասին ամբողջովին կորսուած է։ Վերջապէս ընդհանուր աւեր մը։

Լսած էք անշուշտ այս մեծ աղէտքն, որուն զոհն որպէս մենք, նոյնպէս դուք էք. որովհետեւ այս արկածը կը խլէ յինէն ամէն հարստութիւն։ Սակայն և այնպէս, ամէն հարստութենէ զուրկ, որ իմ աշխատութեանս պտուղն էր, կը յուսամ վերստին շահել զայն, վստահելով Ձեր բարեսրտութեան վրայ։

Այս յուսով պատիւ ունիմ լինել Ձեր երախտագէտ վարձակալն։

[Թուական] * * *

### 22. Նամակ հիւսնի մը առ տանուտէր մը իւր պահանջքի մասին։

*Տէ՛ր։*

*Հակառակ անխոնջ աշխատութեանս, ահա երեք ամիսներ անցան, յորմէհետէ որեւէ գումար չեմ ընդունած Ձենէ․ ինքնին կրնաք հասկնալ թէ քանի՜ դժուարին է ինծ սպասել օրականներուս գանձման համար։*

*Կ'աղաչեմ որ ի վերջ եօթնեկիս հաճիք վճարել ինծ առնելիքիս գէթ կէսն։ Մնացորդն կրնաք ուշացնել քիչ մը ատենի համար։*

[Թուական] ⁂

---

### 23. Նամակ առ փաստաբան մը։

*Տ․*

*Կը հաճի՞ք ստանձնել այն գործն՝ որ ինծ համար յոյժ կարեւորութիւն ունի։ Ձեր վայելած գերազանց համբաւը կ'ստիպէ զիս դիմել առ Ձեզ* (կարճ ի կարճոյ եւ յստակօրէն յայտնել խնդիրն)։ *Անշուշտ պիտի հաճիք ստանձնել այս գործն, ուստի կ'աղաչեմ Ձեզ տեղեկացնել ինծ թէ ի՛նչ պարտիմ վճարել Ձեզ, և թէ ի՛նչ ձեւ պարտիմ տալ Ձեր փոխանորդագրին համար։ Հաճեցէք նոյնպէս ինծ ըսել թէ նախնական ծախուց համար ո՛րչափ դրամ պէտք է վճարել։*

*Խորին մեծարանօք*

[Թուական] ⁂

---

## 24. Նամակ առ տնօրէն հրդեհի ապահովագրութեանց։

*Տէ՛ր,*

*Ձեզ՝ իբրեւ ներկայացուցչի ապահովագրական .... ընկերութեան՝ կը փութամ ծանուցանել այն արկածն՝ ուր զոհ գնաց տունս։*

(Կարճ ի կարճոյ եւ յստակօրէն պատմել պատահարը, իւր մանրամասնութիւններն, եւայլն։)

*Նամակիս կը կցեմ Թաղապետութեան վկայագիրն՝ որ կը հաստատէ թէ մեր տունէն չէ ծագած հրդեհը։ Իմ ապահովութեանս մուրհակը* (ըսէ՛ մուրհակին թիւը եւ ամսաթիւը) *կ'ապահովէ ինձ* 200 *ոսկի Օսմ.։*

*Գործակալն, զոր պիտի հաճիք անտարակոյս յղել առ իս, պիտի բերէ ինձ ի հարկէ վերոյգրեալ գումարն։*

*Ձեր հնազանդ ծառայն.*

[Թուական] * * *

---

## 25. Վաճառք խնդրել։

*Տէ՛ր,*

*Ներկայս ընդունելնուդ պէս հաճեցէք երկաթուղեաւ խրկել հետեւեալ ապրանքներն՝*

...............................................................................................

...............................................................................................

...............................................................................................

...............................................................................................

*Վստահ եմ թէ այն զանազան ապրանքներու մա—*

*պին լաւ ընտրութիւն պիտի ընէք և այնպէս ծրարէք զանոնք ։*

*Ընդունեցէք, Տէր, մեր ողջոյններն ։*

[Թուական] * * *

---

## 26. *Ապրանք խրկելն ծանուցանել ։*

*Տէ՛ր ,*

*Պատիւ ունիմ Ձեզ իմացնել թէ Ադրիանուպօլսոյ երկաթուղիով կը յղեմ առ Ձեզ Ձեր խնդրած մի քանի տեսակ ապրանքներ, որոց ցուցակն ներփակեալ կը գտնէք ։*

*Ձեր ընդունելէն յետոյ հաճեցէք հաշիւները կարգադրել մինչեւ ներկայ ամսոյս վերջ ։*

*Ընդունեցէք, Տէր, մեր խորին յարգանքներն ։*

[Թուական] * * *

---

## 27. *Դրամ վճարել հրամայել ուրիշի մը ։*

*Տէ՛ր ,*

*Կը համարձակիմ Ձեզ ներկայացնել գրամատոյցս, Գ. Պետրոս Առաքելեան, որ Մարսիլիոյ ճամբով Զմիւռնիա պիտի երթայ, ուր հաւանականաբար քիչ մ'ատեն պիտի մնայ՝ մինչև որ գործերը կարգադրէ ։*

*Եթէ Գ. Պետրոս դրամի պէտք ունենայ, Ձեզ կը թոյլատրեմ իմ հաշւոյս, և Ձեր ծախքերը հանելէ վերջ մինչեւ 2000 Ֆրանք տալ իրեն, որոյ փոխարէն*

*տեսօրէն երկու օր վերջը վճարելի իմ վրաս փոխանակագիր քաշել հաճեցէք։*

*Ընդունեցէք կանխաւ շնորհակալիքս։*

*Ձեր անձնուէր ծառայն։*

[Թուական] * * *

---

### 28· *Պատասխան վերոյգրելոյն։*

*Տէ՛ր,*

*Անցեալ ամսոյ ... ին մեր նամակը հաստատելով, պատիւ ունիմք Ձեզ իմացնել թէ Պ. Պետրոս Առաքելեան երէկ մեր գրասենեակը եկաւ, և 2500 Փր. վճարեցինք իրեն, մեր ծախքերն հանելէ վերջ, ի հաշիւ այն վարկին, զոր իրեն համար բացած էք մեր վրայ։*

*Ներփակեալ Ձեզ կը ղրկեմք Պ. Առաքելեանի ընկալագիրն, և միանգամայն Ձեզ կ'իմացնեմք թէ յիշեալ գումարին համար տեսօրէն տասն օր վերջը վճարելի փոխանակագիր քաշեցինք Ձեր վրայ։*

*Հաճեցէք ընդունիլ զմեզ Ձեր անձնուէր ծառայն։*

[Թուական] * * *

---

### 29· *Ընկերութեան մը մասին կարծիք հարցունել։*

*Տեա՛րք,*

*Ձեզի երախտապարտ պիտի ըլլայինք, եթէ հաճէիք թղթաբերին վերադարձին հաղորդել մեզ Ձեր կարծիքն պատուաւորութեան մասին այն ընկերութեան՝*

ոյր անունն պիտի գտնէք առկցեալ թուղթին վրայ։

Այս տան հետ մեծ գործ մ՚ընելու վրայ եմք, եւ կը փափաքիմք գիտնալ թէ մինչեւ ո՛ր աստիճան ապահովութեամբ կարելի է գործել։ Վստահ եղէք թէ ինչ որ պիտի հաճիք հաղորդել մեզ այս մասին՝ մեր մէջ պիտի մնայ։

Յարմար առթիւ պիտի փութամք նմանօրինակ ծառայութիւն մը մատուցանել Ձեզ։

Ընդունեցէք, Տեարք, մեր յարգալից բարեւներն։

[Թուական] * * *

---

## 30․ Վաճառական մը պատուաւորութեան մասին վարանոտ պատասխան տայ։

Տեա՛րք,

Կը ցաւիմք որ Ձեր... պատուականին մէջ խնդրոյ նիւթ եղող տան մասին ստոյգ տեղեկութիւններ չը պիտի կարենամք հաղորդել Ձեզ։ Երկար ատենէ ի վեր այդ պարոններուն հետ գործելու առիթ չեմք ունեցած։ Եթէ հրապարակին վրայ շրջող զրոյցներու նայինք, վերջերս վտանգաւոր գործառնութեանց մէջ նետուեր են, որոնք համեմատական չեն իրենց կարողութեան հետ։ Միւս կողմէն՝ մենք անձամբ գիտեմք թէ միշտ կանոնաւոր եղած են իրենց վճարմանց մէջ։ Կը հետեւի թէ կը վարանիմք զՁեզ յորդորելու կամ ըզգուշացնելու անոնց հետ գործ ընելու։

Յուսալով որ ուրիշ առթիւ աւելի օգտակար կըրնամք ըլլալ Ձեզ, մնամք, Տեարք, Ձեր անձնուէր ծառաներն։

[Թուական] * * *

---

### 31 · Անձի մը նկատմամբ լաւ խօսիլ ։

*Տէ՛ր ,*

*Ի պատասխանի Ձեր ամսոյս ...ի պատուականին , ուրախ եմ կարենալ Ձեզ իմացնելուս թէ Գ... աստ հաստատեալ հինգ տարիէ ի վեր , մեր հրապարակին վրայ ընդհանուր յարգանք և վստահութիւն կը վայելէ , և թէ ես յօժարակամ պիտի տայի իրեն աւելի երկար ու մեծ վարկ մը քան զայն՝ զոր Ձեզմէ կը խնդրէ ։ Լուրջ և պարտաճանաչ մարդ մը ճանչցուած է , և ցայսօր ըրած բոլոր գործառնութիւններն՝ խելացի և բաւական աղէկ վիճակի տէր վաճառական մը ըլլալը կ'ապացուցանեն ։*

*Այս տեղեկութիւններն ուղածնուդ պէս գործածեցէք , և հաւատացէք զիս , տէր և բարեկամ , Ձեր անձնուէր ծառայն ։*

[Թուական] ***

---

### 32 · Անձի մը նկատմամբ տեղեկութիւն խնդրել ։

*Տէ՛ր ,*

*Վստահ միանգամայն Ձեր բարեկամութեան եւ գաղտնապահութեան վրայ , կը համարձակիմ Ձեզ դիմել տեղեկութիւն մը առնելու համար ։*

*Տեղւոյդ ... անուն անձէն* 40.000 *Ֆրանքի յանձնարարութիւն մ'ընդունած եմ , որոյ կէսը կանխիկ եւ կէսը* 3 *ամիսէն վճարելի ։ Բայց որովհետեւ այս անձը բնաւ չեմ ճանչեր և չեմ ուզեր գործի մը մէջ նետ—*

*ուրիլ՝ առանց գիտնալու թէ ի՛նչ տեսակ մարդոց հետ է գործս, կուգամ խնդրել որ հաճիք անկեղծօրէն ինձ ըսել թէ կրնա՞մ ապահովութեամբ ապրանքս յանձնել։*

*Պիտի յետաձգեմ պատասխանել... էֆէնտիի նամակին՝ մինչեւ որ ստանամ ի Ձէնջ այն տեղեկութիւններն՝ զորս կը խնդրեմ Ձեր ազնուասրտութենէն։ Կըրկնապէս երախտապարտ պիտի կացուցանէք զիս եթէ հաճիք կարելի եղածին չափ շուտ հաղորդել զայն։ Գաղտնապահութեանս վրայ վստահ եղէք, և ոչ մէկուն պիտի հաղորդեմ ինչ որ իբր գաղտնիք կը խընդրեմ Ձենէ։ Հաւատացէք թէ առիթը ներկայանալուն նոյնպիսի ծառայութիւն և ես պիտի մատուցանեմ Ձեզ։*

*Ձերդ ի սրտէ*

[Թուական] * * *

---

## 33 · *Պահանջք խնդրել։*

*Տէ՛ր,*

*Պատիւ ունեցանք քանիցս Ձեզ գրել մեր հաշուոյն գումարը պահանջելու համար. բայց դուք ոչ պատասխանեցիք և ոչ ալ մեր խնդիրը կատարեցիք։ Այլ ևս չը կարենալով սպասել՝ Ձեզ կիմացնեմք թէ գործն դատարանը յանձնած եմք. որովհետեւ անպատճառ կարգադրութիւն մը պէտք է մեզ, նկատելով որ մենք ալ շատ վճարումներ ունիմք ընելիք յառաջիկայ ամսոյ 15ին. Կը յուսամք թէ կ՚ըմբռնէք մեր այս ստիպողականութիւնն՝ որ մեզ խիստ լեզու գործածել կուտայ և թէ մեր յարաբերութիւնք չեն վնասուիր։*

*Ընդունեցէք մեր բարեւներն։*

[Թուական] * * *

---

### 34 · *Առ փաստաբան մը ։*

*Տէ՛ր ,*

*Տեղւոյդ կօշկակարներէն Պ. ...ի դէմ դատավարելու համար պէտք եղած թղթերն Ձեզ կը ղրկեմ։ Անպատճառ վճարելն կ'ուզեմ, և բնաւ տրամադիր չեմ շնորհում ընելու, մանաւանդ թէ այս մարդը դիւրակեաց է, և իւր պարտքը վճարել չ'ուզելուն համար չեմ ուզեր ես վնասուիլ։ Ամէն միջոց ձեռք առէք, կ'աղաչեմ, և առանց յապաղման։*

*Ձեր ամենախոնարհ ծառայն*

[Թուական] * * *

---

### 35 · *Ծանուցագիր ։*

*Կ. Պոլիս*

*Տէր* .................... *ի Սամսոն*

*Տէ՛ր ,*

*Պատիւ ունեցանք ընդունելու Ձեր նամակն, որով կ'իմացնէք թէ Պ....ի 500 Փր.ի վարկագիր մը տըւած էք մեր տան վրայ։*

*Ձեր հրահանգներն կէտ առ կէտ պիտի գործադրուին։*

*Հաճեցէք ընդունիլ մեր յարգանքներն։*

[Թուական] * * *

---

36 · *Ծանուցագիր* ։

*Կ. Պոլիս*

*Մեծ.* .................... *ի Նիկոմիդիա*

*Տէ՛ր ,*

*Կը համարձակիմք Ձեր տան վրայ վարկ մը բանալ նամակաբերիս* .................... ։

*Հաճեցէք իրեն վճարել որչափ դրամ որ ուզէ , մինչեւ* .................... *Փրանք , ի փոխարէն իւր ընկալագրոց , կամ փոխանակագրոց՝ զորս ուզէ քաշել մեր տան վըրայ Ձեր հրամանին . որն որ Ձեզ հաճոյ թուի* ։

*Ընդունեցէք մեր յարգանքներն* ։

[Թուական] ⁂

---

37 · *Այլ ծանուցագիր* ։

*Պրուսա*

*Մեծապ.* .................... *ի Քոնիա*

*Տեա՛րք ,*

*Ներկայիւս Ձեզ կ՚իմացնեմ թէ* .................... *ի վարկագիր մը տուած եմ Ձեր տան վրայ* .................... *Փր. ի* ։

*Հաճեցէք ի նկատի առնուլ զայն ի պատիւ իմ ստորագրութեան* ։

*Մնամ , Տեարք , Ձեր խոնարհ ծառայն* ։

[Թուական] ⁂

---

### 38. Ապրանքի մը յանձնարարութեան մասին շնորհակալիք։

Տէ՛ր,

Ներկայ ամսոյս . . .ի Ձեր պատուականաւն ինծ տըրուած յանձնարարութենէն շատ գոհ մնացի, և աղաչելով առ այս իմ անկեղծ շնորհակալիքս ընդունիլ, ներկայիւս կը կցեմ հաշուեցուցակն այն ապրանաց՝ զորս անմիջապէս Ձեզ ղրկեցի։

Ապրանքն ըստ ամենայնի համաձայն պիտի գտնէք նմուշին, և կը յուսամ թէ Ձեր գոհունակութիւնն պիտի յայտնէք անոր նկատմամբ՝ ի մօտոյ նոր յանձնարարութիւն մ'ալ տալով ինծ։

Խորին յարգանօք

[Թուական] * * *

---

### 39. Տան մը սնանկութիւնը ծանուցանել։

Տէ՛ր,

Ցաւօք սրտի Ձեզ կը ծանուցանեմ . . . Եղբարց տան սնանկութիւնը։ Դժբաղդաբար մեծ պահանջք ունիմ իրենց վրայ։ Որովհետեւ Դուք ալ առնելիք ունիք, կը փութամ Ձեզ ծանուցանել, որպէս զի պէտք եղած միջոցները ձեռք առնէք։ Այս մասին ինչ որ պատահի, փոյթ պիտի տանիմ Ձեզ տեղեկացնելու։

[Թուական] * * *

---

## 40 · Պատասխան ։

Տէ՛ր ,

Մեծապէս շնորհակալ եմ Ձեզ՝ . . . Եղբարց տան վըրայ Ձեր ինձ տուած տեղեկութեանց համար ։ Մեծ զարմանք չը պատճառեց ինձ այս բանը , իմացած ըլլալով արդէն թէ իրենց երկու փոխանակագրերն բոլորոյ առիթ տուած էին ։ Բարեբաղդաբար ինձ հետ ունեցած հաշիւնին շատ մեծ չէ ։

Որովհետև նոյն քաղաքին մէջ կը գտնուիք , շնորհապարտ պիտի ըլլամ Ձեզ եթէ հաճիք զիս ներկայացընել այս գործին մէջ . առ այս Ձեզ կը ղրկեմ իրենց հաշիւն հանդերձ փոխանորդագրով։ Սակայն եթէ կըրնաք կարգադրութեան մը յանգիլ , կամ պայմանաժամ մը շնորհելով իրենց և կամ ամբողջ պարտուց վրայ 25 կամ 30 առ հարիւր զեղչ մ՚ընելով , աւելի աղէկ է քան թէ դատի մտնել , ուր դատախազներուն ուրիշ բան չմընար , բայց եթէ կիսեւներն ոսկէին՝ զոր փաստաբանն կուլ կուտայ միշտ ։ Ինչ որ ալ ըլլայ , Ձեր վրայ այնքան վստահութիւն ունիմ , որ կատարելապէս կ՚ապաւինիմ Ձեր խոհեմութեան ։ Գործեցէք ինձ համար այնպէս՝ ինչպէս պիտի գործէիք Ձեր անձին համար , և հաւատացէք զիս ,

Ձերդ , Եայլն ։

[Թուական] * * *

---

## 41 · Գնում յանձնարարել ։

Տէ՛ր ,

Մին այն անակնկալ դէպքերէն՝ որք վերջերս մեծ փոփոխութիւններ յառաջ բերին , մեր շուկային մեծ

մնաս պատճառեցին։ Աղէքսանդրիոյ Նաւահանգիստները գոցուած են, և հետեւաբար բամբակները եւ արաբական խէժերն՝ որոց մասին անցեալ շաբաթ խընդրանք չիկար, շատ կը փնտռուին և օրէ օր կը բարձրանայ անոնց գինը։ Ուստի և Ձեզ կը յանձնարարեմք այս ապրանաց վրայ շահ մ՚ընել, քաջ համոզուած ըլլալով որ պիտի շահիք․ լիպրան 2 շիլ․ 6 բ․ի ընտիր խէժ կրնամք տալ Ձեզ, այսինքն այսօրուան գինէն 1 բէննի վար, և բամբակն $5^1/_4$ բէննիէ, այսինքն $^1/_4$ վար։ Իմացուցէք մեզ անմիջապէս Ձեր որոշումն, որովհետև շատ խնդրանք ունիմք, բայց նախապատուութիւնը Ձեզ կուտամք։

[Թուական] ***

---

## 42․ Զեկոյց։

Երիտասարդ մը, քաջահմուտ վաճառականութեան, և որ հինգ տարի Պոլսոյ ամենէն նշանաւոր վաճառատանց միոյն մէջ պաշտօն վարած է, պաշտօն մը կը փնտռէ։ Ամենալաւ տեղեկութիւններ կրնայ տալ։ Դիմել Նամակաւ առ.... փողոց .... թիւ....։ Պատասխանն անմիջապէս։

Ց․ Գ․ — Աղէկ Անգղիարէն ալ կը գրէ ու կը խօսի։

---

## 43․ Օրինակ պայմանագրի։

Ստորագրելոցս, ի Բերա ... փողոց ... թիւ ... բնակող՝ վաճառական... ի, մէկ կողմէն,

Եւ միւս կողմէն, ի Բերա ... փողոց ... թիւ ... ,

բնակեալ՝ վաճառական . . . ի միջեւ,

Հետեւեալն պայմանագրուած է.

ՅՕԴ. Ա. Վերոյիշեալ անձանց միջեւ հաւաքական ընկերութիւն մը կազմուած է, ամէն տեսակ ապրանաց վաճառականութիւն ընելու համար, յանձնարարողչէքով, զոր ցարդ Պ... առանձին կ՚ընէր։

ՅՕԴ. Բ. Դրամագլուխը երեք հազար Ֆրանք պիտի ըլլայ, և կէս առ կէս պիտի դնէ ընկերաց իւրաքանչիւրն, դրուած դրամագլուխը կրնայ դրամ կամ ընկերութենէն ընդունուած ուրիշ արժեթուղթ ըլլալ։

ՅՕԴ. Գ. Ընկերութեան անունը պիտի ըլլայ...։ Ընկերակցաց իւրաքանչիւրը պիտի կրնայ ստորագրել, բայց այդ ստորագրութիւնը միմիայն ընկերութեան գործերուն համար պիտի կարենայ գործածուիլ։

ՅՕԴ. Դ. Ընկերութիւնն հաստատուած է ի Բերա ... փողոց ... թիւ...։

ՅՕԴ. Ե. Ընկերութիւնը պիտի տեւէ տասը տարի, և պիտի սկսի յառաջիկայ մարտ 1էն հաշուելով։

ՅՕԴ. Զ. Ընկերակցաց և ոչ մին պիտի կարենայ իւր հաշուոյն գործ ընել, որովհետեւ բոլոր իւր խնամքները ընկերութեան գործոց պարտի նուիրել։

ՅՕԴ. Է. Շահուց բաժանումը կէս առ կէս է։

ՅՕԴ. Ը. Ընկերակցաց իւրաքանչիւրը պիտի կարենայ՝ իւր ընկերակցին հաւանութեամբ՝ ընկերութեան սնտուկը դնել, ընթացիկ հաշուով, ուզածին չափ գումար. Ընկերութիւնը տարեկան 6% տոկոս պիտի տայ իրեն այս գումարին համար։ Գոնէ ամիս մը առաջ ընկերութեան չ՚իմացուցած՝ գումարը չպիտի ետ առնու։

ՅՕԴ. Թ. Ամէն ամիս, իւրաքանչիւր ընկեր... պիտի առնէ. այս առնուած դրամները ընդհ. ծախուց հաշուոյն պիտի անցնին։

ՅՕԴ. Ժ. Ընկ. լիքիտասիօնը ընկերաց միոյն կողմանէ պիտի լինի, և առաւելապէս անոր կողմանէ՝ Ընկերութեանս վաճառականութիւնը պիտի շարունակէ։

[Գրեալ ի Բերա Թուականն] Ստորագրութիւնք

* * * * * *

---

## 44. Այլ օրինակ պայմանագրի։

Ստորագրեալքս՝ ..... մեծաքանակ փայտի վաճառական, բնակեալ ի Բ, ... փողոց, ... թիւ, մէկ կողմէն, եւ ... կալուածատէր, բնակեալ ի ..., փողոց, ... թիւ, միւս կողմէն՝

Հետեւեալ պայմաններն կնքած եմք։

ՅՕԴ. 1. Ես ...., կը յայտարարեմ գլխաւորութեամբ ընկերանալ Պ...ի հետ, մեծաքանակ փայտի վաճառականութեան մէջ՝ զոր կ'ընեմ ի...՝ ուր պիտի հաստատուի ընկերակցութիւնը, բաժնելու համար, յետագայ եղանակաւ, յիշեալ վաճառականութենէն յառաջ գալիք շահերը, և ինձ հետ կրելու համար պատահելիք վնասները, սակայն այնպէս որ ինչ որ ալ ըլլան այս վնասները՝ Պ... ի նկատմամբ, իւր դրած դրամագլուխը չ'անցնին։

ՅՕԴ. 2. Ներկայ ընկերութիւնս ... տարուան համար կնքուած է, սկսեալ ի... ց'...

ՅՕԴ. 3. Ընկերութեանս բոլոր տեւողութեանը միջոցին՝ յիշեալ վաճառականութենէն յառաջ գալիք ամէն տեսակ շահուց և վնասուց կիսոյն միայն մասնակից պիտի ըլլայ Պ....։

ՅՕԴ. 4. Ես ..., կը խոստանամ յիշեալ ... ի վըճարել ... գումար, հետեւեալ ժամանակամիջոցներուն։ Յիշեալ... գումարը, Ընկերութեանս ամբողջ

*տեւողութեան միջոցին, յիշեալ Պարոն ...ի տրամադրութեան տակ պիտի ըլլայ, և ամբողջ ինքն պիտի գործածէ ընկ. վաճառականութեան գործոց մէջ։*

ՅՕԴ. 5. *Պ... առանձին պիտի վարէ ընկերութիւնը. Հետևաբար, ինքն պիտի ընէ գնումները և վաճառումները, ինքն պիտի ընտրէ ծրագիրները և ընկերութեանս միւս գործակալները, և պիտի տեսնէ բոլոր միւս վարչական գործառնութիւններն։ Պարոն Մ... և ոչ իւիք պիտի կարենայ յիշեալ ընկերութեան գործերուն խառնուիլ։*

ՅՕԴ. 6. *Ընկերութեանս անունը պիտի ըլլայ...։ Միայն Պարոն ... պիտի ստորագրէ յանուն ընկերութեան, և այդ ստորագրութիւնը միայն ընկերութեանս պիտոյից համար պիտի կարենայ գործածել։*

ՅՕԴ. 7. *Ընկերութեանս պայմանաժամը լրանալուն, Պարոն Մ... իւր դրած դրամագլխոյն գումարը և անոր ինկող շահուց բաժինը պիտի ընդունի. եթէ վնաս ըլլայ, իւր դրած դրամագլուխն պիտի ընդունի, անոր ինկող վնասը մէջէն հանուելէ վերջ։*

*Կրկին օրինակօք գրեալ։*

[Թուական] Ստորագրութիւնք

---

## ԸՆԴԼԱՅՆԵԼԻ ՆԻՒԹԵՐ

1. **Առեւտրական նամակ.** — *Գիւղը կը բնակիք եւ սովորութիւն ունիք տարեկան նպարը մէկանց գնելու. գրեցէք այն նպարավաճառին որմէ կը գնէք սովորաբար, յանձնարարելով իրեն ձեր պէտք ունեցած նպարեղէնքը։*

2. **Առեւտրական նամակ.** — *Հայրերնիդ՝ որ անդամալոյծ է եւ չկրնար գրել մէկու մը՝ որուն ստակ փոխ առած է եւ որ տոկոսներն դեռ չէ վճարած։ Ամենայն քաղաքավարութեամբ կը գրէք եւ կը հրաւիրէք այդ անձն՝ որ մէկ մ'ալ չուշացնէ պարտքը վճարել։*

3. **Առեւտրական նամակ.** — *Ձեր մայրը՝ որ այս միջոցիս շատ զբաղած է, ժամանակ չունի գրելու նպարավաճառի մը որուն յանձնարարութիւն մ'ունի ընելիք. ձեր մօր տեղ դուք կը գրէք, մի մոռնաք նշանակել ուզուած ապրանքներուն գինն ու քանակութիւնը։*

4. **Վաճառականական նամակ.** — *Վաճառական մը նոր տուն մը կը հաստատէ իր մի գործակատարին համար՝ որ երկար տարիներէ ի վեր քով ծառայած էր հաւատարմապէս։ Արդ այս տունը իր բոլոր թղթակիցներուն կը յանձնարարէ։*

5. **Հնարքի մը նամակ.** — *Հնարիչ մը՝ որ գիւտ մը ըրած է, կ'ուզէ վաճառել զայն վաճառականի մը, ուստի նամակաւ կ'առաջարկէ զայդ՝ իր գիւտոյն առաւելութիւններն ցուցնելով։*

6. **Տեղեկութիւն խնդրել.** — *Սեղանաւոր մը՝ որ արհեստաւորի մը փոխատուութիւն մը պիտի ընէ, իր մի բարեկամին կը դիմէ գրաւոր կերպով եւ կ'ուզէ տեղեկութիւն առնել փոխ դրամ խնդրող արհեստաւորին նիւթական վիճակին վրայ։*

7. **Վաճառատուն մը հաստատել.** — *Վաճառական մը Վիէննայի ապրանքներ պիտի ծախէ, եւ ասոր համար նոր գործի ձեռնարկած է։ Զայս կիմացնէ նամակաձեւ զեկուցագրով մը։*

8. **Վաճառականական.** — *Վաճառական մը՝ որ հրապարակի վրայ երկար ժամանակ պատուաւոր կերպով գործ տեսած է, մեռած ըլլալով, ուրիշ մը նմա կը յաջորդէ եւ նոյն վաճառատան բոլոր թղթակիցներուն կ'իմացնէ թէ ինչ յարաբերութիւններ պիտի ունենայ իրենց հետ։*

9. **Որդի մը առ իր հայրն.** — *Թադէոս, զոր իր հայրը գիշերօթիկ վարժարան մը դրած է կարելի եղածին չափ կատարեալ կրթութիւն մը առնելու համար, կ'իմանայ թէ նիւթական մեծ կորուստներ ունեցած են իր ծնողք եւ անձկութեան մատնուած. իսկոյն կը գրէ անոնց եւ կը խնդրէ հրաժարիլ դըպրոցէն վաճառատուն մը մտնելու համար։ Ասով կը յուսայ շուտով դրամ շահիլ, եւ ընտանեաց անձկութեան դարման տանիլ։*

10. **Պատասխան վերնոյն.** — *Թադէոսի հայրը կը պատասխանէ թէ ընտանիքը արտասուելու չափ յուզուած է անոր առաջարկը լսելով։ Բայց չուզեր զայն ընդունիլ։ Խնայողութիւններ պիտի ըլլան, որպէս զի Թադէոս իր ուսումն աւարտէ։ Հայրը կը յուսայ թէ որդին պիտի ջանայ օգտուիլ իր ընդունած դասերէն։*



# ԳԼՈՒԽ Դ.

# ԿՏԱԿՆԵՐ

—

## ՊԱՏՃԷՆ ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆ ԿՏԱԿԻ

### ՅԱՆՈՒՆ ՀՕՐ ԵՒ ՈՐԴՒՈՅ ԵՒ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ

Գահիրէ 1865 ամի, Յունուարի մէկ

*Ես Կ. Վ. Շահնազարեանց, ծնեալ ի Համատան յամի 1814, հիւանդութեամբ հօս դալով բժշկութեան համար, և տեսնելով որ վիճակս օր աւուր կը ծանրանայ, ուստի քրիստոնէական պարտքս ամենայն ջերմեռանդութեամբ կատարելէ վերջը այս կտակս ըրի առողջ մտօք, իմ սեփհական գրչաւ և ստորագրութեամբ ի գիտութիւն ապագայից, և ի հրահանգ իմ կտակակատար Վսեմափայլ Նուպար փաշային, իմ բարեկամին և բարերարին.*

1. *Ունիմ ի Կ. Պօլիս հանգուցեալ Խօրասանճեան Պետրոս Ամիրայի տունը երկու սնտուկ գիրք, զգեստ և կարասիք, նոյնպէս Ղալաթիոյ Լուսաւորիչ եկեղեցւոյ քարուկիր սենեկի պատուհանն մէկ կապոց պիտանի և անպիտան գրուածք, սմավար, վերմակ, եւլն, զորս գրեր եմ Խասգիւղի Գէորգ քահանայ եղբօրս իւր տունն տանիլ։ Այս ամենս նոյն անձին կը ձգեմ իբրև յիշատակ մեր 15տարւոյ անկեղծ բարեկամութեան.*

2. *Ղալաթիա բնակեալ Մեծատուրեան Պետրոս աղայի մօտ շահով ունիմ 100 Օսմանեան լիրա, Խաս–*

*գիւղի Տ. Գէորգի և Մոմճեան Մկրտիչ աղայի գիտութեամբ։ Այս 100 լիրաս առնուի իմ մահուանէն յետոյ և Թիֆլիզ ղրկուի մեր անկեղծ բարեկամ գնդապետ Զաքարիա Յովհաննէսեանին, որպէս զի անկէ 75 լիրան իմ քեռորդի Մկրտիչ Աբրահամեանին ընծայէ իմ կողմէն, իսկ 25 լիրան իմ հօրեղբօրորդւոյն։*

3. 1856 *թուէն սկսեալ մեր մամուլէն ելած հայերէն և գաղիերէն Շար պատմագրաց և կանոն Սաղմոս ղրկեր եմ Պոլիս 7500 հատորի չափ. ասոնցմէ 1000 օրինակի չափ աղքատ դպրոցներու ընծայեր եմ, մնացեալը Խասգիւղի Մոմճեան Մկրտիչ աղային քովն է։ Կը խնդրեմ Նուպար փաշայէն որ զանոնք ամէնն ալ մեր ազգի աղքատ դպրոցներուն արդարութեամբ բաշխել տայ։*

4. *Զրդ յօդուածին մէջ յիշատակեալ Զ. Յ. ին* 150 *հատորի չափ Շար Պատմագրաց ղրկեր էի ծախելու համար, որ և ինձ երկու տարի առաջ* 200 *Ֆր. ղրկեր էր։ Արդ, մնացեալ հատորներուն համար իրեն գրուի որ կարօտաւոր ուսումնականաց և աղքատ ուսումնարանաց ձրի բաշխէ եթէ՛ գրեանքն, եթէ անոնց գինն։*

5. *Թէոդոսիա Այվազեան Գաբրիէլ վարդապետի մօտն* 70 *հատոր Շար Պատմագրաց ունիմ և* 10 *Երկրագունտի* 30 *թուի վարձ. գիրք և գումարն Նուպար փաշային ստանայ։*

6. *Եսայի Պատրիարքի մօտ* 20 *Հերքումն Դաշանց Թղթոյ,* 42 *Շար Պատմագրաց, և* 8 *օրինակ Երկրագընտի ստակ ունիմ. ասոնք ալ կտակակատարս առնու։*

7. *Հալէպցի Քիւրքճեան Պարոն Յովհաննէսն մեզ* 16 *լիրա սթէրլին* 11 *շիլին* 10 ½ *փէննի ստակ պարտական է ի գին մէկ Ջրհան մեքենայի զոր անոր աղաչելովն Անգղիա Յակոբեան աղայի ձեռամբ գնեցի*

եւ Էջիզլէր Կարապետ աղայի ձեռամբ ղրկեցի անցեալ տարի. հաշուեթուղթքն Մանչեսթեր են. այս գումարս ալ կտակակատարս ստանայ։ Նոյն Գիւրջեան մեզ պարտական է նաև 7 Երկրագնտի 30 թուի բըտակ. այս ալ ստանայ։

8. Մանչեսթեր Եղիազարեան Կարապետ աղայի մօտ ունիմ 7 Օսմանեան քօնսոլիտէ. անոր յանձներ եմ նաև մէկ կնքեալ սնտուկ, որու մէջ կան մէկ ոսկի էնֆիյէյի տուփ, մէկ ոսկի մինէլի տուփ, մի ոսկի և մի արծաթի ժամացոյցներ, քանի մը հարիւր ոսկի և արծաթ հին դրամներ, և մի փոքրիկ մագաղաթի վրայ գրուած Աւետարան Յովհաննու Բախդիար պատրիկի գործածութեան համար, մի փղոսկրեայ այցելութեան պահարան քանդակեալ, և այլ մանր մունր արծաթի և ոսկի և այլ կարասիք։ 23 հին դրամներն Ավնուուհի Ֆուլիկ տիկնոջն Նուպար փաշային կը ձգեմ իբրեւ ամենաչնչին երախտագիտութեան ապացոյց. մագաղաթի Աւետարանն որ իմ ընտանիքէս ինձ մնացեր է և որ արդարեւ յոյժ հազուագիւտ է, որովհետեւ ոչ Էջմիածին, ոչ Երուսաղէմ, ոչ Վենետիկ և ոչ այլուր անոր նմանն չկայ, որոյ համար ինձ շատ անգամ 1500 տալով կամեցան գնել և ես չկամեցայ ազգէն հանել, Վ. Նուպար փաշային կը ձըգեմ իբրեւ յիշատակ անմոռաց սիրոյ, այնու պայմանաւ որ որդւոց որդի իր ընտանիքին մէջ պահէ, իսկ ամէն մնացեալն խնդրեմ վաճառել տալ և մէկ գումար կազմէ, որոյ համար յետոյ գրելու եմ. Քոնսոլիտներն նոյնպէս ծախուին և գումարն նոյնպէս միանայ։ Նոյն աղայի մօտ թողուցեր եմ դարձեալ 40 գինէ, որ մեր դարանի մանր ծախքն հոգայ. եթէ ես պարտական մնացեր եմ՝ տրուի, որովհետեւ մինչեւ հիմայ հաշիւ չէ ղրկեր։

9. Մանչեսթերի եկեղեցին ունիմ մէկ արծաթէ գլխով ապանոզ գաւազան, մէկ արծաթի մասնատուփ. մէկ արծաթի խաչ, արծաթապատ Աւետարան, մէկ ձեռք զգեստ պատարագի. բոլոր եկեղեցական գըր-եանքն իմս են. ունիմ նաև մէկ կերպաս փիլոն, մէկ չուխայ նոր վերարկու, վեղար ևայլն, զորս բո-լորն ալ նոյն եկեղեցիին ձգեմ յիշատակ, բաց ի ար-ծաթի խաչէն որ Խասգիւղի եկեղեցիէն աւանդ առ-նուած ըլլալով՝ կը խնդրեմ որ իր տեղն դարձնել տայ իմ կտակակատարն և իմ հոգիս ազատէ։

10. Մանչեսթերի եկեղեցւոյ տան մէջ ունիմ մի գրատուն. ուր կան 3000 հատորի չափ Հայերէն, Գաղղիերէն, Ռուսերէն, Անգլիերէն և այլ լեզուաց մատեաններ. կան հարիւրաւոր արծաթի և պղնձի անդրիքաներ, և քանի մը ձեռագիրք, որոնցմէ Միքա-յէլ Պատրիարքի պատմութիւնն Պօլսոյ Միջագիւղի Թանգարանէն աւանդ առեր եմ, և իր տեղը դարձուի. իմ ննջարանիս մէջն են 6 արծաթի կերակրոյ դգալ, 4 նոյնպէս չայի, և 6 արծաթի դանակ հանդերձ մէկ սնտուկ և երկու կտմնոց լեցուն զգեստով և կա-րասիքով, վերն ունիմ մի ամբողջ լուսանկարի գործիք, և հարիւրաւոր շիշ գինի և պրանդի։ 3000 հատոր գըր-եանքն կը կտակեմ Պօլսոյ Հիւանդանոցին և Իզմիրի Մեսրոպեան դպրոցին. ամէն մնացեալն ծախուի եւ գումար ըլլայ մեր կտակակատարին մօտ։

11. Մանչեսթեր մէկ ամբողջ տպարան ունիմ հան-դերձ մամլով և ամէն պարագայիւք, 11 տեսակ պը-ղընձի մայրեր, քանի մը տեսակ պողովատիկ հայր. երկու ամբողջ մայրերն և այլ երեք տառ ցուլիչ Նար-մանտոնի ձեռն է, զորս առեր էի գիր թափելու եւ մասամբ մնացեր են. ունիմ մեր տպարանն նաև

25 կապ թուղթ և 700 քիլոյի չափ հայերէն և անգղիական տառք։ Ամէնն ալ ծախուին և գումարը մեր կըտակակատարին յանձնուի։

12. Մանչեսթեր մէկ բժշկի՝ որ Պուքնտոփչ Սգրիգ կը նստի՝ 1 լիրա 13 շիլին պարտք ունիմ. Նոյնպէս ցուլիչ Նորմանտոնին 14 շիլինի չափ, նոյնպէս Փարիզ Ռիւ Վալէն 48 թիւ ցուլիչին 7 ֆրանք, և Ռիւ լա Հարպ 38 թիւ ծերունի կազմարարին 16 ֆրանք տալու եմ, տոնք ամբողջապէս վճարուին և հոգիս ազատուի։

13. Մանչեսթերի գրոցս մէջ կան իմ շինած գաղ. և հայերէն բառարանն, գաղ. Միքայէլ Պատրիարքի պատմութեան թարգմանութիւնն, երկու հատոր եկեղեցական պատմութիւն, և մի հատոր ընդարձակ քրիստոնէական վարդապետութիւն և այլ շատ մանր գրուածք. տոնք յանձնուին Խասգիւղի Թանգարանին, գուցէ օր մը տպուին։

14. Մանչեսթեր տպած պատրաստի կան Տէր Յովհաննէս Խաչկեանի անցքն և իր պատկերն պղնձի վրայ փորուած հոն է։ Այն գրքի ճակատի խաչն ծուռ դըրուեր է և թուականն 1864 է, և գրքին մէջ քանի մը տառասխալք կան, որոց ցանկն իմ և անոր թղթակցութեան մէջ է։ Մեր գրաշարին այս վրիպակները շարել տրուի և ճակատին հետ մէկտեղ տպուին 1865 թիւ դնելով։ Նոյնպէս անոր 500 պատկերն տպուի և իմ ծախքով թղթակապ ընելով, բոլորն մէկ անտուկ լեցուի և իր հաշուին Կալկաթա իրեն ղրկուի։ Նոյնպէս հոն տպած պատրաստի կայ Միքայէլ Պատրիարքի պատմութեան առաջին հատորն։ Անիկայ ալ թղթակազմ կապուի և մեր բաժանորդ վճարողներուն ձրի բաժնուի և մնացեալն ծախուի ի շահ մեր։

15. Փարիզ Կոստանդեան Պօղոս աղայի [illegible] մի

պարկ ունիմ որոյ մէջ կան 25 Լոմբարդ, որոց արժէքն է 13500 Ֆրանք, 2 օբլիկասիօն Վիլ տը Պարիսի, որոց արժէքն է 850 Ֆրանք, 5՝ հինգերրորդական օբլիկասիօն Կոմմիւնալ, որոց արժէքն է 405 Ֆրանք. իմ մօտ սնտուկիս մէջ ունիմ երեք օբլիկասիօն Քրէտի Իմմոպիլիէ, որք ինձ արժեր են 1500 Ֆրանք, բայց այժմ հազիւ թէ 1200 Ֆրանք արժեն։ Ասոնք ամէնը ծախուին և գումարն իմ կտակակատարին տանու։

16. Ուլնիոյ աղքատաց համար 3000 Ֆրանքի չափ օգնութիւն ժողվեցի, և Պ. Պ. Լանկլուայի և Մուրատեանի գիտութեամբ հոն ղրկեցի. յետոյ Յակոբեան աղան անցեալ տարի ինձ յանձնեց 4 լիրա, Բիրմանէն ալ այս տարի եկաւ 270 Ֆրանք։ Այս գումարս ստացուի և մեր 4 լիրայի հետ միացունելով իր տեղն ղրկուի։

17. Իմ ձեռքս եղած ստակն իմ թաղմանս բաւական է. խնդրեմ որ իմ թաղումն պարզ ըլլայ և անշուք։ Իմ դերեզմանիս վրայ տնկուի մէկ սեւ մարմարիոն կամ գրանիտ մէկ ու կէս մէթր երկայն, և վըրան գրուի Հայերէն և Գաղղիերէն. «Կարապետ վարդապետ Շահնազարեանց, ծնեալ 14 մայիսի 1814 ամի ի Համատան և վախճանեալ ի Գահիրէ յամի 1865...»։

18. 25 տարի է եղեր մէկ փափաք միայն ունեցեր եմ, և այն՝ իմ տոհմին համար։ Ջանացեր եմ ընդ զանազան ժամանակս մէկ ուսումնական միաբանութիւն հաստատել և գիշերօթիկ դպրոց մի բանալ և արժանաւոր եկեղեցականներ պատրաստել, որք այլ և այլ գաւառներ տարածուելով ուսուցանեն։ Կոստանդնուպօլիս, Փարիզ և Մանչեսթեր իմ մտադրութեանց կենդանի վկայ են, ուստի ինչ որ իմ կենդանութեանս չը կարացի ընել, իմ մահուանէս յետոյ կը յանձնեմ իմ կտակակատար Վսեմափայլ Նուպար փաշային որ ընէ.

*իմ անունս փոյթ չէ որ յիշուի կամ ոչ, բաւական է միայն որ իմ փափաքս կատարուի։ Հետեւաբար իմ վերոյիշեալ ստացուածքն վաճառուելէն եւ պատրաստ գումարներն ձեռք բերուելէն զկնի կարծեմ թէ հազար գինէի զուտ գումար կը կազմուի։ Այն գումարն կը խնդրեմ այնչափ ատեն շահով բանեցունէ՝ մինչեւ որ 4 հազար գինէի գումար ըլլայ․ ապա դրամագլուխըն հաստատուն եկամուտի դնելով՝ անոր տարեկան եկամուտովն տասն աշակերտի համար իմ անուամբ մէկ գիշերօթիկ դպրոց բանալ տայ․ վերատեսչի, դասատուաց եւ այլ անօրինութիւններն իր գերդաստանի մէջ պահելով, որով Աստուծոյ օրհնութեանն, տոհմին երախտագիտութեան, եւ իմ գոհութեանս արժանի ըլլայ ինքն, իւր ընտանիքն, եւ բոլոր ազգատոհմն յորդւոց յորդիս, ամէն։*

19․ *Իմ դէմպր փոստի այբոմն Պօղոս Նուպարեանին յիշատակ կը ձգեմ որ քանի տեսնէ՝ զիս յիշէ։*

ԿԱՐԱՊԵՏ ՎԱՐԴԱՊԵՏ ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ

Ճշդութեանը կ'ստորագրեմ

ՆԵՐՍԷՍ ԵՊԻՍ․ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ

Ք. Խասգիւղի

1865 Օգոստոս 31

---

# ԿԱՆՈՆԱԳԻՐ

## ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ ԱՍՊԵՏ ՋՈՒՆԴԻ

*Հիմնարկութիւն-Ասպետ Ջունդ-ստեղծեալն յԱսպետէ Աստուածատրոյ տը Ջունդ, որ հպատակն է*

Աւստրիոյ և բնակէ ի Կ․ Պոլիս, սահմանեալ է ի խըրախոյս վերակարգ ուսմանց ի Հայս ուղղափառս (Գրիգորեան)։

Սկիզբն գործոյ Հիմնարկութեանս լինիցի զկնի մահուան Հիմնարկողին։

Նախաւոր դրամագլուխն որ վասն այսր վախճանի եդեալ է ի Հիւպատոսարանն Կայսր․ արքայական Աւստրիոյ-Հունգարիոյ որ ի Պոլիս՝ է գումար (60000) վաթսուն հազար Փրանքաց, յորում բարդելոց են տարեկան տոկոսիք մինչեւ ի մահն Հիմնարկողին և աճելոց պարգեւօք և համօրէն հրիտակօք զոր ինքն առնելոց է վասն իւրոյ գործոյ․ այս լինելով վախճան նորա ըստ հետեւեալ պայմանաց։

Ա․ Եկամուտ բովանդակ դրամագլխոյն զոր Հիմնարկութիւն Ասպետ Ջունդի դնելոց է զկնի մահուան Հիմնարկողին՝ պարտի առ մէն մի թոշակ հասանել ի գումար 2000 Փրանքաց ի պէտս ուսանողաց ուղղափառ (Գրիգորեան) Հայոց՝ որ յԱւստրիա և ի Հունգարիա և յայլ ամենայն պետութիւնս, և որք չքաւորք իցեն և փափաքիցեն ի համալսարանի ուրեք յԱւստրիա-Հունգարիա կամ յայլ աշխարհ կատարել զընթացս ուսմանց իրաւագիտութեան, բժշկութեան, աստուածաբանութեան, փիլիսոփայութեան, երկրագործութեան, ճարտարապետութեան կամ այլ ամենայն արուեստաւոր գիտութեանց և արուեստից։ Ընտրութիւն ասպարիզին և համալսարանին թողեալ է ի կամս ուսանողաց։

Բ․ Հիմնարկութիւնս վարիցի ի ձեռն Հիւպատոսարանին Աւստրիա-Հունգարիոյ Կ․ Պոլսոյ, որ առ դիւրել ջանից իւրոց կարէ կարգել զոք խնամակալ, միշտ ընդ իւրով հսկողութեամբ, և նմա պարտք են կա-

տարել զառնչութիւն ընդ ուսանողաց և հսկել ուսմանց նոցա ։

Սոյն այս խնամակալ զհաշիւ տեսչութեան իւրոյ ամի ամի մատուսցէ հիւպատոսարանին և ընկալցի ըղգինս ծախուց իւրոց ։ Ի խնդրոյ խնամակալիս Հիւպատոսարանն ի վարձ տարեկան աշխատութեան և բոլոր ծախուցն նորա կարէ տալ առ առաւելն 1000 Փրանք միայն ։

Գ. Դրամագլուխ հիմնարկութեանս հանդերձ ամենայն յաւելուածովք պահիցի ի Հիւպատոսարանն Աւստրիա-Հունգարիոյ Կ. Պոլսոյ կամ ի ձեռն նորա արկցի ի միում յառաջնակարգ պանգայից՝ այլ միշտ ընդ համարապարտութեամբ Հիւպատոսարանին ։

Դ. Խնդրուածք առ ստանալ զմի ի թոշակաց ուղղին առ Հիւպատոսարանն Աւստրիա-Հունգարիոյ Կ. Պոլսոյ, եթէ խնդրողն ի հպատակաց իցէ Պետութեան Աւստրիոյ և Հունգարիոյ, իսկ առ Պատրիարքարանն ուղղափառ (Գրիգորեան) Հայոց Կ. Պոլսոյ՝ եթէ ի հպատակաց իցեն այլազան պետութեանց ։

Մի թոշակ իրաւամբ վերապահեսցի միշտ վասն ուսանողի՝ որ Աւստրիոյ հպատակ ուղղափառ (Գրիգորեան) Հայ իցէ, և միւս թոշակ վասն՝ որ Հունգարիոյ հպատակ ուսանող իցէ ։ Ի դէպս յորս ի մի մասանցն միապետութեան ոչ գտանի բնիկ ոք արժանի՝ Հիւպատոսարանն կարէ զերկոսին թոշակսն սահմանել այլում՝ որ գտանիցի կամ ընդ Աւստրիոյ կամ ընդ Հունգարիոյ պետութեամբ՝ միայն զի կատարեալ արդարութեամբ ընտրեսցի ։ Իսկ ի դէպս՝ յորս և ոչ ի միում յայսց մասանցն գտանի արժանի ուսանող ի ժառանգութեան երկոցուն վերապահեալ թոշակաց՝ Հիւպատոսարանն սահմանէ զնոսին վասն ընտրելոյն ի կողմանէ Պատրիարքարանին ։

Ընդունելութիւն Աւստրիացի և Հունգարացի հըպատակաց կատարի ի ձեռն Հիւպատոսարանին այսպէս. հրատարակէ և հրաւիրէ որ ոք կարօտ կամ չըքաւոր իցէ, և ի վարս անբասիր, և որ վկայական ի ձեռին ունիցի յաջողեալ լինելոյ յերկրորդական ուսմունս և ըստ արժան բաւականի վարժ ի հայերէն լեզուի։

Ե. Միւս այլ Թոշակքն տացին ի ձեռն Պատրիարքարանի, առ Հայ ուսանողս պատկանեալս ուղղափառ (Գրիգորեան) Հայոց առանց խտրելոյ զերկիր պետութեան։ Բաց ի վկայականաց չքաւորութեան եւ անբասիր բարոյից՝ զոր մատուցանելոց են ուսանողքն առ Պատրիարքարան, պարտին քննել, նախ քան զընդունելութիւնս մասնաւոր քննութեամբ ըստ եղանակի զոր Պատրիարքարանն որոշէ և ըստ պահանջել ժամանակին։

Պատրիարքարան զտեղեկագիր քննութեան և զանուանս ընտրեալ Թոշակառուացն առաջի առնէ Հիւպատոսարանին Աւստրիոյ-Հունգարիոյ, սա ընդունի զմատուցեալն ի Պատրիարքարանէ՝ այլ ի լինել կարեւոր պատճառի ծանուցանէ եւ առաջարկէ զայլ ոք փոխանակել ի տեղի մերժելոյն։ Այսպէս ի պակասել միոյ ի Թոշակառուացն միշտ այլ ոք ընծայեսցի ի ձեռն Հիւպատոսարանին և Պատրիարքարանին։

Զ. Պատրիարքարանն, ըստ ցանկութեան ողբացեալ իմոյ ամուսնոյ Տիկին Նեկտար տը Զունդ, սահմանելոց է զի ի Թոշակացն վասն ուսանողի ի կանանց սեռէ, որոյ փափաք իցէ ուսանել զվերակարգ գիտութիւն յօտար աշխարհի և ի՛նչ՛մա կատարեալ զըտանիցին պայմանք ընդունելութեան նշանակեալք ի Հիմնարկութեանս յայսմիկ։

Է. Իւրաքանչիւր ուսանող զբաժին միոյ թոշակին վայելէ ցորչափ տեւէ ժամանակ վերակարգ ուսման՝ այլ ոչ առաւել քան զհինգ ամաց բոլորումն։

Ը. Խնամակալն պահանջմանեալ գումարն հատուսցէ առ ուսանողսն ի կարեւոր ժամանակի։

Պարտք են սմա տեղեկանալ ուր թոշակառուն բընակէ, հսկել ճշդութեամբ ի վերայ ընթացից ուսման նոցա և թէ զիա՞րդ յաջողեալ ի տարեկան քննութեան։

Խնամակալն կանոնաւորապէս տեղեակ արասցէ ըզՀիւպատոսարանն զորպիսութենէ աշակերտին և առաջարկեսցէ հանել զթոշակն յորմէ ոչ օգտակար դատիցի։

Վասն աշակերտաց որ չիցեն Աւստրիացի կամ Հունգարացի՝ Հիւպատոսարանն տեղեակ առնէ զՊատրիարքարանն և յայտնէ զորոշումն իւր և խնդրէ զայլ ոք աշակերտ փոխանակ առաջնոյն ընծայել։

Թոշակն ոչ են իրաւունք առողին կամ վայելողին, այլ ձրի պարգեւ՝ ցորչափ արժանապէս վայելէ։

Թ. Դրամագլուխ Հիմնադրութեանս անձեռնամերձ կացցէ և մնասցէ, տոկոսիք միայն ի պէտս արկցին ըստ չափու թոշակացն։

Ամենայն յաւելուած տոկոսեացն Հիմնադրութեանս որ դեռ ևս ոչ իցէ բաւական առ գումար սահմանեալ թոշակին, բարդեսցի ի դրամագլուխն։

Կ. Պոլիս 3 ապրիլ 1890 [Ստորագրութիւն]

ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ՏԸ ՋՈՒՆԴ

Հաստատի վաւերականութիւն վերոյգրեալ ստորագրութեան Աստուածատրոյ տը Ջունդ։

Հիւպատոսարանն կայսր–արքայական հաւանի ըս.

*առանձնել զկառավարութիւն առաջիկայ Հիմնարկութեանս ըստ ստորոգելեաց և ձեւակերպութեանց որ նշանագրեալ ի Հիմնարկողէն ։*

Կ. Պոլիս 3 ապրիլ 1890

Հիւպատոս կայսր-արքայական

Աւստրիոյ-Հունգարիոյ

[Ստորագրութիւն]

[Կնիք] ՔՎՈՑԷԹ

# ԳԼՈՒԽ Ե.

## ԱՂԵՐՍԱԳՐԵՐ

**Դիտողութիւն.** — Ինչպէս որ խնդրանաց տեսակին մէջ բազում նուրբ զանազանութիւնք եւ խտիրք կան, նմանապէս հարկ է ուշադիր ըլլալ նամակագրական աստիճանաւորեալ կամ զանազանեալ պատշաճութեանց, ձեր բաղձանաց բնութեան, եւ բարձր պատուոյն համեմատ եւ յարաբերութեանց ու կապակցութեանց աստիճանին համեմատ, որք կան ձեր եւ այն անձանց մէջ, որոց կը դիմէք։

Եթէ օրինակի աղագաւ աստիճանաւոր անձ մը ըլլայ, որմէ շնորհ մը կը խնդրէք, ձեր ոճը պէտք է ոչ միայն պատկառոտ ըլլայ, այլ նաեւ ճարտար ողոքանօք խառնուած ։ Այսպիսի դէպքի մէջ ձեր խունկին անձնուիրութիւնը գործը չպիտի աւրէ. Եւ սակայն անարգ շողոքորթ մը մի՛ ըլլաք. արհամարհանք եւ նուաստացուցիչ մերժում մը կրնան յառաջ գալ ձեր զձուձ ապիկարութեան պատճառաւ։ Թող ձեր գովեստը պատճառաբանեալ եւ ճարտարութեամբ քօղարկեալ ըլլայ. ճշմարտութիւնը ձեզ պիտի նպաստէ եւ գաղտնապէս պիտի ախորժի ձեր գովեստներէն։ Ձեր խնդրանաց ա-

ուրկայն ընդհուպ պիտի շնորհուի, եւ երբեմն զգուեալ սնապարծութիւնն է մանաւանդ որ զձեզ պիտի զոհացնէ քան թէ բարեսրտութիւնը։

Բայց եթէ բարեկամէ մը բան մը խնդրելու դէպքին մէջ ըլլաք, գործը բոլորովին տարբեր կ՚ըլլայ․ Անկեղծութիւն, համառօտութեան կատարեալ ոճ եւ ոգի մը պէտք է․ Նա զձեզ կրնայ արհամարհել, եթէ ձեր նամակին մէջ զինքը ձենէ վեր բարձրացնէք։ Կան նաեւ խնդիրներ, որք իրենց բնութեամբ պարզ քաղաքավարութիւն միայն կը պահանջեն․ կան նաեւ ուրիշ կացութիւններ յորս մեացի զուարթութիւն մը երբեմն լիուլի յաջողութիւն յառաջ պիտի բերէ․ Աղաչանք ընդունող մարդը կը ժպտի եւ ոնոյ յիմարութեանց կը շնորհէ ինչ որ պիտի զլանար բուն խնդրոյն։

---

## 1․ *Քահանայի ձեռնադրութիւն խնդրելու աղերսագիր։*

*Ամենապատիւ Ս․ Հայր*

*Նախագահ Կրօն․ Ժողովոյ Ազգ․ Կեդր․ Վարչ․*

*Աստորագրեալքս, ամենախոնարհ որդիք Ձեր .... գիւղի, համարձակութիւն կ՚առնումք խնդրել Ձեր բարձր ուշադրութիւնն հետեւեալ կէտերու մասին։*

*Թերեւս ծանօթ է Ձեր Սրբազնութեան թէ մեր գիւղի քահանայն, այր սրբակրօն և երկիւղած, Հայրն Թադիկ հերու վախճանեցաւ ի խոր ծերութեան։ Անտի և այսր գիւղացիք զուրկ են կրօնական պաշտամունքէ, զի եկեղեցին փակեալ վիճակի մէջ է։ Շատ երախայք յաճախ կը մնան անկնունք, հարսանեկան հանդէսք դադրած ; Նոյն իսկ մեռելոց գերեզմանք երիցու օրհնութեանց չեն արժանացած։ Ի՛նչ աղիողորմ վիճակ է պառաւ կիներու՝ որք անհաղորդ կը մնան, և զղջման արցունք կը թափեն փակեալ եկեղեցւոյն*

դրան առջեւ, և կը վախնան զի իրենց գերեզմանն ևս չօրհնուի։

Իրաց այս վիճակին յաջող ելք մը տալու համար խորհեցանք դիւղիս ուսուցիչը կոչել տալ ի պաշտօն քահանայութեան, և առ այս յղել ի Պօլիս, որպէս զի ներկայանալով յատենի Պատկ. Կրօնական Ժողովոյ պարտուպատշաճ քննութեամբ յայտնէ իւր ձեռնհասութիւն ի սրբազան պաշտօն։ Կրօնական գիտելեաց, մայրենի լեզուի մասին ունի հմտութիւն ըստ արժանի բաւականին, որպէս և յերեւան պիտի գայ իւր կարողութիւն առաջի սրբագումար Ատենին. իսկ վարուց մասին կրնամք վկայել թէ միշտ սիրող եղած է բարոյականի, գիտէ սիրաշահիլ, և ոչ անսաստող է վերին իշխանութեանց։ Իւր խոնարհ և հեզ բնաւորութեամբ երբեք տեղի տուած չէ դժգոհութեան, այլ ընդհակառակն անտրտունջ կրած է ամեն զրկանք, և իւր բարւոք դաստիարակութեամբ օգտակար եղած է մեր որդւոց։ Իւր կեանքն եղած է դպրոցէն յեկեղեցի, եւ եկեղեցիէն դպրոց յաճախել. և ոչ երբեք գտնուած է անհաճոյ վարմանց մէջ։ Այսչափ ինչ տեղեկութիւն հաղորդելով յիշեալ քահանայացուի մասին՝ կը սիրեմք յուսալ թէ սոյն տեղեկութիւններ Կրօնական Ժողովոյ քննութեան հետ պիտի ծառայեն արագ տնօրինելու հարկ եղածն, և ժամ առաջ պսակել գիւղացւոց բաղձանքն, և փակեալ եկեղեցին բանալով մեր պապենական հաւատքը պաշտել տալ առաւել եռանդեամբ։

Կ'աղաչեմք, Սրբազան Հայր, Կրօնական Ժողովոյ բազմադիմի խնդրոց կարգին մէջ բարեհաճեցէք առաջնութիւն շնորհել գիւղացւոցս խնդրոյն, եւ յիշեալ ուսուցիչն քահանայական կոչմամբ պսակէք մեր գիւղի եկեղեցւոյն վրայ։

[40 անձանց ստորագրութիւններ]

Զ. *Առ մեծատուն ոք այգի մը գնել առաջարկել։*

*Ազնուաշուք տէ՛ր,*

*Ձեր մեծութիւնն քաջ իսկ կ'ըմբռնէ կարեւորութիւնն այնպիսի խնդիրներու՝ որք իւրեան առիթ կ'ընծայեն նորանոր ապացոյցներ տալ իւր բարեգործութեան, իւր ազնիւ սրտին՝ որ խորապէս կ'զգայ բախտէն հալածեալ անձի մը տխուր կացութիւնն։*

*Այդ վիճակ կը դառնայ հետզհետէ անհանդուրժելի, այդմ զոհուեցան ցարդ ամէն նիւթական միջոցներս, զի չէի կրնար տեսնել ընտանեացս մորմոքն կարօտութեան վիճակի մէջ, հարկ էր անզգալի ընել ամէն տառապանք. սրտիս վէրքը կ'արիւնէր, բայց ես պա՛րտ էի զուարթ երեւնալ, կռուիլ անողոք ճակատագրին դէմ. բո՛ւռն եւ կատարեա՛լ պայքար, որ իմ կորովս յաճախ կը ջլատէր եւ նկուն կը ձգէր զիս։*

*Բայց բարի է Աստուած, չեն ոչնչացած ամէն յոյսեր, կենացս այս ալեկոծութենէն զերծանելու համար դեռ կը մնայ ինձ միջոց մի, զի ունիմ այգի մը՝ զոր վաճառելով կրնամ ընտանեացս ժամանակ մի եւս օրապահիկն հայթայթել։*

*Այգին, զոր ժառանգած եմ ի հօրէ, Գարթալի մէջ նշանաւոր է իւր հազարաւոր որթերով, որթալուծն անդ չէ ըրած ցայս վայր իւր աւերիչ արշաւներն. ունի իւր մէջ քարաշէն տնակ մի, ոյր խոհանոցի մէջ կայ աղբերակ մի անոյշ ջրոյ։ Հայրս ինձ ըսած է թէ մեր այգւոյն հողն շատ յարմար է բուսաբերութեան. եւ ինչպէս փորձն ցցուցած է, արդիւնաւէտ եղած է այն առաւել քան զայլ մերձակայ այգիս։ Նա երբեք անխնամ չէ մնացած, այլ ընդհակառակն վայելած է ամէն արթուն խնամքներ։*

*Արդ, Ազն. Տէր, կ՚աղաչեմ որ Ձեր ընածին մարդասիրութեամբ գնէք զայն՝ որուն գումարն ինձ դըրամագլուխ ընելով պիտի ձեռնարկեմ իմ անհատական գործոյս։ Թէեւ ժամանակաւ մինչեւ 1000 Օսմ. ոսկի գին առաջարկեցին, սակայն այժմ այս գումարին վրայ կարեւոր զեղչ մ՚ընելով՝ կարելի է գնել զայն։*

*Ձեր Ազնուութեան արժանի կը տեսնեմ զայն. այլ եւս պէտք չունիմ ես անոր. բաւական զուարթացուց զմեզ անոր գինին մեր ուրախութեան ժամերուն. արդ արժան է որ զՁեզ ուրախացնէ ընդ միշտ խրախճաններով, ինչպէս որ նորա արժեզրկին եւս զիս պիտի երջանկացնէ յանհուեւս։*

*Կը հաւատամ թէ դուք գնելով զայն՝ միեւնոյն ժամանակ ազնուօրէն եւ մարդասիրական ոգւով ձեռն պիտի կարկառէք յարուցանելու զիս այն տարտամ եւ անորոշ վիճակէն՝ որ կը տանջէ զիս յոյժ եւ որ կը մղէ զիս միշտ նորանոր պարտքեր ընել աջ ու ձախ։*

*Ժամէ ժամ սպասելով նամակիս բանաւոր պատասխանին՝*

*Եմ նուաստ ծառայ Ձեր*

[Թուական] * * *

---

### 3. Դպրեվանք մտնելու համար նամակ առ Ս. Պատրիարքին։

*Բարձրաշնորհ Սրբազան Տէր,*

*Նախագահ Խնամակալութեան Արմաշու Դպրեվանուց։*

*Մեր գիւղի վարժարանին շրջանն այն ինչ աւարտած՝ կը դիմեմ յառս Ձեր Սրբազնութեան և կը խնդ-*

*րեմ զի ընդունիք և զիս յաշակերտութիւն Դպրեվանուց, որ յերկար ժամանակաց հետէ գրաւած է ուշս, և ուր կը գտնեմ տիրանուէր ձկտմանցս ճարակ։*

*Սրբազան Տէ՛ր, մի՛ զարմանաք եթէ կանուխէն կ'ուզեմ մտնել յուխտ կուսակրօն եկեղեցականութեան․ հոգւովս համոզուած եմ թէ ծանր չէ այն լուծ, զոր մեր Երկնաւոր Վարդապետը կը դնէ իւր սպասաւորկուաց վրայ, և ո՞չ ապաքէն ինքն եւս ըսաւ․ «Զի՛ լուծ իմ քաղցր է, և բեռն իմ՝ փոքրոգի։» Կենացս Ներկատմամբ տեղեկութիւններ կարող է տալ մեր գիւղի քահանայն․ Նա զիս կը ճանաչէ ըստ ամենայն մասանց․ եթէ նա եւս պատշաճ դատէ ինձ իմ այս որոշում, թող բարեհաճի յայտնել, չեմ ուզեր Տիրոջը սեղանին անարժան ծառայն լինել։*

*Իսկ ինչ որ կարելի է ինձ գրել իմ ներքին մարդոյն համար, կը յայտնեմ թէ գիտեմ պատկառ կալ օրինաց, հնազանդիլ իշխանութեան և եկեղեցւոյ ամէն սրբազան պահանջմանց։*

*Կը յուսամ թէ յընթացս աշակերտութեան իմոյ ի Դպրեվանս կ'ունենամ զգաստ կեանք, բարեհամբոյր վարք, կը հանդիսանամ աշխատասէր, ուսեալ, որպէս զի իմ ապագայ վիճակին համար մատուցուի աներկբայելի երաշխիք։*

*Տիրաւանդ օրհնութեանցդ կարօտ*
*ամենախոնարհ որդի*

[Թուական] * * *

## Դ. Հիւանդ պանդուխտ մը Փրկչեան Հիւանդանոցը խրկելու նամակ։

Ազնուաշուք Ատենապետ Տէր,

Պատ. Հոգաբարձութեան Ազգ. Հիւանդանոցի։

Տէ՛ր,

Ուր որ դիմենք, մեր աչքերն կը դառնան հեշտեաւ դէպ այն յարկերն, զորս թողած ենք, այն տուներ՝ ուր երգած ենք երբեմն մեր ուրախութիւններ. ի՜նչ օգուտ. այս է աշխարհի ընթացք, երթալ, հեռանալ ծննդավայր քաղաքէ և գուցէ կորնչիլ այլուր։

Պանդխտութեան մէջ աւելի կսկծագին է հիւա՛նդ լինել. պանդուխտն իւր աչքերն ի զո՜ւր իւր խանի չորս պատերուն մէջ պտըտցնելով, լքուն և վհատ՝ պարապութեան մը մէջ կը հառաչէ, կը հիւծի, եւ արագ արագ կը փութայ յիւր կորուստ, իւր ծնող մօր խնամքն ո՞վ կարող է տալ նմա. իւր քուրջերուն մէջ ծրարուած հոգին տակաւ կը փախչի մարմնոյ կապերէն, և կարօտն կը փութացնէ իւր դառն վախճան։

Ո՞վ պիտի որբէ մութի և լռութեան մէջ թափուած այս արցունքներն, ո՞վ պիտի խնամէ ախտաբեկ եւ հիւծեալ պանդուխտն, բայց եթէ դո՛ւք, որ արժանապէս ստանձնած էք գթոյ և մարդասիրութեան պաշտօն բարեսիրտ անդամոց հետ։

Ազն. Տէր, յաւիտեան երախտապարտ կը կացուցանէք հէք պանդուխտն, երբ անոր առջեւ կը բանաք դռներն այն տան՝ որ անմահ Բարերարաց շնորհիւ կառուցեալ կը յարատեւէ ցարդ, և որ այժմ Ձեր հսկողութեան ներքեւ կը բարգաւաճի հետեւելով եւրոպական բարեգործական հաստատութեանց։

Ազգ. Հիւանդանոցն է մեր մեծագոյն յոյսն, մեր մեր վերջին ապաւէնն ու սփոփանք. ընտանեկան մխիթարութիւններէ զուրկ պանդխտացս համար քաղցր է մտածել պահ մի թէ ընտանեկան յարկէ հեռու, այլ յարկ մի կայ, որ յուշ կ'ածէ նմա իւր տան քաղցրութիւններն. թէպէտ իւր սիրելի մօրմէն զուրկ, բայց պիտի գտնէ նոյն այն խնամքներ, թէև ստուգիւ ոչ այն ջերմութեամբ և ծայրալիր անձնանուիրութեամբ:

Արդ մեր պանդխտակից Անդրէաս եղբայրն կը խընդրենք որ բարեհաճիք ընդունիլ Ազգ. Հիւանդանոցի պատսպարելոց կարգն. ինք երկար ժամանակէ ի վեր կը տառապի յօդացաւով. հիւանդութի՛ւն, որ խանի խոնաւ սենեկի մի անկիւնն անբուժելի կը դառնայ հետզհետէ: Թշուառն աշնան ցուրտ և սաստիկ օրերուն պանդխտելով այս ախտին ենթարկեցաւ:

Իրեն համար շատ մեծ ցաւ է չկարենալ գործելն. որ աւուր կուգան սրտառուչ թղթեր և միշտ դրամ կը խնդրեն մինչ հէքն չ'կրնար աշխատիլ, և դառնապէս կը հառաչէ: Կը յուսանք սակայն թէ Ազգ. Հիւանդանոցի մէջ խնամուելով պիտի կրնայ իւր հուժկու բազուկներով աշխատիլ, և միշտ աղօթել Հայ երախտաւորներու կենաց համար. որովհետև մահուանէ ի կեանս պիտի վերակոչուի, եթէ միանգամ բժշկուի, և աշխատութեան գլուխն անցնի:

Հոգաբարձութիւնդ՝ որ լաւ կը ճանաչէ գթութեան արժանաւորներն, պիտի հաճի անտարակոյս պանդըխտակից եղբօր ի նպաստ ըրած մեր խնդրանաց, և յենլով մեր սենեկապետի վկայութեան՝ որ մեր բանից ճշմարտութիւնը կը հաստատէ ներկայիւս, սիրով պիտի բանայ Անդրէաս եղբօր առջեւ գթութեան տան դռներն: Խոնարհ ծառայք:

[Թուական]

* * *

### 5. Վաշխառուի մը գրել որպէս զի մնացորդ պարտքին այլ եւս տոկոս չառնէ։

Մեծապատիւ տէ՛ր,

Քաջ գիտէ Ձեր մեծապատուութիւնը թէ այսչափ տարիներէ ի վեր անընդհատաբար վճարած եմ Ձեզ պարտքերս հանդերձ իրենց տոկոսեօք։ Ճշդապահութիւնն եղած է Ձեզ հետ ունեցած յարաբերութեանցս միակ արժանիքն, և այսքան տարիներէ ի վեր պանդխտութեանս գլխաւոր մտածումն եղած է դրամ վճարել, որպէս զի ընտանիքս հանգիստ ապրին, ծերունի հայրս չունենայ դժգոհութեան առիթ իր կենաց այս վերջին շրջանին մէջ, այլ միշտ օրհնէ զիս եւ նորակազմ ընտանիքս։

Եւ ինչպէս որ ես խոստմանն գոհ ըրած եմ զՁեզ, Դուք ևս Ձեր ընդաբոյս քաղցրութեամբ և հաւատարիմ ընթացիւք ուրախացուցած էք զիս։ Երբեք չէք եղած այն անիրաւ վաշխառուներէն՝ որք այլոց տունը քանդելու կը հետամտին, որբին եւ աղքատին արիւնը կը քամեն, և անիծից նշաւակ կ'անցունեն կեանք։

Տէ՛ր, նպատակ չ՚ունիմ Ձեր անձնական արժանեաց ներբողներ հիւսել, այլ միայն արդարութեան պարտք մ'է այս զոր կ'ուզեմ ներկայիս հատուցանել առ Ձեզ։ Պանդխտին ալ մխիթարութիւնն այն է, երբ գիտնայ թէ իր դրամն, իր փոքրիկ ստացուածքն յափշտակութեան չպիտի մատնուի։

Արդ, Մեծ. Տէր, վստահ Ձեր ծանուցեալ մարդասիրութեան վրայ՝ կը յայտնեմ թէ իմ մի քանի ամսէ ի վեր անգործ մնալով բոլոր հասոյթներս ցամքեցան, առօրեայ պիտոյից համար իսկ կարօտացայ յոյժ, եւ

*ահա այն ինչ յաջողեցայ իմ նախկին գործս շարունակել։ Աստի յայտ է թէ չպիտի կրնամ ըստ առաջնոյն շարունակել վճարումներս, ուստի կը խնդրեմ որ մնացորդ պարտուցս համար որոշեալ տոկոսէն կարեւոր զեղչ մի ընել բարեհաճիք, որպէս զի միանգամ ընդ միշտ կարգադրուի պարտքս, եւ ես հանգիստ սրտիւ պարապիմ գործոյս. որովհետեւ ինձ համար պարտքի մտածումն ամենէն ծանր է եւ խռովիչ։*

*Կը յուսամ թէ այս մասին անմիջական կարգադրութիւն մ'ընել կը յօժարիք դուք՝ որ պանդխտի ցաւերը կը նախազգայք, եւ անոր ցաւած սրտին կը նայիք կարեկից աչքերով։*

*Ակնդէտ նամակիս պատասխանւոյն՝ եմ*

*Խոնարհ Ծառայ*(*)

[Թուական] * * *

---

## Ն. Կին մը իւր ամուսնոյն օտար երկրի մէջ պահուած լինելը լսելով կ'աղաչէ Ս. Պատրիարք Հօր՝ որ պէտք եղած պատիժը տայ։

*Ամենապատիւ Սրբազան Հայր,*

*Ո՞վ է նա՝ ում կարենամ դիմել այս տառապագին կացութեանս մէջ, ո՞վ այն՝ որ գիտնայ կնոջ մը վիճակն, որ տխուր է, ապերջանիկ՝ իւր որդւովք։*

*Առ Ձեզ կը դիմեմ, ո՛ ազգախնամ Հայր, յուսալից թէ հաճութեամբ պիտի ունկն դնէք իմ աղերսին եւ*

---

[*] Հպատակութեան նշան է փոխանակ խոնարհ ծառայ ամբողջապէս գրելու՝ միայն Խ. Ծ. գրել.

քանաւոր տնօրինութեամբ ուրախացնէք զիս յոյժ։

Ստորագրեալս Ձեր նուաստ աղախինն ասկէ իբր եօթը տարիներ առաջ ամուսնացայ Պ. Վրդանէս Սրմաեանի հետ, արհեստով կօշկակար, ում հետ մի քանի տարիներ կենակցելով՝ Աստուծով ունեցայ երեք որդիներ. ամուսինս դժգոհ կը թուէր իւր արհեստէն, և իւր հասոյթներուն անբաւականութիւնն տեսնելով կ'ուզէր ազատիլ այս վիճակէն. ես իմովանն կը քաջալերէի և ի հարկին իմ աշխատութեամբ կը գիւրացնէի իւր գործն, որ էր ընտանեաց ապրուստն։ Բայց նա չէր ուզեր տանիլ այս վիճակը, և կը փափաքէր հեռի աշխարհ երթալ իւր ընտանեաց բարեկեցութիւնը ապահովելու նպատակաւ։ Ի սկզբան հաւատացի իւր բանից անկեղծութեան, և թողուցի որ իւր նըպատակն ի գործ դնէ. բայց մեծ եղաւ զարմանքս, երբ տեսայ թէ ոչ իմ նամակներուս կը պատասխանէ, և ոչ ընտանեաց կարօտութեան վրայ կը կարեկցի։ Ընդերկար աղերսեցի, առանձինն և անօգնական մընալով արտասուօք անցուցի ժամանակս սիրուն փոքրիկներովս՝ որոնց ամէն հոգ կը ծանրանար իմ վրայ։

Հեռացաւ գնաց նա, ոչ մի միջոցաւ հնար եղաւ դարձունել զանի իւրայնոց քով. Աստուա՛ծ իմ, ամուսնանալ, ուխտել ի միասին կրել կենաց ամէն պատահարներ, և մի օր բաժնուիլ չարաչար դրժելով այն ուխտին՝ որ աստուածային է. վատագոյն չէ՞ այդ անձ, դասալիքի ամօթն ու նախատինք չունի՞ նա իրաւամբ իրեն բաժին։

Սրբազան Տէր, խաբեբայք և դրուժանք օրինաց խստութեան ենթարկել Ձեր վսեմ գործն է, մանաւանդ այնպիսի մի խաբեբայ՝ որ իւր կնոջմէ և որդիներէ բաժնուելով օտար երկրի մէջ ամուսնական նոր

*դաշն կը հաստատէ. Նոր տուն մը կազմէ, զանձն ամուրի հաւատացնելով և խաբելով տեղական իշխանութիւններն։*

*Եթէ յաւիտենական է ամուսնական կապն, ուրեմըն ի՞նչ յանդգնութեամբ կը համարձակի խզել զայն, և աստ յաղէտս մատնել իւր օրինաւոր ընտանիքն։*

*Անհնարին է ինձ նկարագրել թէ ի՞նչ սրտառուչ աղաղակներով կը գոչեն որդիքս. «Հա՛յր, հա՛յր»։ Արտասուելով կ'ըսեմ անոնց. «Զաւակնե՛րս, ձեր հայրը մեռած է, այսուհետեւ, ինչպէս յառաջ, ձեր հայրն երկինքն է, անոր պաղատեցէք։»*

*Նախատալի՜ց մահ։*

*Կ'աղաչեմ, Սրբազան Հա՛յր, Դուք պաշտպան իւր յոյսերուն և փափաքանաց մէջ խաբեալ կնոջս, Դուք խնամակալ անմեղ որբերու, Ձեր հզօր ազդեցութիւնն ի գործ դնելով հաճեցէք պատժել այս նորօրինակ խաբեբայն, ստիպելով եկամուտ մը կապել իւր զրկեալ ընտանեաց, և խանգարելով այն տուն՝ որ անիրաւութեան վրայ կը հաստատուի։*

*Այսոքիկ են աղերսանք թշուառ կնոջ մի և անմեղ որբերու։*

*Եմ Ձերդ*
*Բարձր Սրբազնութեան*
*Նուաստ աղախին*

[Թուական] * * *

---

## ԸՆԴԼԱՅՆԵԼԻ ՆԻՒԹԵՐ

1. **Նպաստ խնդրել.** — *Մէկն՝ որ երբեմն մեծատուն մը քով պաշտօնատար եղած է, յետոյ առեւտրական ասպարէզի մէջ մտնելով մեծ վնասներ կրած է, արդ կը գրէ նամակ առ նոյն մեծատունն՝ որպէս զի իրեն ձեռնտուութիւն ընէ։*

2. **Հօր մը նամակը առ գործարանատէր մը.** — *Այս հայրն՝ որդի մի ունի, որ այն ինչ շրջանաւարտ եղած է. այժմ այն աղերսագրով կը խնդրէ գործարանատէրէ մը՝ որ ընդունի զիւր որդին գործոցը մէջ։*

3. **Երիտասարդի մը նամակը.** — *Երկաթուղւոյ վարչութեան մէջ մտնելու համար ազդեցիկ անձի մը միջնորդութիւնն կը խնդրէ անգործ երիտասարդ մը։*

4 — **Ներում հայցել.** — *Կրթական պաշտօնեայ մը թերութիւն գործած է, և վասն այսոր պաշտօնանկ եղած է։ Արդ զղջալով իւր յանցանքին՝ կը խնդրէ որ վերահաստատուի իւր նախկին պաշտօնին մէջ։*



# ԳԼՈՒԽ Զ.

## ՊԱՆԴԽՏԻ ՆԱՄԱԿՆԵՐ

### 1. *Եղբայր առ եղբայր։*

*Սիրելի եղբայր,*

*Սե՛ւ ծով, ի՛նչ սրտի հատորներ առիր տարիր, ի՛նչ կեանքեր, ի՛նչ քաղցրիկ արարածներ թռուցի՛ր հեռո՜ւն, շատ հեռո՛ւն. ես նստած քու ափերուդ վրայ կը լսեմ ալեաց ձայնն, կը հարցունեմ ծովու թռչնոց, և կը խաբուիմ կարծելով լսել ձայնդ, եղբա՛յր իմ։*

*Մեր գիւղ աչացս դատարկ կ՚երևի, որովհետև ես մինակ եմ, մեր արտ ու պարտէզ չքացեր ծաղիկ ու կանաչ, որովհետև ո՞ւր է այն ազնիւ գլուխ, որ զար-*

դարեմ կանաչով և ծաղիկներով։ Մենք և մենէ վերջ եկողներ սոսկմամբ պիտի ըսեն պանդխտութի՛ւն։

Կուլամ, կուլաս, կը հառաչեմ, կը հառաչես. ո՞ւր պիտի միանան մեր արցունքներ ու հառաչներ. ո՞ւր մանաւանդ պիտի խառնուին մեր ժպիտներ։ Կարօտ եմ ուրախութեան ժամերու, անո՛նց, որոնց մեր տուն կեդրոն էր։

Երբ կը տեսնես զամենք որ կանգնած են բուխերիկին առջեւ, սիրտդ կը նորոգի, հոգիդ կը պայծառանայ։ Բայց երբ սիրելիքդ թողուն երթան հեռուն, հայրենի կտուրին տակ ամայութիւն և լռութիւն տիրէ, չէ՞ որ այն տուն կը լինի սգոյ տուն։

Շատ ու շատ անգամ երանի՛ կուտամ Թռչնոյն՝ որ կը պատռէ միջոցն, ամպեր կը ճեղքէ, և կը հասնի իւր բոյն. անցեալ տարի հաստատած էր զայն, այս տարի նորէն կը գտնէ զայն, և տուն ու ընտանիք հաստատելով կը հրճուի, երջանկութեան նուագներ կը բանաստեղծէ։ Օդայի՛ն մուսայ, որոյ սիրտ չունի այն լարն՝ ուրկէ արցունք կը կաթկթէ։

Այսքան ժամանակէ ի վեր մեր գիւղ կը պարպուի. մեր տղայք սորվեցան անգամ մը ճանապարհն և կ'երթան շարունակ, և ցաւն այն է որ գնացողք յետ չեն գար. կարծես թէ կայ առասպելեալ ոգի մը՝ որ կը դիւթէ, կը մոգէ, և մեր սրտի հատորները չվերադարձներ։ Այսպէս չէ՞ր Կիրկէ դիցուհին՝ որ կը հրապուրէր, և տարփաւորներն իւր քարայրին մէջ խոճկորներու կը փոխէր. Ալ ի՛նչ գրեմ չգիտեմ. կը դառանցե՞մ արդեօք, թէ կը խորհրդածեմ. շատ չընէ որ ես ալ գուցէ գամ, և պանդուխտ շրջիմ այդր, և այն ատեն ի՞նչ պիտի ըլլայ մեր ծնող մօր վիճակն, մեր ընտանեաց։ Ո՛հ, ի բա՛ց աչքէս այն պատկերն, արցունք—

ներ կ'ընդհատեն գրութիւնս ։

Մայրս համբուրելով կը բարևէ քեզ, կ'աղօթէ կանաչ արեւուդ համար․ ոյժ կարողութիւն կը մաղթէ, կը հայցէ այդ տեղ յաջողութիւնդ, այս տեղ երջանկութիւն։

Կարօտեալ եղբայրդ

[Թուսկան] * * *

---

## Զ․ Պանդխտի նամակ առ հայրն ։

Անո՜ւշ հայր,

Քու աղօթքով ճամբայ ելանք, ճամբեցիր մեզ, եւ Տուբիթի հրեշտակն մեր հետն էր․ ոչ մէկ դժուարութիւն կրեցինք, ամէն բան հեշտ էր ։ Քանի՜ կ'երթայինք, մեր նայուածքներ ետեւ կը ձգէինք, կուշտ կուշտ կը նայէինք մեր տուներուն, մեր գիւղին ծուխերուն, և մեր աչքեր կ'ամպոտէին ։ Բան մը կապած էր մեզ այն հինումին տուներուն, այն երկնքին՝ որ ձեր վրայ հովանի էր ։

Ա՛խ հա՛յր, քանի՜ կ'երթայինք, մեր քայլեր կը դանդաղէին, մեր ընթացք կը կասէր, և կարաւանն միաբերան կը գոչէր․ « Դու Աստուա՛ծ, զօրութիւն տո՛ւր մեր քայլերուն ։ »

Սիրելի հա՛յր, չմոռնամ այն գիշերն երբ դու խոր խաւարին գնացիր եկեղեցի, և լալով աղօթք ըրիր Ս․ Նշանի պաղ քարերուն վրայ, եւ քու արցունքդ աղօթքի թեւերով երկինք յղեցիր․ գիտեմ թէ Աստուծոյ առաջ ելաւ աղօթքդ պանդուխտ որդւոյդ համար ։

Շնորհակալ եմ Աստուծոյ՝ որ ինձ պարգեւեց յա-

Ջող ճամբորդութիւն ։ Բայց մէկ անգամ միայն Սեւ ծով մեզ հետ խաղ խաղաց․ երբ նաւ նստանք, խաղաղիկ էր ծովու դէմքն և մենք փառք կուտայինք որ մեզ կը գթայ երկինք, բայց ահա յանկարծ ամէն բան փոխուեցաւ․ համատարած մթութիւն մը ամէն բան ծածկեց մեր աչքերէն․ ալ ոչ երկինք երեւաց, ոչ լուսին, ոչ աստղ և ոչ արեւ․ լերանն նման ալիք կը բարձրանան, նաւն մերթ երկինք կ'ելնէ և մերթ անդունդ կ'իջնէ, դինովի մը պէս աստին անդին կը զարնուի, կամ աւելի ճիշդն յուսահատ մարդու կը նմանի, որ իւր կեանքն վերջացնելու կ'աշխատի․ բայց մեր մեղք ի՞նչ է որ իրեն հետ կորսուինք։ Նաւուն մէկ խորշն կծկտած կ'աղօթենք ահուդողի մատնուած, հոն նորէն կ'անիծենք պանդխտութիւնը․ ի՞նչ ունէր մեր գիւղն, որ թողինք այսպէս։ Բայց մեծ է Աստուած։

Բաւական ժամանակ կռուեցաւ նաւն փոթորկին հետ․ ծովն ալ յիմարացաւ, մեր վրայ յարձակեցաւ, որ իւր մէջ առնու, և ինք գերեզման լինի մեզ։ Այն միջոցին մեր ուշքը կորաւ, և վայրկենէ վայրկեան մահուան կ'սպասէինք․ ի՛նչ ուխտեր, ի՛նչ մոմեր խոստացանք, սուրբեր ամէն մեզ օգնութեան կոչեցինք, և վերջապէս ազատեցանք։ Ի՛նչ տեսարան, ծովն անուշցաւ, գառնուկի նման հեզուկ, ամըչցած իւր ըրածին վրայ, և մեր նաւ մտաւ Կ․ Պօլսոյ նեղուցն․ ի՛նչ քաղաք, ի՛նչ մարդեր, ի՛նչ շէնքեր․ կը տեսնենք զամէնքն, և մեր հոգին կը զօրանայ։

Ողջ առողջ եմ, Ձեր ձեռք կը պագնեմ, մօրս բարեւ կ'ընեմ, ամէն բարեկամաց ողջունութիւն կը հարցունեմ։

Պանդուխտ որդիդ

[Թուական] ***

### 3. Հօրմէն ի Պօլիս իւր պանդուխտ որդւոյն նամակ։

Աչացս լոյս որդի,

Դուն գնացիր, իմ սիրտն ու սէր քեզ հետ տարիր․ կ'ուզեմ լալ, բայց արտասուացս աղբիւրն է ցամքած․ ա՛լ կը տկարացնէ զիս հալումաշ, ձեռքերս կը դող-դոջեն, ժամանակէն առաջ ծերացայ․ ի՞նչ ընեմ լոյս, աստղունք, արեւ, լուսնակ, դուն ես իմ արեւն ու լուսին։ Ծո՛ւտ եկո՛ւր, վազէ՛, թռի՛ր, և իմ յոգնած գլուխս հողը դիր, իմ խաւար աչիցս դու եղիր քաղցր ցօղ։ Հոգն զիս մաշեցուց, ալ չեմ կրնար ապրիլ, չեմ կրնար համբերել․ կսկիծն ու ցաւը զիս կը վարեն։ Ամէն օր տղաքդ կը հարցունեն և կ'ըսեն․ Ո՞ւր է հայրս։

Մեր այգին մնացած է խոպան, մոլախոտն կը տիրէ հոն, և ամէն տունկեր բոյսեր կը խեղդէ։ Ամէն ծաղիկներ չորցած են։ Ա՜խ, մեր դրախտ այգին անտէր մնաց․ վարդն ալ չորցաւ, մանիշակն ալ, լեղակն, նարգէսն։ Ո՞վ պիտի խնամէ անոնց։ Այս քանի՛ տարի է որ կուլամ կ'ողբամ, հոգւոյս չուանէն կախուած եմ, պարտատէրներ մեր դրան ճկիկն առեր կեցեր են․ դրամ խրկէ՛, զաւա՛կս, ամէն ինչքս աւանդ թողեր եմ, ազատէ՛ զմեզ ամօթէ ու ստորնութենէ․ Պարտքը տալով, մեղքը լալով կ'ըսեն․ յուսով եմ որ մեր վիճակ կը մտածես, և այնքան տառապանքներ կը հեռացնես մենէ։ Ես աղօթող եմ գործոցդ յաջողութեան համար։

Ընտանեօք ամենքս ալ ողջ առողջ ենք, միայն Ձեր աննման տեսուն կարօտ ենք․ ամէն ազգականքդ սիրով կը բարեւեն։

Զմեզ մի՛ մոռնար։

Հայրդ

[Թուական]

* * *

## 4. Պանդխտի կնոջ նամակ։

### (Ընդօրինակութիւն)

*Սիրելի Թագ ու պսակ էրիկ,*

*Էս քանի՛ տարի է որ կուգայ ու կ'ընցնի, էս քանի՜ տարի է որ մեր սիրտ քեզ համար կ'մաշվի. էս քանի՞ տարի է որ սիրոյդ մէնէն կը մնամք կարօտ։ Է՜հ, վո՞վ իմ վիրաւոր սիրտ բերէր չիւմ[1] քիոյ մօտ որ բանիր տխնիր ինոր ցաւերն ու վէրքեր։ Ա՜հ, չանց հըմէն կսկծաւոր ես եմ վիրաւոր, չանց հմէն խռոված ես եմ տրորված, խրխցած ու մրկած։*

*Թո՛ղ գարուն գայ, երկիր՝ սարերն ու դաշտեր կանաչ, կարմիր ու նարնջի զարդրի. ա՜խ, ես ի՞նչ անեմ ինոնք, ես մնացի անտէր, ես մնացի որբ և այրի։*

*Թո՛ղ ամռվան պտուղներ խասնեն, մըղաղներաց պէս չարուին ու կաթիւկ[2] անեն վէր կանաչ խոտին, լըղմոր լըղմոր[3] լըպորվին, ես ի՞նչ անեմ ինոնք, կարօտ մնացինք, դու պէտք ես խամ տաս ինոնց ու խոտ տաս, համ ինոնց համ ծիկ[4]։*

*Թո՛ղ խօճան ժողվէ արծաթն ու ոսկին, ակն պատվական մուճաֆարներ անգին, չանց ծովու լիցուցի, չանց աշխրիս սարերն բարթի, թեղի՛ ու սեխչի, ինոնք զմէն առանց սէրի առանց սրտի ինչի՞ս խամարի. ա՜հ, առանց քո աստըվորիս[6] մալն ես ի՞նչ անեմ։ Ա՜խ, թէ ես քեզ խամար մեռած եմ, էլմ[7] կ'ասեմ, աշխրիս մալն ես ի՞նչ անեմ։*

*Մենք ձեռք տըվինք ձեռաց, ուխտ արինք խառրաց[8],*

---

1 Մինչեւ։ — 2 Հասած պտուղ։ — 3 Կակուղ տանձ։ — 4 Ինձ։ — 5 Ժողվել։ — 6 Երկրաւոր։ — 7 Դարձեալ։ — 8 Մէկտեղ։

*որ խտրաց ապրէինք, խտրաց մեռնէինք. քիոյ սէր տուիր իմ սիրտն առիր ու մեր սիրոյ բան լեց էրկին լեց էրկիր. մենք ուխտ արինք, ու իրարու վրայ խոգի կուտայինք. ա՜հ, ճղակտոր էղաւ մեր եղունիկ[9] սէր, ու քէօքեախան էլաւ մեր սիրտ, դու կարիպ գացիր ու ինկեար օտար երկիր ու հեռու մնացիր. դու քրտինք կ՚թափես, ես արտասունք. դու մոլրած ես, իսկ ես պէպըրած[10], օրս աստըվորս գնաց էլ զատ չմընաց: Անչանք կանչեմ սարեր լացուցեմ, ես առանց քե սէրն ի՞նչ անեմ, սիրտն ի՞նչ անեմ, ուխտն ի՞նչ անեմ, կեանքն ի՞նչ անեմ:*

*Քիոյ ճուխտակ[11] այվընիկ[12] ձագեր կուց կուց[13] արտասունք կ՚թափեն, կուլան ու կ՚ասեն. «Մեր խէրն ինչի՞ չիրե, տէտէ մարէ ապա ե՞րբ պիտի գայ»: Մի կը խարցուցեն սիրտս կ՚դաղեն. էլ ինոնց խաբելու մաֆար[14] չմնաց, բարեկամ, տիւր դրացին, ծիկ խարցմունք կ՚անեն ձեր մարդէն ի՞նչ խապար կայ, ե՞րբ պիտի գայ, էլ խէրիք չեղա՞ւ կարիպութեան մէջ մնայ. էլ խոգիս էլա՜ւ շատերաց սուտ խաբէլուց. ես ձեռքէ գնացի: Տիւր դրացին, ես ի՞նչ անեմ առանց իմ ծէթկիկ[15] ձագերու աղին, ես ի՞նչ անեմ առանց իմ Նաղելի կարիպին, աշխարհ ծի մութ է. վո՞վ կ՚իրիչկի[16] վէր լաճերաց. կարիպիս մեռնիմ իր ճամխներաց:*

*Մեր տուն տեղ մեր ձեռքէն էլաւ, օտար խաւքի պէս մնացինք վէր չոր խըլի. վո՞վ պիտի մեր նեղութիւն տխնայ մեզ ողորմի. խեղճ ու անտէր մնացինք, քեզնից աւելի մարդ չունեմք. ի՞նչ կ՚ասես՝ սաղ սաղ մեռնե՞մք:*

---

9 Աղաւնի: — 10 Զանձրանալ. — 11 Զոյգ: — 12 Թռչուառ, ողորմելի: — 13 Ափ ափը: — 14 կարօղութիւն: — 15 Մանրիկ: — 16 Նայիլ:

*Ծէրդ ու մէրդ խաւլորցեր են, ես ինոնց տարան չեմ կրնայ քաշել. ես քե քիչ գրեցի, դու շատ իմացի. շատ Թո՛ղ արե՛ էլ խէրիքի, խէրիքի դուան տատէք դառատակ նստէք. իսկի չէ տարին քանիմ կուռուշ փարայ ճամխէք, մենք էրթանք մուրանք բերենք քիոյ տղէյնե՞ր պախենք. էլ չեմք կրնար անել, ի՞նչ որ արինք լն էլ խէրիքի։*

*Քիոյ անբաղդ կողակից*

[Թուական] * * *

---

## ԸՆԴԼԱՑՆԵԼԻ ՆԻՒԹԵՐ

1. **Առ ձեր մայրն.** — *Ցայտնելու համար թէ յանցաւոր եղած էք։ — Իմացուցէք ձեր յանցաւորութիւնը եւ ներում խնդրեցէք։ — Ըսէք ձեր յանցանքը։ — Դուք կը ցաւիք անոր համար. որովհետեւ գիտէք թէ ինչո՞ւ համար ձեր հայրը զձեզ դըրոց դրաւ։ Խոստացէք այլ եւս յանցանք չգործել։*

2. **Նամակ առ հայր մի.** — *Հայր մը ամէն մ'ի վեր աղքատացած է գործոց պատճառաւ. իւր որդին կը գրէ նմա եւ մօրը ու եղբարց ու իւր վրայ լուրեր կը հաղորդէ։*

3. **Մայր մը առ իւր աղջիկն որ կ'աշակերտի այլուր.** — *Քու նամակդ մեզ շատ հաճոյք կը պատճառէ։ — Ամէն ծառայութիւն կատարէ որչափ կրնաս, ընդունէ զխրատութիւններ եւ նոյն իսկ կշտամբանք։ Կը ցաւինք որ զքեզ չենք տեսներ։ — Աշխատէ՛ միշտ։ Մնաս բարով։ Վերջաւորութիւն։*

4. **Հրաժեշտի նամակ.** — *Ձեր ուսուցչուհին գրեց է կ'ելնէ ուրիշ տեղ մը պաշտօնավարելու համար. ձեր ընկերուհիներն ձեզի կը յանձնարարեն անոր գրել յանուն ամբողջ դասարանին։ Ըսէք ձեր սրտէն ուսուցչուհւոյն թէ ո՛րքան ցաւ կը պատճառէ ձեզ իւր հրաժարականն եւ խոստացէք իրեն թէ երբեք չպիտի մոռնաք իւր աշակերտուհեաց եւ ի մասնաւորի ձեզ համար ըրած բարերարութիւնն։*



# Գ Լ Ո Ւ Խ Է.

## Վ Կ Ա Յ Ա Գ Ի Ր Ք

### Վկայագիր ուսման։

Պ. Սողոմոն Շմաւոնեան յընթացս աշակերտութեան՝ (1888-93) իւր բարի վարուք եւ ջանասիրութեամբ գոհացուցած է զմեզ։ Ոչ երբեք իւր պարտականութեանց մէջ թերացած է, այլ իւր համբոյր բընաւորութեամբ և ուսմանց յառաջադիմութեամբ առաջին մրցանակներ շահած է։ Գիտէ ըստ բաւականին լեզուներ Հայերէն, Թուրքերէն, Ֆրանսերէն, գիտութեանց նախատարերքն, թուաբանութիւն, գիր եւ գծագրութիւն։

Կը յանձնեմք յիշեալին զայս վկայագիր՝ լաւ ապագայ մաղթելով նմա։

[Թուական] Տեսուչ

---

### Վկայագիր ուսանողի։

Պարոն Գրիգոր Մելիտոսեան իբր երեք տարիներ (1890-93) աշակերտելով ինձ Պէյքօզի թաղային վարժարանին մէջ, մայրենի լեզուի մէջ զարգացաւ ըստ բաւականին, մինչեւ քաջ խելամուտ լինել ընտիր ընտիր գրուածոց ոգւոյն և շարադրել յաջողապէս զանազան նիւթոց վրայ։

*Ընթացս աշակերտութեան իւրոյ փայլեցաւ համեստ վարուք և ջանասիրութեամբ։ Իւր աշխատասէր ոգին իւր բարի վարուց օրինակին հետ պիտի լինի ինձ համար յաւէտ քաղցր յիշատակ։*

*Կը հաւատամ թէ կենաց որևէ վիճակի մէջ ևս պիտի պահէ իւր ձիրքերն, և պիտի հանդիսանայ կարեւոր անդամ տոհմին և ընտանեաց։*

*Այսու ջերմ ըղձիւ կը յանձնեմ Պ. Գ. Մելիտոսեանի՝ զսոյն այս վկայագիր։*

[Թուական] [Ուսուցիչ]

---

Վկայագիր ծննդեան։

*Դանիէլ Յովհաննէսեան, որդի ժամագործ Յովհաննէս աղայի և Իսկուհի տիկնոջ, ծնած է 1869 փետր. 2ին և մկրտուած է նոյն ամսոյ 14ին, Ռումէլի Հիսարի Ս. Սանդուխտ եկեղեցւոյն մէջ կնքահայրութեամբ ձկնորս Առաքել աղայի։ Մկրտիչ քահանայն է Տ. Թադէոս քահանայ նոյն եկեղեցւոյ։*

Աւագերէց Քարտ. Թաղ. Խորհրդոյ

* * * * * *

---

Վկայագիր պաշտօնէի։

*Պարոն Ստեփան Կոստանեան, ուսուցիչ մաթէմաթիքայի, իբր երեք տարի պաշտօնավարելով ի վարժարանիս, իւր խղճամիտ և բարւոք պաշտօնավարութեամբ գոհ ըրած է զմեզ։ Ցաւ է մեզ, զի կը զրկուինք այսպիսի յաջող պաշտօնէի մը գործակցութենէն, նիւթա-*

*կան անձկութեան պատճառաւ ։ Իբրեւ հայր կամ իբր երէց եղբայր կը վարուէր աշակերտաց հետ․ հմտալից դասախօսութեանցն յաճախ ներկայ լինելով՝ տեսած եմ թէ իւր պաշտօնին խորին գիտակցութիւնն ունի, և երբեք ժամավաճառ չլինիր անօտի շաղփաղփութեամբ ։*

*Տեսչութիւնս կը յուսայ թէ Պ․ Ստեփան սուղ ժամանակէն պիտի կոչուի դարձեալ ի պաշտօն մեր վարժարանին մէջ և ըստ առաջնոյն շարունակէ իւր օգտակար դասախօսութիւններն ։*

[Թուական] Տեսուչ

---

Վկայագիր ծառայութեան․

*Պ․ Կարապետ Ոսկանեան 5 տարիներ ծառայելով վաճառատանս մէջ իբրեւ գործակատար, գոհ ըրած է զիս իւր վարժ և գործունեայ ընթացքով․ հաշուոյ և դրամական խնդրոց մէջ հաւատարիմ և անխարդախ վարմունքով արատ մը չէ բերած երբեք իւր հնգամեայ ծառայութեան ։ Այժմ փոքրիկ դրամագլուխ մը գոյացուցած է և կ՚ուզէ ինքնագլուխ գործել ։ Ուրախութեամբ կը հաւանիմ նմա և կ՚ուզեմ տեղեկացնել առեւտրական հրապարակին թէ իմ, իւր նախկին տիրոջ համարման և մեծարանաց արժանացած է ըստ ամենայնի, և կարող է հետզհետէ հասնիլ այն բարձրութեան՝ ուր արժանի են ամէն գործունեայ անձինք ։*

*Պ․ Կ․ Ոսկանեանի ամէն յաջողութիւն մաղթելով՝ անոր յառաջդիմութեան ես ակնդէտ եմ․*

[Թուական] ⁂

# ԳԼՈՒԽ Ը.

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ՉՈՐՍ ՆԱՄԱԿՆԵՐ

### *Նամակ Ա.*

*Սիրելի՛դ իմ Գեղանոյշ,*

*Կը փափաքիմ տեսնել զքեզ քու տանդ մէջ հաստատուած և երջանիկ. որբ մ'էիր, զքեզ խնամեցի. լոյս սփռեցի այն սրտին մէջ, ուր սեւ գիշեր կը տիրէր։ Բայց կ'զգամ որ իմ խանգարեալ առողջութիւնս տակաւ կը խլէ ինէ այն յոյսն թէ օր մը քու երջանկութիւնդ տեսնեմ. Ուստի չեմ ուզեր զրկել զքեզ այն տեղեկութիւններէն, զորս փորձառութեամբ ստացած եմ, և կը կարծեմ թէ քեզ օգտակար կը լինին անոնք, քե՛զ՝ որ չունիս ո՛չ հայր, և ո՛չ մայր։ Ջանացի անոնց վիշտը չզգացնել քեզ, սիրո՛ւն որբուհիս, և ուրախութեամբ տեսայ թէ պարկեշտ, հրապուրիչ աղջիկ մը կը լինիս։ Շնորհակալ եմ, զի իմ խնամոցս կը համապատասխանես. պարտքս էր, զոր կատարեցի, և պարտ էի զայն կիսկատար չթողուլ։ Խօսինք այժմ ի միասին ապագայիդ նկատմամբ։*

*Գիտեմ թէ օր մը ամուսնանալու օրինաւոր փափաքն ունիս, որպէս զի ունենաս պաշտպան մը, հաւատարիմ բարեկամ մը, և կազմես ընտանիք մը։ Կը*

հաւանիմ այդ խորհրդոցդ, և չեմ տարակուսիր թէ քու ազնիւ ձիրքերովդ և փոքր ի շատէ ունեցածովդ պիտի կարողանաս լաւ ամուսին մը ունենալ։

Լաւ ընտրէ՛ ամուսինդ, սիրելի՛ աղջիկս, որովհետև այն է բոլոր կենացդ ընկեր։ Մի՛ խաբուիր ոչ արտաքին երևոյթէ, ո՛չ հարստութեան ակնկալութիւններէ, և ո՛չ այնպիսի կացութենէ մը՝ որ քուկինէդ վեր ըլլայ։ Ասոնք երջանկութեան երաշխիք չեն։

Քու ամուսինդ պէտք է ըլլայ երիտասարդ մը ազնուասուն, առողջ, բարեմոյն, մտացի և իւր արհեստին մէջ կարող։ Եթէ ասոնց վրայ աւելցնէ բարւոք նկարագրի մը, սիրուն դէմքի մը առաւելութիւններն, դուն պիտի գտնես գրեթէ կատարեալ ամուսին մը։ Որովհետև այդ կատարելութիւնը չկայ աշխարհի մէջ, պէտք չէ մտքէ անցունել թէ պիտի գտնես յանձին քու ամուսնոյդ վիպական դիւցազն մի։ Դուն քու թերութիւններդ ունիս, անշուշտ նա ևս իրենները պիտի ունենայ։ Ուստի Ձեր բախտը ուրիշի բախտին միացընելէ առաջ ջանացէք ի նկատ առնուլ թէ իրարու համար ստեղծուա՞ծ էք։

Ստուգիւ դժուար է այս. որովհետև նշանուելու պահուն երկու կողմն ալ իւր փոքր թերութիւնները կը ծածկէ. բայց կան թերութիւններ, որք երկու կողմէն անտես թողնըլ լինին։ Դու փափկութեամբ մեծցած ես, եթէ վայրենամիտ և կոշտ ամուսին մը ունենաս, պիտի տառապիս. դու անկեղծ և ուղղամիտ ես, եթէ ունենաս խաբեբայ և նենգաւոր ամուսին մը, պիտի սոսկաս. դու բարի ես և անձնուէր, եթէ ունենաս եսասէր եւ ագահ ամուսին մը, թշուառ պիտի լինիս։ Դու երկիւղած ես բայց ոչ սնապաշտ, եթէ ամուսինդ քու կրօնասիրութեանդ հակառակի, քեզ բռնաւոր մը պիտի

երևի։ —Այսպէս լաւ քննէ՛ ընտրութիւնն, որչափ կըրնաս, քու անձիդ և խոհական ու իմաստուն մարդոց միջոցաւ. զգուշացի՛ր շատախօս անձերէ, և ա՛յն ատեն որոշում տուր, երբ սիրտդ, միտքդ և բանականութիւնդ գոհ զգաս։

Երբ ամուսնանաս, ալ զղջումն անօգուտ է։ Պէտք է առնուլ ամուսինն այնպէս, ինչպէս որ է. եթէ կարելի է, լաւացնել զայն գորովանօք. հաճոյակատարութեամբ, բոլորովին անձնուիրութեամբ. եթէ չյաջողիս, պէտք է բախտիդ հպատակիս և մինչև վերջը կատարես քու պարտքդ ամէն պարագայի մէջ ևս։ —Ես չպիտի խօսիմ քեզ հաւատարմութեան պարտուց վրայ. քեզ նման ամբիծ և պարկեշտ աղջիկ մը հաւատարիմ կին մը պիտի հանդիսանայ, և չեմ վախնար թէ դու կ՚իյնաս գահավէժ այն մոլորութեանց մէջ՝ որոնցմէ ընտանիքներ կը կործանին. միմիայն միշտ զգուշացիր այն բաներէ, որովք ամուսնոյդ նախանձը կը շարժի։ Կան ամուսիններ՝ որք շատ կասկածոտ են այս մասին և դիւրաւ կը զայրանան։ Բարի և խելացի կին մը կը յարգէ այս փոքր տկարութիւնն և նախազգուշութիւններ ձեռք կ՚առնու տեղի չտալու, մանաւանդ ամուսնութեան առաջին տարիներուն մէջ։ Այդ մասին ամուսինն երախտապարտ կ՚ըլլայ, և այդ բանը կ՚ըլլայ ընտանիքի խաղաղութիւնը պահպանելու լաւագոյն միջոցներէն մին։ Իսկ դու ալ ծաղրելի նախանձու տեսարաններ մի՛ պարզեր։ Եթէ անոնք անիրաւ են, կը կորսնցնես քու ամուսնոյդ սէրը և զանի կը չարացնես. եթէ անոնք արդար են, բանի մը դարման չեն ըլլար. ընդհակառակն, երկինք պարգևած է քեզ թանկագին պարգև մը, այն է քաղցր բնաւորութիւն։ Պահէ՛ զայն մեծ խնամով, սիրելի՛ դուստր

իմ, մի՛ զայրագնիր . մի՛ վշտանար ընտանիքի մօր կեանքի մեծ և փոքր թշուառութիւններով։ Արիութեամբ ժուժկալէ՛ հիւանդութեանց։ Միշտ ամուսինդ ընդունէ՛ այն քաղցր ժպիտով՝ որ զքեզ սիրելի կ'ընէ այնքան։ Մի՛ ձանձրացներ զանի կենաց նեղութիւններուն վրայ տրտնջալով։ Անոր համար բաւ են իւր աշխատութիւններն և իւր յոգնութիւններ։ Եղի՛ր, որչափ կարելի է, անոր առջեւ վայելուչ, խնամոտ եւ ակնահաճոյ։ Զըլլայ որ կրես աղտոտ շրջազգեստ, ունենաս գէշ սանտրուած մազեր, կրունկը ծռած կօշիկներ, անյարմար բաճկոնակներ։

Ամուսին մը, կ'ըսէր մեծ մայրս, պէտք է միշտ կարենայ բաղդատել իւր կինը իւր ճանչցած այլ կանանց հետ առանց ի նոսա առաւելութիւն գտնելու։ Թող քու տունդ և դուն և յետոյ քու զաւակներդ ըլլան միշտ ամուսնոյդ համար ամենէն աւելի սիրելի արարածներ, որոնց յիշատակն իրեն հետ ունենայ իւր աշխատութիւնը քաղցրացնելու համար և որք երջանկութիւն առթեն իրեն, երբ երեկոյին տուն դառնայ։ Ջանա՛ գրաւել իւր վստահութիւնն յարատեւ քաղցրութեամբ և հնազանդութեամբ, և մանաւանդ միշտ ողջամիտ և յաճախ լուրջ երեւցի՛ր։ Երբ տեսնէ թէ քենէ ապահով բարեկամ չկրնար ունենալ, կամաց կամաց պիտի վարժի քեզ խորհրդակցիլ թէ ո՞ր միջոցը ձեռք առնուլ լաւագոյն է։ Սատի օգուտ պիտի քաղես զանի համդարտեցնելու համար՝ եթէ բարկացած ըլլայ, խըթան մը ըլլալու՝ եթէ անփոյթ է, հաշտեցնելու՝ եթէ խռոված է իւր ազգականաց և բարեկամաց հետ։ Վերջապէս յօդուտ բարւոյն գործածելու համար այն ազդեցութիւնն, զոր քու արժանեօքդ պիտի շահիս։

Դուն քու օրական զբաղումներէդ դուրս բան մը

մի՛ ըներ առանց անոր հաւանութիւնն առնելու. եւ նոյն իսկ անոր հետ ի միասին կարգադրէ՛ տան ներքին գործերը, կարասեաց կամ հագուստներու գնումներ։ Այս փոքր բաներն ամուսինն իր կնոջ և տան հետ կը կապեն։

Երբեք մի՛ խռովիր անոր հետ, նոյն իսկ իրաւացի պատճառներով։ Եթէ դուն բաւական ապահով ես իրաւունք ունենալուդ վրայ, յայտնէ՛ ամենայն պաղարեամբ, ինչ որ պիտի ըսես, և թող որ ամուսինդ հանդարտի պնդելէն առաջ։ Եռանդուն ես, և գիտեմ թէ այդ բան քեզ դժուար պիտի լինի. բայց տնական խաղաղութեան պահպանման համար, ոչ թէ այս փոքր զոհողութիւնն, այլ աւելի մեծերն ընել կ'արժէ։ Հա՞րկ է միթէ ըսել քեզ թէ պէտք է որ համբերութեամբ և գորովանօք խնամես զանի իր հիւանդութեանց ատեն, սփոփես զանի և օգնես նմա իր վշտաց մէջ, վերջապէս անոր հետ ի միասին ուրախանաս և տրտմիս։

Մանաւանդ անոր նկատմամբ ծածկամիտ և ստախօս մի՛ լինիր։ Այս անմտութիւններ կը բառնան վստահութիւն և բարեկամութիւն՝ որք պարտին տիրել առն և կնոջ մէջ։ Լաւ է որ խոստովանիս անկեղծօրէն, եթէ մեծ կամ փոքր անյաջողակութիւն մի գործած ես, հոգ չէ որ ծանր խօսքեր լսես, քան թէ այնպէս երեւնաս որ ամուսնոյդ վստահութիւնը չարաչար կը գործածես։ Մի՛ տրտնջար անոր նկատմամբ բարեկամուհեացդ և դրացուհեացդ հետ, նոյն իսկ եթէ իրաւացի ըլլան տրտունջներդ։ Այն կիներն՝ որ ամէն մարդու կը պատմեն իրենց ներքին խռովութիւններն, կը թերանան սիրոյ, արժանաւորութեան, և մեծարանաց մէջ, զորս պարտին իրենց ամուսնաց։

Եթէ ամուսինդ ազգականներ ունի, ջանա՛ անոնց

*սիրոյն արժանանալ։ Անոր ծնողաց նկատմամբ ակնածութիւն և յարգանք ցցուր, բարեկամութիւն և եղբայրական սէր անոր եղբարց եւ քերց նկատմամբ։*

*Վերջապէս անձնուէր ըլլալ, հնազանդիլ, սիրել և մոռնալ զանձն. ասոնք պէտք է ըլլան ամուսնացեալ կնոջ մը դերն անոր նկատմամբ, զոր աստուածային և մարդկային օրէնքներ իրեն տէր պարգեւած են։ Երկրորդ Նամակի մը մէջ պիտի խօսիմ քեզ որդւոցդ համար ունեցած պարտքերուդ մասին։*

---

Լաւ խնամել իւր փոքր տղան, սնուցանել զանի, մաքուր պահել. ահա բարի մօր մը եռանդեամբ կատարելու աշխատութիւնը։

## *Բ. Նամակ։*

*Տղայք կը լինին յաճախ այնպէս, ինչպէս կը պատրաստեն զանոնք իրենց ծնողք։ Մտածէ՛ անգամ մը, սիրելի՛դ իմ Գեղանոյշ, թէ ի՛նչ պատասխանատուութիւն ունին հայր ու մայր։ Ոչ թէ միայն զաւակաց մարմինն է, զոր պէտք է զարգացնեն և ի չարէ պահպանեն, այլ մանաւանդ անոնց հոգին, անոնց միտքն, անոնց բարոյականն ուշադրութեան պէտք է առնուն։*

*Հայր մը իւր խղճով, և նոյն իսկ օրէնքով պարտի տալ իր տղուն ապաստան, սնունդ և հագուստ ոչ նուազ պարտի կրթել և կազմաւորել հոգին և սիրտն այն փոքրիկ արարածին՝ ում կեանք նուիրած է։ Մայրն նոյն պարտքերն ունի. անոնց վրայ կ՚աւելնան մայրութեան պարտքերն ևս։ Լաւ խնամել իւր փոքրիկ*

տղան, սնուցանել զանի, մաքուր պահել, հսկել անոր վրայ, որպէս զի զանի զերծ պահէ հիւանդութենէ, երբ բոլորովին մատաղ է. այսօքիկ են այն պարտքերն զորս ամէն բարի մայրեր հեշտեաւ կը կատարեն հակառակ իրենց կրած յոգնութեանց։ Բայց բոլորն այս չէ։ Հայրը դուրսն է շատ անգամ իւր աշխատութեան, իւր արհեստին պատճառաւ. չունի ժամանակ և ոչ համբերութիւն իւր զաւակաց դաստիարակութիւնը ուղղելու։ Ուրեմն մօրը կը վերաբերի այս գործին մեծագոյն մասը։ Նա կարող է կանուխէն ատոր ձեռնարկել, վասն զի կարելի է տղայ մը վարժեցնել անոր առաջին տարիէն իւր ծնողքը յարգելու և անոր հընազանդելու։

Խնամով հսկէ՛ այն փոքրիկ իմացականութեանց վըրայ՝ որ աշխարհք կը մտնեն և քեզ յանձնուած են։ Դու պիտի սորվեցնես նոցա բարին չարէն զանազանել, դու պիտի սորվեցնես սէր և երկիւղ Աստուծոյ, բարութիւն, հնազանդութիւն, կամարարութիւն, վեհանձնութիւն. ատում պիտի ներշնչես ստութեան և ամէն խարդախութեան դէմ։ Եւ յետոյ դու ես որ պիտի ճանչցնես և կատարել տաս նոցա առ Աստուած, առ ծնողս, առ նմանիս, նոյն իսկ առ ինքեանս ունեցած պարտքերը. Քու մեծ պարտքդ է չարին անոնց մօտենալն արգիլել կարելի եղածին չափ և ջանալ որ անոնք կարենան դիմադրել չարեաց. աւելի մեծնալով այլ ևս քու հսկողութեան տակ չըլլան։ Ուրեմն աշխատէ՛ հեռի պահել զանոնք չար օրինակներէ, յոռի բարեկամներէ, գէշ խորհուրդներէ, վատթար ընթերցումներէ, անպիտան խօսքերէ, և որովհետեւ չես կրնար յուսալ թէ անոնք պիտի վարեն կեանք առանց այդ բաներուն հանդիպելու, զարգացո՛ւր անոնց մէջ

բարոյական քաջութիւնն, ուղղամտութեան և ընտանեկան պատուոյ զգացումը։ Շահէ՛ անոնց վստահութիւնը ներողամիտ բարութեամբ, այլ մի՛ մոռնար թէ հօր և մօր պարտական հնազանդութիւն և յարգանք ընտանիքի խարիսխն են։ Բարութիւն և հաստատամտութիւն անհաշտ չեն բնաւ միմեանց հետ։ Այս երկուքին միացումը կարեւոր է տան կառավարութեան մէջ։ Կան ծնողքներ այնքան դաժան և խստապահանջ, որ կը յուսահատեցնեն իրենց որդիքը. սոքա ևս կը փախչին հայրենի տունէն, ստահակներ կը լինին։ Նոյնպէս չփացած, անխնամ տղայք, որոնք բոլորովին իրենց կրից և նանրասիրութեան թողուած են, ուր ուրեմն կ'անպատուեն իրենց ընտանիքը, նոյն իսկ իրենց անձերը։

Եւ սակայն թերութեանց երեք չորրորդ մասը, որոնք հօր և մօր մեծ վիշտ են, անոնց տկարամտութենէն առաջ կուգան։ Տղայ մը՝ որ լաւ սկզբնաւորութիւն կ'ունենայ, և հսկողութիւն կ'ըլլայ անոր, լաւ ճամբու մէջ դրուած կառախումբի կը նմանի։ Նա ուղղակի կ'երթայ, և կը հետեւի իրեն տրուած մղման։ Անշուշտ պէտք է հաշուի առնուլ բնական թերութիւնները. բայց երբ մայր մը խելացի է, անվեհեր, ամէն բան իւր որդւոց բարութեան կ'ուղղէ. կը մտրակէ դանդաղը, քիչ մը կը սանձէ աշխոյժը, զբաղում կուտայ գործօն բնաւորութեանց, մեղկ բնաւորութիւններին յաշխատութիւն կը գրգռէ, կը հետամտի լաւագոյնը գտնելու, և երբ գտնէ, զայն կը գործադրէ։

Մատաղ հասակի մէջ կան թերութիւններ, որք զարգուն հասակին կերպով մը ինքնին կ'ուղղուին։ Ասոնց կարգէն են անհանդարտութիւն, բարկութիւն, հետաքրքրութիւն, որկրամոլութիւն, անհնազանդու-

թիւն, դժկամակութիւն։ Խաղամոլութիւն և արբեցութիւն պէտք է խստիւ արգելուին։ Լաւ է շատ կանուխէն տղայոց սոսկում ազդել այս երկու աղետալի կրքերու մասին։

Աճաւոր թերութիւն մի, որուն ներել անհնար է, ստութիւնն է։ Ճշմարտութիւնը սրբազան բան մ՚է։ Պէտք չէ նոյն իսկ դոյզն բանի համար զայն այլայլել։ Տղոց մի փոքր ստախօսութեան անգամ մի՛ հանդուրժեր, նոյն իսկ եթէ իբր կատակ զրուցուած ըլլայ։ Անոնց արհամարհանք ներշնչէ ստութեան համար. մի՛ թողուր որ իրարու նկատմամբ ստախօս ըլլան. երբ այդպէս բան մը պատահի, յանդիմանէ՛ զանոնք, անոնց ըսելով թէ մեծ յանցանք մ՚է։ Եթէ անոնք գործած են որ և է անյաջողակութիւն մը, մեծ կամ փոքր սխալ մը, և գան քեզ անկեղծօրէն խոստովանիլ, մի՛ յանդիմաներ զանոնք։ Այս կերպով անկեղծութեան կը վարժուին անոնք։ Գաւաթ մը կոտրել կամ դանակ մը կորսնցնել մեծ վնաս մը չէ. մինչդեռ ստելն մեծագոյն չարիքն է։ Ընդհակառակն երբ կը տեսնես որ անոնք կը ստեն, պատժէ՛ զանոնք անմիջապէս և խստութեամբ։

Նոյնպէս խիստ եղիր այն փոքր գողօններուն համար՝ որոց կը վարժին երբեմն տղայք իրենց դպրոցական ընկերներուն հետ. գրիչ, թուղթ, մատիտ, ասեղ կը գողնան իրենց քովիններէն, կամ խնձոր, կեռաս, խաղող կը գողնան իրենց դրացիներէն։ Ցաճախ կ՚ըսուի. է՛հ, ասոնք անառակութիւններ են, մեծ բաներ չեն։ Կը սխալի՛ն։ Այս անառակութիւնները կ՚այլայլեն փափուկ զգացումներն, և գնտակներ գողցող տղան օր մը եւս հօրմէն կամ պաշտպանէն ստակ կը գողնայ։ Խաղի մէջ խաբել, փոխ տրուած ստակը չի

տալ, փոխ առնուած բաները չյանձնել, ասոնք անպարկեշտութիւններ են։ Եթէ կ՚ուզես որ քու տղայքդ խղճի մտօք պարկեշտ ըլլան, մի՛ թողուր որ իյնան այս փոքր թերութեանց մէջ։

Մի՛ քաջալերեր երբեք յոռի կատակները, այն գէշ խաղերը՝ որոնք կ՚ըլլեն միմեանց, չար խօսքեր, նենգամտութիւններ։ Այն ընտանիքներն՝ որք այս սովորութիւններն ունին, կ՚արհամարհուին իրենց բոլոր դրացիներէն։ Նոքա չունին ոչ բարեկամ, ոչ վարկ. և ակնկալելի մարդասիրութիւն, և արդարութիւնը այսպէս կը պահանջէ։ Արգիլէ՛ քու տղայքդ զիրար նախատելէ, զիրար ծեծելէ, իրարու մէջ մատնութիւն ընելէ. չգիտցուիր թէ ո՞ւր կրնան տանիլ երիտասարդութեան մէջ առնուած այս գծուծ և գէշ բարքերն։

Պէտք չէ միայն ուրիշին անձնականութիւնն, համբաւը, ստացուածքը յարգել, այլ նաև իւր անձն յարգել։ Բարի մայր մը շատ արթուն է այս մասին և խստութեամբ կ՚արգիլէ ամէն անպատեհութիւն։ Նա չթողուր որ իւր զաւակները վազեն անպատկառ, կիսամերկ, աղտեղութիւն ընեն ուզածնուն պէս, և ոչ անհաճոյ շարժումներ։ Մարդ այսպիսի թերութեանց մէջ իյնալով կը կորսնցնէ մարդկային արժանապատուութեան զգացումը, և վայրենութեան մէջ կ՚իյնէ։

Քու դստերացդ համար մանաւանդ աւելցուր խըստութիւն։ Թող քենէ կարելի եղածին չափ քիչ հեռանան, և շատ վստահելի անձանց միայն յանձնէ՛ զանոնք։ Ցորչափ անոնք դպրոց երթան, անոնց վրայ հսկողութիւն ընել դիւրին պիտի ըլլայ քեզ։ Բայց երբ անոնք մեծնան, անոնք աջ ու ձախ պիտի ուզեն երթալ բարեկամուհեաց հետ։ Այդ բանին պէտք չէ հանդուրժես։ Շատ մատաղ աղջիկներ այս կերպով

կորսուած են։ Պէտք չէ թողուս որ այդպիսի ունակութիւն մը գտնուի իրենց վրայ։ Վասն զի անգամ մը մարդ տեղի տալու տկարութիւնն ունեցած ըլլայ, այնուհետեւ ամէն անգամ որ մերժել հարկ ըլլայ, կըռիւներ տեղի կ՚ունենան։ Սակայն բնական է որ երիտասարդութիւնը սիրէ զբօսնուլ, և բարի ծնողք պէտք չէ այս մասին ծայրելի հանդիսանան։ Եթէ քու տըղայքդ փափաք ունենան որ և է հանդիսի երթալու, ուր դու կրնաս զանոնք առաջնորդել առանց անպատեհութեան, հոն գնա՛ անոնց հետ։ Գէշութիւն մը չկայ յայնմ երբ քու աղջիկներդ պարեն քու աչացդ տակ իրենց եղբայրներուն և քեզի ծանօթ երիտասարդաց հետ. մեծ անպատեհութիւնն այն է, երբ առանց քեզ՝ ժուռ գալու երթան անոնք, ո՞վ գիտէ ո՛ւր, կենան ո՞վ գիտէ ո՛րու տուն, և ծանօթանան անոնց՝ որք կրնան զանոնք չարին առաջնորդել։

Պիտի ըսեմ նաև ընթերցանութեանց համար։ Թող քու տունդ չտեսնուին այն լկտի գրքերն, կամ պարզապէս անմտօրէն գրուած գրքերն, որք երիտասարդութիւնը կը մոլորեցնեն, և կը հաւտացնեն անոնց հազարումէկ յիմարութիւններ։ Մինչեւ իսկ եթէ բոլորովին անբարոյական ալ չըլլան, դարձեալ ադոնք վնասակար կրնան ըլլալ, եթէ մատաղ աղջիկը զզուեցընեն իւր հանապազօրեայ պարզ կեանքէն, և անոր մտքին մէջ դնեն աշխարհի վրայ բոլորովին սուտ եւ չափազանցեալ կարծիքներ։ Իրական կենաց մէջ չի կան այնչափ մեծ ոճիրներ, որչափ այդ գրքերուն մէջ կը պատմուին, ոչ այնչափ մեծ զուարճութիւններ, ոչ այնչափ կատարեալ դիւցազներ, և ոչ այնչափ սրտաշարժ դիւցազնուհիներ։ Եթէ դուն ուրեք պատահի այնպէս, բոլորովին բացառութիւն մ՚է։

*Կը գտնուին այժմ գրեթէ ամենուրեք լաւ գրքեր, որք այնքան շահագրգիռ են և կրնան բարձրաձայն կարդացուիլ ընտանեաց մէջ: Ընտիր ընթերցումներ միտքը կը լնուն և այնպէս կ'ընեն որ այլ ևս զզուելի կը գտնան անհամ և թշնամական բամբասանք և չաղփաղփութիւններ:*

*Այս թերութեանց մին է որուն կը միտին աւելի մատաղ աղջկունք. միւս թերութիւններն են պչրանք, որկրամոլութիւն և ծուլութիւն: Բարի մայր մը այս ամենուն կը յաղթէ հաստատամտութեամբ, քաղցրութեամբ և ողջմտութեամբ: Եւ յետոյ լաւագոյն ուսումն, կը տեսնե՞ս, քու ընծայելիք բարի օրինակն է: Այնպէս բարի, այնպէս արդար, ճշմարտախօս, անաչառ եղիր, որ քու տղայքդ քեզ նային հիացմամբ: Անոնց համար եղի՛ր այն ամէն բարեմասնութեանց կենդանի օրինակն, զորս կ'ուզես որ ունենան անոնք: Այդ յատկութեանց արժանիքը շատ լաւ պիտի հասկընան, եթէ անոնք ամէն օր անոնց բարերար ազդեցութիւնը զգան: Այն ատեն դու անոնց համար պիտի լինիս տեսանելի նախախնամութիւն մը, և անոնց սէրն ու մեծարանք հարիւրապատիկ պիտի փոխարինեն քու կրած նեղութեանցդ:*

*Իւր որդիները երջանիկ և իմաստուն տեսնել, ահա այն քաղցր վարձքը՝ զոր մայր մը աշխարհի վրայ կրնայ ստանալ:*

---

**Կարգապահութիւն, մաքրութիւն, աշխատութիւն բարգաւաճման կարեւոր պայմաններն են:**

*Նամակ Գ.*

*Սիրելի՛դ իմ Գեղանոյշ,*

*Աշխատութիւն, կարգապահութիւն, խելացի տընտեսութիւն աշխատասէր ընտանիքի մը համար բարգաւաճութեան կարեւոր պայմաններն են։ Ես զքեզ կանուխէն աշխատութեան վարժեցուցի․ այն քեզ համար երկրորդ բնութիւն մը եղաւ։ Դու չպիտի կրնաս ապրիլ առանց աշխատելու, և քու ընտանիքդ լաւ ևս զարգացնելու համար պէտք է շարունակ աշխատիս։ Քեզ սորվեց[illegible]ցած եմ բաժնել աշխատութիւնը եղանակաց համ[illegible]մատ․ փորձառութիւնը աւելի պիտի հըրահանգէ զքեզ։*

*Թող* կարգապահութիւնը *քու կենացդ ամենամեծ հոգերէն մին ըլլայ։ Ցորչափ մարդ քիչ բան ունենայ, այնչափ կարգապահութեան սովորոյթներն մեծ պէտք ըլլան։ Բան մը գտնելը մի՛ թողուր, և դուն ապահով պիտի ըլլաս բան մը չկորսուելուն։*

**Ամէն բանի համար տեղ մը, եւ ամէն բան իր տեղը.** *Այս բանը միշտ կրկնէ՛ դու, և ոչ միայն զայն կրկնէ, այլ և գործադրութեան մէջ դիր․ կարգադրէ՛ կարասիներդ աչաց հաճելի եղանակաւ, որչափ կարելի է, մանաւանդ առօրեայ գործածութեան համար դիւրին։ Կախէ՛ խոհանոցի պղնձէ անօթներդ պատին դէմ հորիզոնական դիրքով գամուած իւղաններու տախտակի վրայ, սպունգով պէտք է մաքուր պահես զանոնք․ դարանին մէջ շարէ՛ անօթները և սանդ նպարները*

տուփերու մէջ դիր ։ Մի՛ թողուր որ աւելցուք միայն պնակներու մէջ, հացի օթեկ կեղեւներ դարանի մէջ, բանջարեղէններ կողովին մէջ ։ Ասոնցմէ կրնան կերակրուիլ անասունք, կատուք, շունք, հաւք, այծք, ճագարք. իսկ եթէ այդ կտորները այնպէս թողուս, պահարանները կ'աղտոտին և կը խափանուին ։ — Եթէ չունիս մութ խորշ մը՝ աւելները, խողանակները, փետրաւելները, ջնջանները, ևլն, դնելու համար, վերջապէս ամէն ինչ որ մաքրութեան կը ծառայէ, գետնէն վեց ոտնաչափ վեր տախտակ մը դիր՝ ուր պիտի կրնաս դնել տուփեր և ծրարներ ։ Պէտք է մինչեւ գետինը իջնող վարագոյր մը կախել երկաթէ գաւազանէ մը, որուն ետեւ կը ծածկուին բոլոր անգործածելի անօթներ և նոյն իսկ արկղներ՝ որ պարունակեն հանքածուխ, տաշեղներ և բանջարեղէններ, ևլն ։ Երբ անօթները չարուին, վարագոյրը կը քաշուի եւ ամէն բան կարգին կ'ըլլայ ։

Արթննալուդ պէս անկողինդ շտկէ՛, և ստիպէ տղաքներդ՝ որ իրենցը շտկեն ։ Թող անոնք չբաւականանան գործը շուտ տեսնելու համար, անկողինը ծեծել, սաւաններ քաշել, և վրան վերմակ դնել ։ Պէտք է դարձունել անկողինը, խոտէ անկողինը ցնցել և թօթուել սաւանները, որպէս զի անկողինը օդ առնէ ։ Պառկելու համար, նայէ՛ որ տղաք հանուին փութով և յիմարութիւններ չընեն, իրենց զգեստները ծալլած դնեն, իրենց անկողնոյն ոտքի կողմը աթոռի մը վրայ, և իրենց ոտքի ամանները սենեկէն դուրս ։

Թող միշտ աղտոտ ճերմակեղէնդ ըլլայ վերնայարկըն կամ գոց սնտուկի մէջ, մի՛ թողուր որ աղտեղի բան մը ըլլայ սենեակներուն մէջ. բացարձակապէս այդ կը պահանջեն առողջութիւն, կարգաւորութիւն

և պատշաճութիւն։ Իսկ մաքուր ճերմակեղէնն, երբ լուացքէն դարձած է, վերստին երկաթով ողորկելէ առաջ խնամով քննէ՛ ամէն կտորները, ծածկուած կողովի մէջ դի՛ր բոլոր անոնք, որք նորէն նորոգուելու պէտք ունին, ծածկէ՛ միւսները հին սաւանով, որպէս զի երկաթով ողորկուելէ առաջ չաղտոտին։

Կարկըտելու համար սկսէ՛ ամենէն փոքր նորոգութիւններէն։ Այսպէս կողովը շուտով պիտի պարպուի։ Պաստառներուն բացուած տեղերը կցէ՛, կտորներ դի՛ր ծակծըկած պաստառներուն. Թել թել քակուած խըծիպները նորէն չինէ՛, նորէն կարէ՛ պակսած կոճակները, կապիչները, ժապաւէնները։ Բայց ժամանակ մի՛ անցուներ շատ հինցած ճերմակեղէնը կարկտելու, որ չի կրնար ընդունիլ նոր կտորներ։ Պէտք է շարել իրարու վրայ աղէկ լուացուած հին ճերմակեղէնը մաքուր պարկի մէջ, որպէս զի հիւանդութիւն պատահած կամ ողորմութիւն տրուած ատեն առնուի։ Լաւ կարգաւորուած ճերմակեղէնով դարան մը բարի տանտիկնոջ մը փառքն է։ Զոյգ զոյգ լաւ ծալլուած սաւանները, անձեռոցները, ջնջանները, գոգնոցները, մարմնոյ ճերմակեղէնները, քառակուսի ուղիղ բարդերով՝ իրեն պարծանքն են։ Պէտք է դնել կտաւեղէններուն վրայ չոր հուսամի փնջիկներ և հիրիկի արմատներ, որոնք կուտան անոնց լաւ, առողջարար և հաճելի հոտ մը։

Կտաւեղէնի լաւ դարաններու մէջ կայ բանալիով գոցուած գզրոց մը։ Ապահով փականք մը սուղ չէ, և դիւրաւ կը դրուի այս գզրոցին։ Հոն կը շարուին դըրամ, փոքր գոհարեղէններ, ընտանիքի արծաթեղէնքը, և թուղթերը. ծննդեան, ամուսնութեան և մըկըրտութեան վկայագրերն. ուսմանց վկայագրեր, խը-

նայողական արկղի գրքոյկներ, մուրհակներ և արժէթուղթեր, ևլն, ամէնքն ալ ստուարաթղթէ տուփի մէջ զետեղուած։ Երկրորդ ստուարաթղթէ տուփ մը պէտք է պարունակէ տուրքի, ապահովագրութեան, տան վարձուց անդորրագրերն. վերջապէս բոլոր թըղթերն՝ որ կարևոր են լաւ կարգաւորեալ տան մը մէջ պահելու։ Պէտք է որ բանալին դրուի լաւ ընտրուած ծածուկ խորշի մէջ, որ պէտք է ծանօթ ըլլայ ամուսնոյն և կնոջ միայն։ Դարանին վերի կողմն կրնաս դընել բեղույրի ստուարաթղթէ տփեր, հին ճերմակեղէնի պարկը, ուրիշ պարկ մը՝ որ կը պարունակէ կարկատելի առտնին զգեստներու կերպասի կտորուանք. ուրիշ պարկ մ՚ալ ուր կը դրուին ձևուած ճերմակեղէնի նոր կտորուանք, այսինքն կտաւի, աստառցուի, ասուեակի, արքենւոյ պատառիկներ՝ որ կ՚իյնան նոր ճերմակեղէն մը ձևելու ատեն։ Տան մը մէջ այս ամէնը իւր օգուտն ունի։ Բայց թող այս նախազգուշութիւնք անկարգութեան չի դառնան, և չի դարձունեն փերթաքաղի խանութ մը. Նոյնպէս պահէ՝ դարանիդ մի անկիւնը մի արկղ՝ որ պիտի ծառայէ քեզ իբրև փոքր դեղարան։ Այսպէս ձեռքի տակ պիտի ունենաս վէրք կամ արկած պատահած ժամանակ ամէն ինչ՝ որ քեզ օգտակար պիտի ըլլայ։

Թող միշտ կախուած և վարագուրով մը ծածկուած ըլլան քու վերարկուներդ, հրջազգեստներդ, քու որդւոցդ և ամուսնոյդ զգեստները. եթէ ասոնք դարանի մէջ չըլլան, քիչ ծախքով ընտիր ձորձակալներ կը շինուին փոքրիկ փայտէ ձողով մը, որուն մէջ օղագլուխ գամ մը կը գամուի. պէտք է անցունել առասան մը այն գամին օղակէն և ամէնն ճանկաւոր գամերով տախտակէ մը կախել։ Այսպէս կախուած հագուստ-

ներ պատռուելու վտանգէն ազատ կ'ըլլան և դամբրէ կախուածներու նման ձեւերնին չեն կորսնցներ։ Երբ հագուստները բոլորովին անգործածելի են, և կարելի չէ ներսը դուրս դարձունել կամ նորոգել որևէ կերպով, զանոնք աղքատաց տուր. այս կերպով դու երջանիկ պիտի լինիս սփոփելով թշուառներն, թէև մեծ հարստութիւն չունենաս։ Կարգաւորութիւն և խնայողութիւն ի միասին կ'երթան. մին միւսը կ'առաջնորդէ, և երկուքն լաւ տուներ կը կազմեն։

Ամուսնանալուդ պիտի բերես լաւ օժիտ, քիչ մը կարասի, և ունեցած դրամդ։ Եթէ ամուսնանաս բարի գործաւորի մը, կոկիկ մարդու մը հետ, որ վարժ ըլլայ իւր արհեստին կամ պաշտօնին մէջ, ձեր երկուքին շահածովը ապրելու համար պէտք եղածէն քիչ մը աւելի բան մը պիտի ունենաք, և որդիներ ծնանելէ առաջ դուք պիտի կրնաք ձեր տունը կահաւորել տակաւ և նոյն իսկ դրամ դնել խնայողական արկղն։ Սակայն այս բանը համեստօրէն և խաղաղիկ ապրելու պայմանով կ'ըլլայ անշուշտ. բայց ապահով եղիր թէ երջանկութիւնը պէտք չունի ոչ պերճանաց, և ոչ աղմկալից զուարճութիւններու։ Ուրեմն նախ և առաջ ձեր հաշիւն ըրէք, մերձաւորապէս հասկընալով թէ ի՞նչ պիտի ծախսէք հացի, մսի, ըմպելեաց, սննդեան, լըւացքի, տաքնալու, եւայլնի համար։ Աւելի յստակ մըտօք ըսելով, շինեցէք ձեր ելևմտացոյցը այսպէս.

## ՄՈՒՏՔ

Շահ ամուսնոյ

| | | |
|---|---|---|
| Ամսական | 150 Ֆր. | |
| Տարեկան | 150×12 | 1800 |

Շահ կնոջ

| | | |
|---|---|---|
| Ամսական | 50 | |
| Տարեկան | 50×12 | 600 |
| Զանազան հասոյթք | | 200 |
| Համագումար | | 2600 |

ԵԼՔ

| | | |
|---|---|---|
| Տան վարձք | Փր. | 250 |
| Տուրք | | 10 |
| Ըմպելիք | | 250 |
| Սնունդ | | 950 |
| Լուսաւորումն | | 30 |
| Ջերմութիւն | | 50 |
| Լուացումն | | 60 |
| Ամուսնոյ զգեստք | | 150 |
| Կնոջ զգեստք | | 100 |
| Կարասեաց ծախք | | 50 |
| Զանազան ծախք | | 200 |
| Համագումար | | 2100 |

Այս ընելէ յետոյ այնպէս մը կարգադրեցէք ձեր կենցաղավարութիւնն, որ ծախուց կողմը նուազ ըլլայ քան մուտքի կողմը. որովհետեւ պէտք է հաշուի առնուլ հիւանդութեան օրեր, գործադուլներ, արտասովոր ծախքեր։

Եթէ ամէն ամիս ամէն ինչ վճարելէ յետոյ ձեզ փոքր գումար մը մնայ, առանց վարանման դիր խնայողական արկղը։ Մտիկ մի՛ ըներ անոնց՝ որ կ'ըսեն. պզտիկ գումարի մը համար նեղուիլ չարժեր։ Մինչեւ իսկ եթէ միայն հինգ Փրանք ունենաս մնացորդ, տա՛ր զայն. այս կերպով զայն ըստ հաճոյս վատնելէ փրկած պիտի ըլլաս, եւ հինգ հինգ Փրանքով խնայութեանց գրքուկիդ մէջ բաւական կլոր գու-

մար մը պիտի նշանակուի։ Տարուան վերջը մուտից և ելից ճիշդ հաշիւը տե՛ս, որպէս զի գիտնաս թէ արդեօք չափէն աւելի չէ՞ կենացդ համար ըրած ծախքդ, կամ թէ արդեօք կարօ՞ղ ես ամէն տարի դարձեալ փոքրիկ գումար մը աւելցնելով հանդերձ աւելցնել նաև քիչ մը առտնին բարեկեցութիւնդ, կարասիքդ կամ հանդերձեղէնքդ։

Երբ քու տղայքդ քեզ հասկընալու չափ բաւական մեծ ըլլան, մի՛ վախնար որ անոնք քու այս տեսակ փոքրիկ գործերուդ տեղեակ ըլլան։ Կան մարդիկ՝ որ կ՚ըսեն. Պէտք չէ այս ամէն բաներով տղոց միտքը նեղել։ Հաւատա՛ թէ կը սխալին։ Պարկեշտ և ժրաջան ընտանիքի մը մէջ ամէն անդամ պէտք է մասնակից ըլլայ հասարակաց շահու վերաբերեալ բաներու։ Առանց տղոց միտքը իրենց հասակէն վեր հոգերով անհանգիստ ընելու, կարելի է վարժեցնել զանոնք տակաւ հասկընալու թէ իրենց ուտեստը, հագուստները, գրքերը, խաղալիքները ինքնին չեն գար. թէ անոնց համար վճարուած դրամը հօր և մօր աշխատութեան պտուղն է, թէ կան օրեր յորս դրամը սակաւագիւտ է, թէ պէտք է խնայել, և թէ բարի և անձնուէր տըղայ մը պարտի կարելի եղածին չափ շուտ շահելու վիճակին մէջ ըլլալ իւր ծնողաց օգնելու համար։ Սկիզբը ըսի. խելացի խնայողութիւն մը։ Արդարեւ պէտք չէ շփոթել խնայողութիւնն՝ որ լաւ բան մ՚է, ագահութեան հետ՝ որ անարգ բան մ՚է։ Խելացի խնայողութիւն մը պէտք չէ դպչի ոչ առողջութեան, ոչ մաքրութեան, ոչ գթոյ։ — Այսպէս կարելի է խնայողութիւն ընել փափկակերութեան, [illegible]մոլութեան վրայ, բայց ոչ ընտանեաց ուտեստի բանաւոր որակին և քանակին նկատմամբ։ Գէշ սնունդ առած

այր մը և կին մը չեն կրնար աշխատիլ ոչ լաւ և ոչ շատ, և շատ դժուարաւ կը հանդուրժեն իրենց մի-ճակին յոգնութեանց, որով հիւանդութիւնք կը հաս-նին և կ'աւերեն տունը։ Հին առած մը կ'ըսէ. Բժշկի երթալէն առաջ լաւ է ջաղացք երթալ։

Մաքրութեան մասին խնայողութիւնը գարշելի եւ վնասակար բան մ'է։ Աղտոտ լաթ հագնիլ, ծակ կօ-շիկներ, խուղոտ հագուստներ կրելն անձին արժանա-պատուութեան թերանալ է, վնասել է իր առողջու-թեան, իր զարգացման, և բարի անուան՝ զոր պար-տի պահել իր ընտանեաց համար։—Վերջապէս խնայո-ղական սպառուակաւ պէ՞տք է միթէ խստասիրտ լի-նել իր նմանեաց, մերժել հաց կամ պնակ մը ապուր թշուառի մը՝ որ անօթութենէ կը տառապի, կամ ծա-խել քիչ մը ստակի փոխարէն հին հագուստներ, որ դեռ ևս կրնան ցուրտի դէմ պաշտպանել կիսամերկ փոքր թշուառ տղայք։ Ո՛չ, սիրելի՛դ իմ Գեղանոյշ, չը-գոցենք երբեք մեր սիրտը այլոց տառապանաց դէմ։ Մենք ամէնքս ալ եղբայր ենք, ամէնքս ալ որդիք նոյն Հօր՝ որ երկինքն է, և պարտինք միմեանց օգնել այն ամէն տուայտանաց մէջ, որոնցմով աշխարհի կեանքն լցուած է։ Միթէ միևնոյն տառապանաց մենք ալ են-թակայ չե՞նք։ Ամենէն մեծ հարստութիւնք յանկարծ կը կործանին. խորհէ՛ թէ մի քանի ամսուան մէջ ճա-խողութիւնը կամ մահն յո՛ր վայր կրնայ իջեցնել ամէ-նէն բարգաւաճ տուն մը։ Չեմ ուզեր այս դառն մը-տածմանց վրայ երկարաբանել. բայց միայն կ'ուզեմ ցուցնել թէ լաւ է երբեմն անոնց վրայ մտածել։ Ա-նոնք կը սորվեցնեն խոհեմութիւն երջանիկ օրերու մէջ, և կը պատրաստեն անտրտունջ հպատակութիւն և քաջութիւն դժնդակ օրերու համար։

*Այս նամակին կ'աւարտեմ այն պզտիկ պատմութեամբ, որ ի դէպ պիտի գայ ցոյց տալ թէ մինչեւ ո՛ւր կրնայ տանիլ պզտիկ բաներու մասին անփութութիւնը։*

Բաց դրան մը վտանգը եւ խնայողութեան դաս մը։

*Կը յիշեմ թէ գիւղն եղած ատեննիս, տեսայ օրինակ մը այն փոքրիկ վնասուց, որոց կ'ենթարկուի տուն մը անփութութեան պատճառաւ։*

*Առ ի չգոյէ չնչին դռնափակի մը հաւբակի մը դուռըն՝ որ դաշտաց վրայ կը նայէր, յաճախ բաց կը մնար։ Ամէն ելնող դուռը կը քաշէր, բայց զայն գոցելու համար, արտաքին որեւէ միջոց չըլլալով, դուռը բացխփիկ կը մնար։ Հաւբակին անասուններէն շատերը այս կերպով կորսուած էին։*

*Օր մը մատաղ և գեղեցիկ խոզ մը փախաւ դէպի անտառներ։ Ահա դաշտին բոլոր մարդիկ, պարտիզպան, խոհարարուհի, հաւբակի սպասաւոր աղջիկն փախչող կենդանւոյն ետեւէն հետամուտ լինելու ելան աստի անտի։ Առաջին անգամ պարտիզպանն նըշմարեց, և անոր անցքը արգիլելու համար փոսի մը վրայէն ցատկելու ատեն վտանգաւոր կերպով ճմլուեցաւ, որով տասնևհինգ օրէն աւելի յանկողին ծառայեց։ Խոհարարուհին խանծած գտաւ այն ճերմակեղէնը, զոր կրակին քով ձգած էր չորնալու համար, և որովհետեւ հաւբակի սպասուհին անասունները կապելու ժամանակ չունեցած՝ հեռացած էր գոմէն, կով մը անոր բացակայութեան ատեն քուռակի մը սրունքը կոտրեց, որ միևնոյն ախոռին մէջ կը պահուէր։ Պարտիզպանին կորուսած օրականները 60 Ֆրանքի եղան, նոյնչափ և կտաւին ու քուռակին վնասը։ Ահա այսպէս չնչին դռնափակ մը չըլլալով մի քանի վայրկենի*

*մէջ հարիւր քսան Փրանքի վնաս մը յառաջ եկաւ այնպիսի մարդոց որք շատ խնայողութեան պէտք ունէին, չհաշուելով հիւանդութեան պատճառած նեղութիւնները, ոչ անհանգստութիւն և ծախքէն դուրս եղած ուրիշ անպատեհութիւններ։ Ասոնք չէին մեծամեծ աղէտք կամ մեծ վնասներ. սակայն երբ գիտցուի թէ անզգուշութիւնն ամէն օր այսպիսի պատահարներ կը պատճառէր, և ի վերջոյ փճացուց պարկեշտ ընտանիք մը, ամէն ոք պիտի ըսէ թէ կ՚արժէր այսմասին հոգ տանիլ։*

Ժ. Բ. ՍԷՅ

---

Ազգականաց գալը, մանկան մը յաջողութիւններն ուրախութեան առիթներ են։

Նամակ Դ.

*Բարեբաղդաբար կեանքը չէ եղած աշխատութեան և հոգերու համար։ Հարսանիք, մկրտութիւն, ազգականի մը գալն, մանկան մը յաջողութիւնները ուրախութեան առիթներ են, զորս բարի ընտանեաց մէջ կը սիրեն տօնախմբել գումարումներով։ Այսպիսի պարագայի մէջ բարի ընտանիքը իւր բոլոր տաղանդը կը ցուցնէ, բոլոր տնեցիք կամաւ կ՚օժանդակեն այս բանին. մանչերը ապսպրուած բան մը կատարելու կ՚երթան, դստերք սեղանը կը պատրաստեն, տունը կը զարդարեն, ամէն ոք իւր ջանքը կը նուիրէ, եւ ամէնքն փափաքող են ընտանիքը պատուելու։ Տուներ կան, ուր բոլորովին կը շփոթին այսպիսի պարագայի մէջ. չգիտեն ո՛ւրկէ սկսիլ և ամէն ինչ ձախող կ՚երթայ։ Այնպէս մի՛ լինիր, սիրելի՛դ իմ Գեղանոյշ, պահէ՛*

*քու պաղարիւնութիւնդ դլուխդ կրակի մէջ եղած ատեն, և քու ամենօրեայ կենացդ ճշդութեան և կարգաւորութեան սովորութիւնները զքեզ չպիտի լքանեն։ Կ'ուզեմ քեզ օգնել մի քանի խորհուրդներով։*

*Նախ և առաջ պէտք է լաւ հաշուել այն փոքր գումարը, որ կարէ ծախսուիլ և զայն ողջմտութեամբ բաշխել.* այսչափ *մսի համար,* այսչափ *բանջարեղէններու և պտղոց համար,* այսչափ *աղանդերի համար,* այսչափ *գինւոյ և խահուէի համար,* այսչափ *զանազան ծախուց համար։ Մանաւանդ պէտք է զգուշանալ մեծածախ սեղաններէ և թերի պերճանքէ, ինչպէս օրինակի համար աժան գնով իշխանաձուկ գնել, որ թարմ չէ, հոտելու սկսած որսի միս, կարկանդակ, օթեկ հաստեայներ, փտած պտուղներ և գէշ ալքոլով և աղիտայով պատրաստուած Մատերայի գինի։ Այսպէս ընելով, ոչ ոք գոհ կ'ըլլայ, ոչ հրաւիրեալները, որոնց կը հրամցուին խոտելի կերակուրներ, և որք կը խնդան քու յաւակնութեանցդ վրայ, և ոչ նիւթական կարողութիւնդ, որուն վրայ կը ծանրացնես կարգէ դուրս ծախք մը։*

*Եթէ կ'ուզես քու բարեկամացդ հաճոյք պատճառել, տո՛ւր անոնց սեղան մը լաւ, խնամեալ, հանդըստաւէտ, առատ ըստ բաւականին, որմէ ամէն հանդիսական ճաշակէ, և որուն մնացորդները դեռ հետեւեալ օրն ալ օգտակար կարենան ըլլալ։ — Եղանակին համեմատ պատրաստուած պարզ ճաշացուցակներ ընտրէ՛։ — Ըմպելեաց մասին երկրիդ մէջ սովորաբար խմուած ըմպելին, այսինքն գարեջուր, խընձորօղի, կամ չանչագինի պէտք է կարելի եղածին չափ առատ և լաւագոյն տեսակէն ըլլայ։ Ամառ ատեն պէտք է զով պահել զայն։ — Լաւ գինւոյ գալով լա-*

ւագոյն է շիշ մը Պորտոյի կամ Կիպրոսի գինի առնել ընտիր վաճառատունէ քան թէ նպարավաճառէ կամ գինետունէ յոռի տեսակէն երեք շիշ գնել։ — Ճաշէն վերջ գաւաթ մը սուրճ միշտ հաճոյք կը պատճառէ, պէտք է մեծ խնամով զայն պատրաստել։ Այդպիսի օ-բերու մէջ պէտք է որ անխառն ըլլայ սուրճը։

Արք կ'ուզեն օղի եւ խառնել հանդիսին. քու դը-րամդ մի՛ վատներ այն վարդագոյն, կանանչ, դեղին յոռի դեղերուն համար, որք կը ծախուին արուեստա-կեալ ձեւով շիշերու մէջ, որք թոյն են։ — Լաւ տե-սակէն քիչ մը օղի բաւական է։ Երբ ճաշն աւարտի, Մնացորդը եթէ չես ուզեր թափել, փոքրիկ շշի մէջ կը դրուի և բերանը խնամով կը գոցուի։ Հետեւեալ օրը տանտիկինը շիշն իւր պահարանին մէջ կը դնէ։ Այսպէս ըրէ՛ ուրիշ առտնին ըմպելեաց մասին։ Մեծ անմտութիւն է ըսել, շիշը սկսուած է, պէտք է հատ-ցունել զայն։ Այս կերպով մարդ կը սովորի ոգելից ըմպելեաց և փոքրիկ որկրամոլութեանց, որ թերեւս ամենէն աղետալի սովորութիւնն է կնոջ մը համար. վասն զի այն է որ կը տանի զանի ամէն թերութեանց։ Մանաւանդ այս՝ ստակի շատ անհեդեդ վատնում մ'է։ Նոյն իսկ երբ տունէն ալ չինուի, ամենէն պարզ ըմ-պելին սուղ կ'ելնէ դարձեալ. ամէն անգամ որ սկըս-ուած շիշ մը լմնցունէք, 2 Ֆրանք պատուհանէն դուրս կը նետէք։ Եթէ այս բանը տասն անգամ պատահի տարւոյն մէջ, 20 Ֆրանք յումպէտս կը վատնուին։ 20 Ֆրա՛նք, փոքրիկ բնակարանի մը վարձքին տասներորդ մասն է, ամուսնոյ համար վեց շապիկի գինն է, կնոջ համար փոքրիկ ասուեայ վերարկուի մը, տղայոց հա-մար երկու զոյգ լաւ մուճակի, բուրդէ ծածկոցի մը, զոյգ մը սաւանի, երկաթէ մահճակալի մը, սպիտակ

փայտէ պահարանի մը, երկոտասնեակ անձեռոցի հանդերձ սփռոցով, անկողնի համար վարագոյրներու կազմածի մը, ասեղնագործութեան համար քաշ մը բուրդի, երկու քաշ·բամբակեայ թելի, ուրիշ այնքան լաւ օգտակար, հաճելի, հանգստաւէտ բաներու, որոնցմէ տանտիկին մը յաճախ ցաւով կը զրկուի. Այսպէս խոհեմ և իմաստուն ծնողք իրենց զաւակաց չեն տար ոգելից ըմպելեաց ճաշակն: Մտիկ չեն ըներ անոնց, որք կ'ըսեն. է՛, կաթիլ մը ի՞նչ վնաս ունի անոր, պէտք է մանաւանդ որ մարդ բլլայ: Մարդ լինել չէ՛, երբ շատ կանուխէն ալքոլի սովորութեան ճամբան կը բռնէ մէկը՝ որ կը լեցունէ դատարանները մուրացիկներով և անկելանոցները յիմարներով:

Ընտանեկան համախմբութեանց մէջ երբ տղայք աղանդերէ և համադամներէ իրենց բաժինն առնուն, պէտք է մեկնին սեղանէն և երթան ուրիշ տեղ մը ըզբօսնուն: Արդէն իսկ սուրճի ժամանակն է որ մարդոց գլուխը տաքցած կ'ըլլայ, լեզուները կը բացուին և այնպիսի խօսքեր կ'ըսեն՝ որ լաւ չեն գար մանկական լսելեաց:

Ամուսինք ընդհանրապէս լաւ ասպնջականութեան մը պատրուակաւ գինւոյ շիշերուն և ոգելից ըմպելեաց բաժակներու թիւը շատցնելու կը նային:

Առանց ամուսնոյն հակառակելու բարի մայրը կը հսկէ որ այս փոքրիկ հանդէսները շուայտութեան չը դառնան: Կը ջանայ արգիլել վէճերը, բանակռիւները, կրօնական պայքարները, շահու խնդիրները. շատ անգամներ պատահած է որ ընտանեկան ճաշերու վերջ այսպէս կռիւներ լինին: Պէտք չէ թոյլ տալ ազատ եւ անպատշաճ խօսքեր: Պարկեշտ կին մը պէտք է միշտ յարգելի ընծայել զանձն: Հարկ չիկայ ասոր համար ե-

րես թթուեցնել կամ մրմռալ կամ զայրագին կերպարանք առնուլ։ Ցարմար խօսք մը, լուրջ դէմք մը, ցուրտ կերպարանք մը բաւական են միշտ հասկցնելու պատշաճութեան սահմանաց մէջ պահելու համար անկիրթները։

Զամէն աւելի ընտանեկան խաղերն պէտք է մըտարուին պարկեշտ տուներէ։ Կարելի է շատ զբօսնուլ առանց իրար հրելու, հրմշտկելու, իրարու գէշ խաղ մը խաղալու, հազար անճոռնի բաներ ընելու կամ ըսելու՝ որք կը նեղեն խոհական մարդիկը, և զըւարճանալու մասին առաւելութիւն չեն ընծայեր։ Մաքուր և անվեղծ զուարթութիւն մը այնքան շշնկոցի պէտք չունի։

Մաս մը բախտի խաղ, կամ Երեսուն եւ մէկ թուղթի խաղը, մի քանի երգեր, ցուցք կամ երգեր, կամ լաւ ընտրուած գրաւ բռնելու խաղեր շատ հաճելի կերպով անցունել կուտան երեկոյթը, ապա գոհութեամբ ամէն ոք կը բաժնուի իրարմէ։

Հացկերոյթ տալու օրն առաւօտէն պէտք է սկըսիլ մաքրել և կահ կարասիքը լաւ յարդարել։ Սովորական աշխատութեան վերաբերեալ բան մը պէտք չէ թողուլ։ Ուտեստի գնումները պէտք է կատարել նախընթաց օրերը։ Երբ ամէն ինչ լաւ աւլուած է, սըրբուած, պատրաստուած, պէտք է սեղանը դնել՝ ընտիր մաքրութիւն մը անհրաժեշտ է։ Շատ սպիտակ և երկաթով ողորկեալ կտաւ, գաւաթներ, անձեռոցներ, ջինջ ապակեայ շիշեր, դանակներ, որոց երկաթը փայլեցնելու համար կաշւոյ վրայ քսուած է, խնամով ծալլուած անձեռոցներ, համաչափ դրուած սպասներ՝ սեղանին կ'ընծայեն զուարթարար և կոկիկ տեսք մը, որով կը գրաւին աչքեր, և կոչնականաց ակումբը ա-

ռաջուց կ՚ուրախացնեն ։ Ի գիւղօրէս ամէն եղանակաց մէջ կարելի է գտնել սեղանը ծաղիկներ և պտուղներ ։

Քաղաքաց մէջ դժուարին է այս ։ Բայց ծաղկանց տեղ կը պատրաստեն պտղոց բրգաձեւ կոյտեր ։ Խնձորներ, նարինջներ․ տեղ տեղ յունուար ամսոյ մէջ սուղ չեն ։ Մամուռներով շրջապատելով զանոնք և ճաշակաւ զետեղելով սեղանին մէջը կամ երկու ծայրերը, աչաց հաճելի տեսիլ մը կ՚ընծայուի ։ Ամրան ատեն կեռասներ, ելակներ, հաղարջներ, արքայամորիր իրարմէ զատ որթի տերևներու վրայ շարուած սեղանին չորս ծայրերը դրուած պնակներու մէջ, հրապուրիչ ձեւ մը կուտան, մանաւանդ եթէ զարդարանքը ծաղկեփունջով և տերևներով կատարեալ ըլլայ ։

Եթէ արծաթեղէններ չկան, աւելի լաւ է գործածել անգղիական մետաղէ սպասներ, զորս կաւիճով շփելով փայլեցնելու է քան թէ գէշ արծաթազօծ դըգալներ և պատառաքաղներ ։ Սնոտի պերճանք է, վասն զի այս սպասներ աւելի գէշ ըլլալով հանդերձ աւելի սուղ են քան թէ մետաղի բաղադրութենէ ամուր շինուած սպասներ և աւելի քիչ կը դիմանան ։

Նոյնը պէտք ըսել նաև փղոսկրէ կամ եբենոսէ կոթով դանակներու համար, որոց կարծեցեալ բերանը երկաթէ է և կոթը ոսկրէ կամ ներկեալ փայտէ, և որք շուտ կը խախտին քիչ մը հաց կտրուելուն պէս ։

Յաճախ կը պատահի որ ազգականաց և բարեկամաց մէջ փոխ կը տրուին անօթ, գաւաթներ, սպասներ, կտաւներ, ևլն, ընտանեկան սակաւաթիւ գումարմանց մէջ ։ Յիշէ՛ թէ բարի տանտիրուհի մը ամենէն մեծ խնամքը կը տանի իրեն փոխ տրուած բաներուն, և պարտի կարելի եղածին չափ շուտ ետ տալ միշտ լաւ վիճակի մէջ․ անօթը մաքրուած, դանակները յըղկուած, բաժակները և անօթները լուացուած, ճեր-

մակեղէնները լուացուած և ողորկուած ։ Եթէ որ և. է բան կոտրած է կամ կորսուած, պէտք է անոր տեղը դնել անշուշտ, և կարելի եղածին չափ նման առարկայ մը։ Վերջապէս երբ ամէն ինչ պատրաստ է և կը մնայ միայն վայելել այն փոքրիկ զուարճութիւնները, զորս տանտիկին մը պատրաստած է, արդարացի է որ ինքն եւս մասնակցի։

Մեծ զուարճութիւն է տեսնել սեղանին շուրջ բարի և զուարթ դէմքեր ազգականաց և. բարեկամաց։ Պէտք է ամենուն հոգ տանիլ, նայիլ որ ոչ ոք մոռցուի, լաւագոյն կտորներն ընծայել տարեց մարդոց կամ անոնց, որոց կ'ուզուի մեծ պատիւ ընել, բայց պէտք չէ ձանձրացուցիչ եղանակաւ մը հիւրերը ստիպել, ոչ ալ թախանձել որ ուտէ իւր սիրած մէկ կերակուրէն և կամ դարձեալ առնուլ կերակուրէ մը, զոր կը սիրեն, բայց որմէ բաւական ունին։ Վերջապէս պէտք է համոզուիլ թէ ճշմարիտ քաղաքավարութիւնը կը կայանայ իւր տունը կարելի եղածին չափ ախորժելի ընծայել հրաւիրելոց։

Երբեմն կը պատահի նոյնպէս ճաշել այլոց տունը․ պէտք չէ շատ կանուխ երթալ, որովհետեւ շատ կը նեղուի տան տիրուհին, և. ոչ ալ ուշ, զի խորովածը կը չորնայ և միւս կոչնականաց համբերութիւնը կ'ըսպառի։ Պէտք է լաւագոյն հագուիլ, վասն զի հիւրընկալները պէտք է պատուել և այսպիսի առիթներու համար է որ մարդ կը պահէ հանդիսական հագուստներ։ Եթէ տղայք ալ տարուին, պէտք է հոգ տանիլ որ մաքուր հագուած ըլլան, լաւ լուացուած, սանտրուած, ձեռներնին մաքուր, եղունգներն մաքրուած և կտրուած, սպիտակ թաշկինակ մը իրենց գրպանը։ Եթէ ձմեռ է, պէտք է որ հետ առնուն փողպատներ, ցփսի, ևն, որովհետև ճաշի մը ատեն ոգեւորուելէն

և բազմութեամբ լցուած փոքրիկ սենեակներու մէջ փակուելէն յետոյ արիւնը կ'եռայ եւ տաքէն պաղ անցնիլը կրնայ պատճառել հարբուխ, փողացաւ, ցնցղատապ, եւայլն։

Յաճախ ծնողք քիչ մը անհանգիստ կըլլան թէ իրենց տղայք ի՛նչպէս պիտի վարուին օտարականաց քով։ Ապահով եղիր որ եթէ տղայքդ վարժեցուցած ես քաղաքավարութեամբ քու տանդ մէջ պատշաճութեան, լաւ ձեւերու, դուրսն ալ նոյնը պիտի լինին, որպէս ի տան։ Տեղի չունիս վախնալու որ մի՛ գուցէ իրենց արմուկը սեղանի վրայ դնեն, մատերնին քթի մէջ խոթեն, և ձեռուընին իրենց գաւաթներուն մէջ. թէ մի՛ գուցէ պտուղներու կուտերը սկաւառակներու մէջ ձգեն բերներնուն դուրս հանելով, փոխանակ նախ իրենց ձեռաց մէջ առնելու; անախորժ ձայներ հանեն ուտելու ժամանակ, իրենց քովը նստող սեղանակիցները ձանձրացնեն։ Բարձրաձայն ուզեն իրենց առջեւ եղած ամէն բանէն կամ աղանդերք լեցունեն իրենց գրպաններուն մէջ։ Սովորաբար երես ելած տղայք երբեմն այսպիսի անմտութիւններ կը գործեն, և ծընողաց մեծ յիմարութիւն է կարծել թէ մեկնելէ առաջ խելօք կենալու երկայն պատուէրներ տալով բոլոր յոռի ունակութիւնք պիտի անհետանան իբր հըմայիւք։ Սակայն երբ տղայք խելացի և ուշիմ են, չեն ուզեր բազմութեան առջեւ իրենց ծնողքը ամըչցնել, և թէև տան մէջ քիչ մը երես առած ըլլան, ընկերութեան մէջ աղէկ կը կենան։

Երբեմն տղայք ոմանք, մանաւանդ փոքր մանչերը անճարակ և վախկոտ կ'երևան և կը մերժեն իրենց ծնողաց հետ երթալ։ Պէտք չէ մտիկ ընել անոնց, վասն զի մէկ կողմանէ շատ գէշ բան է տղայքն առանձին թողուլ, մինչեւ իսկ յանձնելով դրացեաց,

որք վստահելի կը կարծուին եւ գուցէ չեն, եւ միւս կողմանէ աղէկ բան է, մինչեւ իսկ կարեւոր է որ տըղայք եւ պատանիք ընկերական յարաբերութիւն կոչուած բանին վարժուին իրենց ծնողաց աչքին առջեւ։

— Պէտք է վարժեցնել զանոնք յաղթելու անկեղծ ամըչկոտութեան, որ ներկային մէջ ընտանեաց անհաճոյ կ'ընէ զիրենք եւ ապագային մէջ կրնայ անոնց վըրայ հրաւիրել ծանր տաղտկութիւններ։ Տղայութեան եւ պատանեկութեան մէջ է որ կ'ստացուին այն ունակութիւնք համարձակութեան, վստահութեան թէ՛ իրենց անձին եւ թէ այլոց վրայ, որովք գործերն այնչափ կը դիւրանան։ Պարկեշտ պատանի մը պէտք չէ մէկէ մը վախնայ, եւ իւր համարձակ դէմքը, իւր անխըռով, պարզ եւ սիրուն կերպերը իւր սրտին պարկեշտութիւնը պէտք է յայտնեն։

Իսկ խիղախութիւն, լըբութիւն դուն ուրեք կը տեսնուին պատուաւոր ընտանեաց մէջ մեծցած տղայոց վրայ։ Զքեզ կը ճանաչեմ, եւ չեմ վախնար որ քու աղջիկներդ կամ որդիքդ նմանին այն ստահակ պատանիներու կամ այն թեթեւամիտ պչրող աղջկանց՝ որոց նայելով խելացի մարդիկ ուսերնին կը թօթուեն, եւ համոզուած եմ որ քուկիններուդ վրայ խօսուած ատեն՝ հօր եւ մօր ականջին հեշտալուր սա խօսքերը յաճախ պիտի յեղյեղուին. Ահա արդարեւ բարեկիրթ զաւակներ։

[Թարգմ.]



# ԳԼՈՒԽ Թ.

## ԸՆՏԱՆԵԿԱՆ, ՄՏԵՐՄԱԿԱՆ, ԼՈՒՐՋ ՆԱՄԱԿՆԵՐ

**Դիտողութիւն.** — Պարզ, համառօտ, հեզ, նոյն իսկ զուարթ ոճ մը պէտք է տիրէ ընտանեկան նամակներու մէջ, սակայն-ոչ գռեհիկ կերպով. Պէտք չէ խառնուիլ *ընտանեկան* մակդիրներն։ Պատշաճ է որ գրողն իր անհատականութեան, իր լեզուին դրոշմը տայ իր այս նամակներուն եւս։

### 1. *Մայր մը առ իր դուստր։*

*Սիրելի՛ դուստր իմ,*

*Ա՜հ, զքեզ չտեսնե՜լ, և քեզ հետ խօսելու հաճոյքէն զուրկ լինել, ի՜նչ ցաւ։ Քանի՜ մեծագին է ինձ այս զոհողութիւնը. ամէն ժամ այն սէրն՝ զոր պարտիմ քեզ, կը խօսի սրտիս։ Կ'ըսեն թէ բարւոք դաստիարակութիւնն այն պատուական հարստութիւնն է զոր հայրն ու մայր կրնան տալ իրենց որդւոց. և այս է զոր ամենէն աւելի կը փափաքիմ քեզ տալ։ Վերջապէս բաժնուած եմ քենէ, բայց քաղցրիկ յիշատակներ սիրտս քեզ հետ կը պարապնդեն։ Ա՜հ, քանի՜ քաղցր էր օրուան տաղտկութիւններէն յետոյ տեսնել զքեզ՝ որ բազկացս մէջ կը թռչիս, և կ'ընդունիս գորովալից գգուանքներ, և ունկնդրել սիրելի խորհրդածութեանցդ, և լսել այն դասերը, զորս քեզ տուած եմ։ Եթէ կարելի ըլլար ինձ անձամբ ուսուցանել քեզ, հաճոյագոյն զբաղումն պիտի լինէր այդ ինձ հա-*

*մար, բայց լուրջ և հաստատուն դաստիարակութիւն մը կարելի չէ սուղ ժամանակի մէջ տալ։*

*Կը վախնայի թէ դպրոցն՝ ուր կը վստահէի, չպիտի կրնայ տալ փափաքած դաստիարակութիւնս. այժմ չունիմ այդ երկիւղն ո՛չ քու որտիդ և ո՛չ քու մտքիդ համար։ Ամէն անզբաղ ժամերուս առ քեզ գրելու պիտի գործածեմ. այդու պիտի սփոփեմ սիրտս. պիտի կարծեմ քեզ հետ խօսիլ, և այս քաղցր պատրանքը քու հեռակայութեանդ համար ունեցած վիշտս պիտի մեղմացնէ։*

*Եւ դու, աղջի՛կս, յաճախ գրէ՛, գրէ՛ ինձ, ոչ թէ իբրև մօրդ, այլ իբրև բարեկամուհւոյ՝ ուրկէ մարդ բան չծածկեր։ Հաղորդէ՛ ինձ տագնապներդ, վշտերըդ, տարակոյսներդ. կամ եթէ չունիս գրելու բան, գրէ՛ ինձ գէթ թէ կը սիրես զիս միշտ։*

[Թուական] * * *

---

2. *Պատասխան։*

*Սիրելի՛ մայր իմ,*

*Ընկալայ նամակդ. ի՜նչ հաճոյք պատճառեց ինձ այն, կարդացի, կրկին կարդացի զայն, և արցունքներովս թրջեցի։ Բայց, մա՛յր իմ, այս արցունք բառը քեզ թող երկիւղ չազդէ. ուրախութեան արտօսր է այն, զի կը տեսնէի զքեզ այնքան սիրող զիս, և ինձ մորմոքող։ Առաջին երկու օրերն այնպէս չէին, կ'արտասուէի եւ դառնապէս կ'արտասուէի, որովհետեւ կը փնտռէի ըզքեզ, և ոչ ուրեք կը գտնէի. կը յիշէի վերստին քաղցըր գգուանքներդ, որոնցմէ զուրկ էի։ Այլ, մա՛յր*

իմ, թէեւ դժուարին է բաժնուիլ քենէ, բայց կը մը-
նամ այս դպրոցին մէջ, որովհետեւ գիտեմ թէ իմ օգ-
տին համար դրած ես զիս աստ: Խոստացած ես գրել
ինծի յաճախ. միշտ թղթերդ կը համբեմ սփոփուելու
համար հեռակայութեանդ վշտերէն: Վստահաբար կը
սպասեմ տեսնել կատարումն այն խոստման, զոր ը-
րած ես նամակներդ ստէպ գրելու մասին: Վստահ ե-
ղիր հնազանդութեանս, խորհուրդներէդ օգտուելուս,
մանաւանդ այն ջերմ սիրոյն՝ որով ի սրտէ կը գրկեմ
զքեզ:

[Թուական] ***

---

3. *Մայտա առ տիկին Սիրա:*

Սահեցան օրերն և ամիսներն, ահա երկու տարի է
որ կենաց աշխատաւորներու կարգը մտայ: Պար-
տուցս սկզբան և կրօնքի մէջ գտայ ոյժս, կորովս եւ
յարատեւութիւնս: Ժամանակս նուիրեցի Յուլիանէիս
միտքն ու սիրտը կազմելու, առանց զինքը յանձնա-
պաստան ընելու և ոչ իսկ վեհերոտ: Ուզեցի որ փոքր
ի շատէ վարժի իւր անձին առաջնորդ ըլլալու. յու-
սամ թէ ժամանակը կ'աւարտէ ինչ որ ես ուրուագրեցի
միայն: Այս հոգատարութեանս մասնակցեցան նաեւ
քանի մը աղքատ աղջկունք, որոնց սորվեցուցի լեզու:
Ջանացի մանաւանդ հասկըցնել անոնց՝ կանանց պաշ-
տօնն երկրիս վրայ իբրեւ մայր: Ես այս դուզնաքեայ
աշխատութեամբս ընկերութեան կը մատուցանեմ ան-
նշան տուրք մ'իբրեւ անհատ:

Գործերուս լաւ կարգադրութիւնը զոր կը պարտիմ
մէկ բարեկամի, կ'ապահովէ ինծի համեստ կացութիւն
մի, զոր գուցէ անարգէի ժամանակաւ, բայց ան-

դադրալից ինձ թուի արդ։ Միակ ընկերութիւնս ծովն է զոր կը սիրեմ անչափ. մտացս կը խօսի, սիրտս կը մրրկէ. այն ես կարծես հրավառ կիրքերով ալէտանջ կը յուզուի՝ վայրենաբար և անմռունչ թաւալելով, եւ երբ մեղկութեամբ իւր ջուրերն յառաջ կը վարէ գրեթէ աննշմարելի շարժմամբ, չի՞ ներկայացներ արդեօք վշտաբեկ հոգւոյ պատկերն յանձնառու եղած տառապելու, որ վայրկեան մի գոնէ կը հանգչի կրած մրրիկներէն և հոգերէն։ Ո՜հ, ցաւահար էակն որ կը համակերպի բռնազբօսիկ հանդարտութեամբ ապրելու, ոչ այլ ինչ է բայց հողի մ'որ կը փայփայէ իւր ծանր շղթաներն և կը ժպտի անոնց շռինդը լսելով. ի՜նչ փայփայանք և ի՜նչ ժպիտ։ Ծովուն փոփոխակի կատաղութեան և հանդարտութեան մէջ զարմանալի նմանութիւն կը գտնամ սրտիս կացութեան հետ։ Երբ աղջիկս կը ննջէ և լուսինն իբրեւ բարեկամ հոգի, ինձ ի վերուստ կը նայի, երբ երկինք աստղազարդ է եւ կը շրջագայիմ քարափանցս վրայ, առանձին, հանդէպ յաւիտենականութեան, քանի՜ցս զգացի ջերմ արտասուք մ'որ կ'իյնար Ովկիանոսին ցրտահար ծոցին մէջ։ Այդ արտասուաց պարունակած դառնութիւնը հոգիս միայն կը ճանաչէր, և Աստուած՝ որ տեսած էր անոր անկանիլը։

Առանձնութիւնն անտանելի է սրտի մի համար որ կենաց բոլոր ուժովը կը բաբախէ։ Քանիցս զքեզ յիշեցի, ո՛վ սիրելիդ իմ, քանի՜ցս աչկունքս ծովուն վրայ յառելով կը ժպտէին քու անոյշ պատկերիդ, քանի՜ցս անուանդ շրթունքս հնչեցին մեղմիկ. քանի՜ցս կարծեցի տեսնել երեք սիրեցեալ ստուերներ ձեռք ձեռքի տուած՝ սահիլ իմ առջեւէս ինձ նայելով տխրագին. և ես վշտաբեկ՝ հա՛յր, մա՛յր, ամուսի՛նդ իմ։

*գոչեցի. քանի՜ցս արդեօք ուզեցի ծովը նետուիլ, ընկըղմիլ, կորսուիլ և ապրելէ դադրիլ...։ Ո՛վ Աստուած իմ, ներէ՛ այս մեղապարտ անձնասպան բաղձանացս. ո՛վ դժբաղդ դուստրն իմ, քու սէրդ և իմ անյատակ զգացումս առ քեզ՝ չե՞ն բաւեր ուրեմն բարեբաստիկ ընելու զիս։*

*Ի զուր հոգին կը կրթենք, կը մարզենք, կը հպատակեցնենք մեր կամացը։ Կան վայրկեաններ ուր այն կը դալարի, հանգոյցներ կը խորտակէ, կը չարչարուի և հուսկ ուժաթափ կ'իյնայ ճնշման աղաղակով։*

*Գուցէ այս վշտահար տողերս տխուր գաղափար մի ներշնչեն քեզ պարտուցս անկատար և անզօր գործադրութեան մասին, ո՛վ բարեկամուհիդ իմ. սակայն հոգին այնպէս կը ծանրաբեռնի երբեմն որ եթէ չյորդէ մերթ ընդ մերթ՝ կրնայ պայթիլ ահաւոր և վճռողական թմբիւնով։ Թո՛յլ տուր սրտիս ուրեմն իւր աւելորդ բեռը քու վրադ թափել. երբ մասամբ իւրք սփոփուի, յոտս կը կանգնի և կը կարողանայ յառաջ քալել վերստին։*

[ՄԱՑՏԱ] Սրբուհի Տիւսաբ

---

## Կ. Ընկերուհի մը առ իւր ընկերուհին։

*Սրտակի՛ցդ իմ,*

*Կա՞յ արդեօք բառ մը՝ որ բացատրէ կրած բոլոր տագնապներս քան հիւանդ բառն։ Հիւանդ եմ, ամէն ինչ մռայլ կը տեսնեմ, ամէն ինչ տխուր. սենեկիս լռութիւնը կը խանգարի ընդհատ ընդհատ հառաչնե-*

րովս, հոգեդղորդ բացագանչութիւններովս։ Զեմ այլ եւս այն զուարթ աղջիկն. դալկահար և բոլորովին հիւծեալ կ'սպասեմ ժամէ ժամ յուսոյ հրեշտակին։ Մայրըս, գործվալից էակ, կը խրախուսէ զիս կռուիլ քաջաբար ցաւոց դէմ, բայց ի՞նչպէս կարող է տկար օրիորդ մը կռուիլ. Նա միայն աղօթել գիտէ, համակերպիլ անողոք բաղդին։ Այլ դեռ մարած չեն բոլոր յոյսերս, և միթէ կանուխ չէ՞ մեկնիլ յաշխարհէ, հոն՝ ուր սիրելիներ ունիմ։ Կ'զգամ թէ յուսահատութիւնն ոճիր է, և կեանքն պարգեւ է երկնային, երջանկութի՛ւն, զոր ընդերկար պիտի վայելեմ անշուշտ, և ապա գոհութեամբ պիտի մեռնիմ։

Կաղաչեմ որ Նամակներդ ստէպ գրես, ես չեմ կարող այս վիճակիս մէջ յաճախ գրել, կը դողդոջեն ձեռքերս, և միտքս կը նմանի գրքի մը՝ որոյ թերթերն ցրուած են։ Ներողամիտ եղիր։ Ի քաղցր տեսութիւն։

[Թուականն] * * *

---

5. Պատասխան վերնոյն։

Քաղցրի՛կդ իմ,

Այժմ առաւել կը տխրիմ հեռակայութեանդ պատճառաւ, զի այս տառապագին աւուրցդ մէջ կ'ուզէի գալ և սփոփել զքեզ, խանդակաթ մօրդ հետ բաժնել ծառայութիւնն, զոր կը յուսայի մատուցանել քեզ։ Քեզ հետ ի միասին կ'ուզէի աղօթել և երկնային գըթութիւն հայցել ապերջանիկ վիճակիդ համար։ Բայց թէպէտ և հեռու, սակայն գիտեմ թէ կը հաւատաս հոգւոյս թրթռալն քու սնարիդ վերև։ Հաւատա՛ նոյն-

*պէս թէ երբ բանաս սենեկիդ պատուհանը և գարնանաբեր ճառագայթից հետ ներս գայ շունչ զեփիւռին հովահրելու տրտմալից ճակատդ, հաւատա՛, կ'ըսեմ, քոյր իմ, թէ սիրելոյդ շունչն է, որ կը համբուրէ զքեզ։ Ծաղկանց բոյրն չունի մեր սիրոյ քաղցրութիւնը։*

*Կը մաղթեմ որ յառաջիկայ նամակդ չի գրես դողդոջուն ձեռքերով, և գրիչդ դարձեալ ըստ առաջնոյն բացատրէ ներքին զուարթութիւնդ՝ որ միշտ անմեղութեանդ յայտարար է։*

*Քոյդ յաւէտ*

[Թուական] * * *

---

## 6. Ընկերուհի մը առ իւր ընկերուհին։

*Սիրեցեա՛լ ընկերուհիդ իմ,*

*Ձեր հեռաւորութեան միջոցին միակ փափաքս է նամակ ուղղել Ձեզ. այս կերպով միջոցն կարել անցնիլ, և գալ Ձեր մօտ, խօսիլ Ձեզ հետ և յագեցնել հոգւոյս ծարաւը։ Ի՞նչ է արդեօք Ձեր լռութեան պատճառը. այս է որ զիս առաւել կը տխրեցնէ. ես ինձ կը հարցունեմ, ի՛նչպէս է արդեօք քաղցրիկ քոյրս. և ձայնիս ոչ ոք կը պատասխանէ։ Երբ զիս տեսնեն այդ վիճակին մէջ, ըսեն գուցէ. սա յիմար մ'է, որ ինքնիրենը կը խօսի. բայց ո՛չ. չեմ խաբուիր, երբ ըզՁեզ իմ մօտս կը կարծեմ. յիշատակաց մէջ կը թափառիմ մոլորուն քայլերով, կ'երթամ կուգամ այն ճամբաներէն, յորս երբեմն ման կուգայինք. երբ կը դիտեմ երկինքը, միջո՛ց անծայրածիր, առ Ձեզ տածած*

սիրոյս անհունութեան հետ կը չափեմ զայն․ երբ նայիմ գիշերանց երկնակամարն և տեսնեմ փայլուն աստղերն՝ կ'ըսեմ ինքնիրենս․ ո՜հ, աստղերու պէս անբիծ է մեր սէրն, որ անբաժան կը կացուցանէ զմեզ։

Այսուհետեւ ստէպ չպիտի գրեմ նամակ, զի Թղթակցութիւնն ալ պատրանք մ'է․ ես կ'ուզեմ շունչ ի շունչ միանալ, միմեանց քով սրտէ ի սիրտ խօսիլ․ ի զո՜ւր կը թափառին նայուածքներս բնութեան, երկնի չքեղ տեսարանաց վրայ․ կ'ուզեմ մանաւանդ որ մեր հայեցուածք յիրար ամփոփին․ ի մի բան Ձեր մօտ լինել կը ցանկամ։

Կը փակեմ թուղթս՝ ան'կեղծ սրտիւ համբուրելով զՁեզ։

[Թուական] * * *

---

## 7․ Մայտա առ տիկին Սիրա․

Տարաբաղդ Հրանոյշի օրերը վերջանալու մօտ կը թուին։ Մեր ընկերութիւնը անոր համար անհրաժեշտ պէտք մ'եղած է․ հետեւապէս երբ անկարելի է անոր շրջագայութեան երթալը՝ իր տանը մէջ կ'ընկերանանք իրեն։ Անընդհատ կը խօսի կոյս երեւակայութեան երազներուն վրայ որք կենաց երազին մէջ պիտի անհետանան։ «Աւա՜ղ, կ'ըսէր, երբէք կեանքն այնքան սիրելի չթուեցաւ ինձ որչափ արդ որ խոյս կուտայ ինձմէ։» Ուրիշ անգամ մ'ալ կը մրմնջէր․ «Ես վայրենի անտառ մ'եմ որ իբր շող ճաճանչեցի միայն չանթերուն փայլը որ անոր գագաթը լուսաւորեց։ Կեանքս ճերմակ էջ մ'է որ ո՛չ մի սիրտ անունը գըծեց, այլ մահը միայն իւր սեւ դրոշմը դրաւ անդ։

Գիտնայիք թէ ո՛րքան աղետալի է հրաժարիլ կենաց բոլոր վայելքներէ ։ Ես ալ հոգի մ՚ունիմ ուրիշներուն նման, ես ալ երիտասարդ եմ, ես ալ գիտէի սիրել. գիտէի ժպտիլ երկնից և ծաղկանց ։ Եկայ, տխուր վըկայ մի հանդիսացայ կենաց վայելից, և առանց մասնակցելու անոր, վշտերս ուսիս վրայ բեռնաւորած՝ մահուան մութ կայանը կ՚իջնամ տրտմայոյզ ։ »

Օր մի իւր վիճակը սաստկացաւ յանկարծ ։ Ցուլիանէն տուն խրկեցի. և ես գիշերն ի բուն հսկեցի հիւանդին վրայ՝ իբրև մայր իւր սիրելի որդեկին ։ Կը նայէր ինձ երախտագէտ աչօք և կ՚ըսէր. « Որչա՛փ պիտի պաշտէի զքեզ թէ ապրէի. բայց երկինքէն վրադ պիտի հսկեմ ։ Դու մեղմացուցիր ճակատագրիս դառնութիւնն այս վերջին օրերուս մէջ, և ես կ՚օրհնեմ զքեզ ի փոխարէն զի չունիմ այլ ինչ նուիրելու բացի օրհասական հոգւոյ մի օրհնութիւններէն ։ »

Հէ՛ք աղջիկ, կարծես յուսահատութիւնը զինքն ամէն վայրկեան կը կեղեքէ ։ « Ա՛հ, ըսաւ, կենացս հորիզոնը միշտ մթապատ և սպառնալից էր. Երիտասարդութիւնս գարուն չունէր. մինչ ծաղիկներ կ՚որոնէի, տեսայ յանկարծ փոս մի որ կը բացուէր ոտիցս ներքև. նայեցայ անդ, տեսայ մահը որ կը ժպտէր ինձ, և դողասարսուռ աչքերս կափուցի» ։ Մահուան մերձաւորութիւնը այսպէս զգալ՝ հոգւոյն համար անյատակ անդունդին մէջ թաւալիլ է չարունակ։

[ՄԱՑՏԱ] Սրբուհի Տիւսաբ

## 8. Առ ուսանող մը իր մրցանակէն զրկուելուն առթիւ։

Սիրելի՛ պարոն,

Ինչո՞ւ ցաւիս, ինչո՞ւ տխրիս. միթէ նուա՞զ փութկոտ էիր, որ մրցանակէդ զրկումը քեզ վիշտ կը պատճառէ։ Եթէ չգիտնամ պատճառն քննութեանց օրերուն բացակայ լինելուդ, չպիտի զարմանամ տխրութեանդ համար։ Բոլոր դպրոցը գիտէ թէ դուն յառաջադէմներէն մին եղած ես միշտ, եւ մանաւանդ առաջինն։ Անցեալ տարի Պ. Տեսուչն գոհութեամբ հրատարակեց քու յաջողութիւններդ մրցանակաց հանդիսին մէջ։ Եւ ես ու ինձ հետ բոլոր ներկայ եղողներն մոլեգին աւիւնով ծափահարեցին քու բեմին առջեւ երեւիլդ։

Մի՛ վշտանար, սիրելի՛ պարոնս, այլ ընդհակառակը գոհ եղիր, որովհետեւ այս տարի, երբ Պ. Տեսուչը մի առ մի աշակերտաց անունները կը կարդար, շատեր իրարու կը հարցունէին. ո՞ւր է Պետրոսը, անցեալ տարուան առաջին աշակերտը։ Ես շատ ուրախացայ, որովհետեւ տեսայ թէ թէպէտ փոքր դեռ, այլ շահած ես ստոյգ արժանեաց համբաւ։ Անփոյթ լե՛ր, թող ուրիշներ փառաւորուին, ատկէ քու արժանիքդ երբեք չպակասիր։ Վայելէ՛ ուրախ սրտիւ ամառնային մեծ արձակուրդը, և վստահ եղիր թէ յառաջիկայ տարին պայծառ դիմօք պիտի շահիս աշխատութեան անթառամներն։

Համբերէ՛, հեռի չէ՛ գալ տարին, ժպտագին ընդունէ բախտին ամէն վիճակ, և սիրտդ անսասան մընայ ամէն դիպուածի առջեւ։

Բարեկամդ

* * *

[Թուական]

### 9. *Հայր մի առ դուստր։*

*Սիրելի՛ աղջիկս,*

*Քեզ կը յղեմ ահա մի քանի գրքեր՝ որոց մասին ըսած էի երէկ գիշեր, և կը խնդրեմ որ ընդունիս զանոնք իմ սիրոյս և յարգանացս իբրեւ թեթեւ մի նշան։ Անոնք գրուած են դիւրին ոճով մի, և կը պարունակեն շատ գործնական գիտութիւն։*

*Խորհուրդ կուտամ քեզ՝ կարդալ գրիչ ի ձեռին, եւ նշանակել փոքր տետրի մէջ կարճ ծանօթութիւններ անոնց վրայ՝ յորս կը գտնես հետաքրքրական ինչ եւ կամ ինչ որ օգտակար կը թուի քեզ, և ահա այս պիտի լինի դիւրին միջոց մը յիշողութեանդ մէջ տպաւորելու մի քանի տեղեկութիւններ։ Եւ որովհետեւ կան գիտական բառեր, որոց գուցէ չես հանդիպած սովորական ընթերցուածոցդ մէջ, և հետեւաբար չեն կրնար ընտանի ըլլալ քեզ, կը կարծեմ որ օգտակար պիտի ըլլայ ձեռացդ մէջ ունենալ լաւ բառագիրք մը, որպէս զի նայիս այն բառը՝ որուն ճիշդ իմաստը թերեւս չգիտես։*

*Խանդակաթ հայրդ*

[Թուական] * * *

---

### 10. *Նամակ հօր մի առ իւր որդին։*

*Սիրելի՛ որդեակ իմ,*

*Կարելի եղածին չափ համեստ էք· համեստութիւնը այն լաւագոյն ձիրքն է՝ ում կ'ընկերանայ ստոյգ ար-*

ժանիքն ։ Համեստութիւնը յինքն կը յանկուցանէ ամէն սրտեր . մինչդեռ ինքնահաւանութիւնն և աներեսութիւնն կը խորշեցնեն ։ Սիրելի չըլլիր այն մարդըն՝ որ միշտ կը պարծի և չափազանց իւր վրայ կը խօսի ։ Ընդհակառակն այն որ կը ծածկէ իւր արժանիքը, և այլոց արժանիքը ի վեր կը հանէ, սակայն կը խօսի և համեստօրէն իւր անձին վրայ, նա սրտեր կը շահի և յարգելի ու սիրելի կ՚ըլլայ ։

Բայց կայ նոյնպէս բաւական տարբերութիւն համեստութեան և չար ամօթին մէջ . որչափ որ համեստութիւնը գովելի է, այնքան չար ամօթն ծաղրելի է ։ Պէտք չէ ըլլալ ապուշ մը և ոչ աներես մը . պէտք է գիտնալ երևիլն, խօսիլ անձանց հետ և պատասխանել առանց շփոթելու ։

Դաշտաբնակ մը կ՚ամչնայ, երբ ընկերութեան մէջ երևի, կը շփոթի, չգիտեր ի՛նչ ընել, երբ իրեն հետ կը խօսուի և շփոթելով կը պատասխանէ գրեթէ կակազելով, մինչդեռ աշխարհի մարդը վստահաբար կը ներկայանայ, կը խօսի իրեն անծանօթ մարդոց հետ, առանց շփոթելու, գրեթէ բնական կերպով ։ Ահա ինչ որ կը կոչուի կենցաղագիտութիւն, որ շատ կարևոր մասն է ընկերային յարաբերութեանց ։

[Թուական] [Թարգմ.] * * *

---

## 11 . Նամակ հիւանդ օրիորդի մը առ իւր հանին ։

Սիրելի՛ հանիկդ իմ,

Զգիտէ՞ք թէ ո՛րչափ լաւ է հոս . առողջութիւնս ամէն օր կը վերադառնայ ։ Ժամանակէ մ՚ի վեր բաւական զօրաւոր եմ չորս էջեր մրոտելու համար, և այլ

*ես իրերը նոյն աչօք չեմ դիտեր։*

*Անշուշտ որովհետեւ Ձենէ հեռի մեռնիլ շատ դառն պիտի լինէր. գոնէ խնամքներ չպակսեցան և մայրս շատ անձնուիրութեամբ ծառայեց։ Ի՞նչպէս պիտի փոխարինեմ նմա։ Յանձնարարած էք գրել Ձեզ թէ ի՞նչպէս է մեր տունը։ Հին շէնք մ՚է այն, ուր առաջ չէի հաւատար թէ կարելի է բնակիլ։ Կոտրած սանդուղէ մը վերնագաւթակը կ՚ելլուի, մեխակներ և պատատուկներ կը սպրդին ամէն ծերպերու մէջ, և ճամբան պարտէզի պէս անուշ կը հոտի։ Տունը ծառերէն վեր կը բարձրանայ. սենեակները իրարու վրայ չեն. կ՚ըսուի թէ երկրորդը մինչեւ գետնայարկը կ՚երթայ երկրաշարժի ատեն։ Այս թոհ ու բոհին մէջ պէտք է Ձեր աղջիկը փնտռել, սիրելի՛ հանիս։*

*Սենեակս տան լաւ փակուած սենեակն է, մեծ է և վերէն վար իւղաներկ, ներկը թղթէն աւելի կը սիրեմ, անկողինս, աթոռներս և թիկնաթոռս լաւ կարգի դրուած են. պատուհաններս արեւելքի և հիւսիսի կողմն են. օդն և լոյսը տունս կը մտնեն առաւօտեան 9երորդ ժամէն։ Կ՚ելնեմ, կը հագուիմ և մի առ մի պատուհաններս կը բանամ, որպէս զի ծովուն օդը խստութեամբ չիկայ։ Տասներորդ ժամուն պարտէզ կ՚իջնեմ և կ՚սկսիմ զուարթութեամբ ծառուղիներու մէջ շրջիլ ծաղկանց մէջ։*

*Որչափ գեղեցիկ է երկիրը, ի՞նչպէս ամէն երեւոյթ երանաւէտ է. և ի՞նչ տխուր պիտի լինէր թողուլ այս հեշտալի աշխարհը, զոր Աստուած ստեղծած է մարդուն հաճոյից համար։ Թռչունք իրենց բոյները կը դնեն ծառոց մէջ, կապոյտ ծովը մեղմիւ կը խաղէ ափանց աւազը. արեգակն իւր ոսկի ճառագայթները կը պարզէ տժգոյն և նիհար իմ խեղճ ձեռքերուս վը–*

քայ, կը զգամ թէ արիւնն երակացս մէջ կը հոսեցնէ ձեր ձայնին պէս աղդու և քաղցր օդ մը։

Սիրելի՛ մայրիկ, վայրկենապէս կ'երեւակայեմ թէ այս արեգակը, այս ծաղկեալ ծառերն, այս երգեցիկ թռչունները բարեկամներ են որ ինձ համար շնորհ կը հայցեն և չպիտի թողուն ինձ մեռնիլ։ Իրաւ է որ քիչ տեղ կը գրաւեմ, բայց չեմ ուզեր մեռնիլ։

Մնաս բարով, մեծ մայր իմ, աղօթեցէք ինձ համար,

[Թարգմ.] * * *

---

## 12. Հրաւէր առ բարեկամուհի տիկին։

*Ազնուաշո՛ւք տիկին,*

*Ի՞նչ, երա՞զ մ'է արդեօք, պատրա՞նք մը եղբօրս դարձը. նա ցարդ յԻտալիա կը պանդխտէր ի սէր գեղարուեստից։ Ո՛հ, ի տղայ տիոց նկարչութեան համար ի՜նչ բուռն սէր կը տածէր. իւր մեծագոյն վարպետն կը համարէր զբնութիւն։ Վաղուց ի վեր կ'երազէր արուեստագէ՜տ լինել։ Քոյր և եղբայր շատ փոքր էինք, երբ նա իւր ձեռք կ'առնուր թուղթ եւ մատիտ, և դէմքս նկարելու փորձեր կ'ընէր։ Եւ կ'ըսէր ինձ. «Վաղը երբ հեռանամ հայրենի տնէն, քու այս պատկեր ինձ հետ պիտի տանիմ։» Եւ ես այն ատեն կ'արտասուէի, մտածելով եղբօրս մեկնման համար. յիրաւի այն ատեն չգիտէի թէ արուեստին բարձրագոյն գաղափարն ունէր նա։*

*Գնաց վերջապէս յԻտալիա, ամենէն մեծ վարպետներու աշակերտեցաւ եռանդեամբ և ի գլուխ հանեց*

իւր գործը։ Երկիրն, միջավայրն ազդուապէս ներգործեցին իւր վրայ և սուղ ժամանակի մէջ եղաւ յառաջդիմութեան բարձունքը։ Յաճախ նամակներով կը գրէր իւր նորանոր յաջողութիւններն և մերթ ընդ մերթ ալ իւր ճարտարութեան նմոյշներ կը յղէր մեզ նուէր։ Վերջին անգամ ալ իմացուցած էր մեզ թէ նկարչական ցուցահանդէսի մը մէջ իւր մի քանի նկարներ առաւել գնահատուած են բազմաց կողմէ և թէ լրագիրք գրուատեօք հռչակած են այս յաջողութիւն։

Երբ այս ամենը կ՚ընթեռնուի, կ՚ըսէի. Ե՞րբ պիտի ծագի այն օրն, յորում տեսնեմ սիրելի եղբայրս։

Եւ ահա եկաւ այդ օրն, դարձաւ պանդուխտ եղբայրս. այս առթիւ ընտանեկան հանդէս պիտի կատարենք։ Զայս իմացնելով առ Ձերդ Ազնուութիւն՝ կը խնդրենք որ Ձեր ներկայութեամբ պատուէք մեր խոնարհ յարկն։ Հոս չպիտի տեսնէք բարձր ընդունելութեանց սեթեւեթեալ պատրաստութիւնք. այլ զուարթ սրտեր, միմեանց բարեկամ հոգիք, ուրախութիւն՝ որ կը լուսաւորէ ճառագայթալից ամէն դէմքեր։

Ձեր քաղցր ներկայութեան ակնկալու՝

Եմ, ևն,

[Թուական] * * *

---

Տիկին Սեվինեէ առ իւր դուստր։

Դո՛ւստր իմ,

Ի՜նչ օր էր որ զմեզ հեռացուց ի միմեանց. ի՞նչպէս երեւցաւ Ձեզ, իսկ ես զգացի զայն այնչափ

դառնութեամբ և ցաւով, ո՛րչափ կ'երեւակայէի, եւ որոց համար ընդերկար կը խիթայի։ Ի՜նչ վայրկեան էր այն՝ որ զմեզ բաժնեց յիրերաց։ Ի՜նչ մնաս բարով և ի՜նչ տխրութիւն՝ մեկուսանալ, մինչ այնչափ հաճելի է ի միասին գտնուիլ։ Աւելի խօսիլ չեմ ուզեր այդ մասին և ոչ հաշուել այն մտածումներն՝ որք սիրտս կը ճնշեն, կ'ուզեմ միտքս բերել ձեր քաղցրութիւնն և ամէն ինչ որ ըսած էիք ինձ այս մասին, որուն համար կը հիանամ ձեր վրայ։ Սակայն և այնպէս ինձ թուեցաւ թէ դուք փոքր ինչ յուզեալ էիք զիս գրկելու պահուն։ Իսկ ես դարձայ ի Փարիզ, որպէս կրնաք երեւակայել։ Պ. տը Գուլանժ վկայակից է իմ վիճակիս։ Գացի Րէցի կարդինալին քով. ուր միշտս կը վերանորոգի, մարդ խրկեցի դուրս աղաչելու զիս տեսնելու եկող Պ. լա Ռոշֆուքոյի, Տիկին տը Լաֆայէթի, և Տիկին տը Գուլանժի՝ որ հաճին այդ պատիւն ինձ չընել։ Մարդ պէտք է իւր տկարութիւններն ծածկէ զօրաւորաց առջեւ։ Պ. Կարդինալ կարեկից եղաւ իմ տկարութեանցս. այն բարեկամութիւնն՝ զոր ունի ձեզ համար, զինք շատ զգայուն կ'ընէ ձեր մասին։

Մի՛ պարսաւէք, աղջիկս, ինչ որ զգացի, երբ տուն դարձայ, ի՜նչ տարբերութիւն, ի՜նչ մենութիւն, ի՜նչ տխրութիւն. տեսնել ձեր սենեակն, առանձնասենեակըն, ձեր պատկերն, և չգտնել ձեր սիրեցեալ անձն. Պ. Կրինեան լաւ կը հասկընայ ինչ որ կ'ուզեմ ըսել և ինչ որ զգացի։ Հետեւեալ օրը, այսինքն երէկ, ժամը 5 ին արթնցայ, գացի Գորբինէլլին առ, որպէսզի գայ հոս աքբային հետ։ Անդադար կ'անձրեւէ, և կը վախնամ թէ Պուրկոնեըլի ձեր ճամբաները աւրուած ըլլան։ Հոս կ'ընթեռնունք առածներ, զորս Գորբինէլլի ինձ կը մեկնէ։ Նա կը բաղձայ սրտիս զգացումներն սանձել.

ինձ ուսուցանել։ Եթէ այդ գիտութիւնն ստանամ, իմ ուղեւորութենէս մեծ բան մը շահած պիտի ըլլամ։ Վաղիւ կը դառնամ, այս հանգստեան վայրկեններին պէտք ունիմ, գլուխս քիչ մը հանդարտեցնելու և կերպիւ իւիք անձիս տէր ըլլալու ։

---

### 14 · Դարձեալ տիկին Սեվինեէ առ դուստր ։

Սիրելի՛ դուստր իմ,

Աճա սոսկալի օր մը. ես ալ կը խոստովանիմ թէ չեմ կրնար հանդուրժել այլ եւս ։ Կը ցաւիմ մանաւանդ զի զքեզ թողուցի այնպէս՝ որ վիշտս կ'աւելցնէ ։ Կը խորհիմ քու քայլափոխներուդ վրայ, նոյնպէս իմիններուս, և կը խորհիմ թէ ո՛րչափ քայլափոխներ պէտք են որ կարենանք իրարու հանդիպիլ այսպէս միշտ քալելով։ Քու քովդ միայն սիրտս հանգիստ է, հոն իւր բնական վիճակն է և այն միայն սիրելի է իրեն ։

Այս առաւօտեան դէպքը ինձ սաստիկ ցաւ կ'ազդէ, և սիրտս կը կեղեքէ. որուն պատճառներն դուն կրնաս իմաստասիրել։ Ես զայն զգացի և երկար ատեն պիտի զգամ. Սիրտս և միտքս ամբողջ գու գրաւած ես. անթաց աչօք չեմ կարող քու վրադ մտածել, և միշտ քու վրադ կը մտածեմ, այնպէս որ անտանելի է վիճակս ։ Այլ որովհետեւ ծայրայեղութեան հասած է, կը յուսամ թէ երկայն չտեւեր նոյն սաստկութեան մէջ։ Միշտ զքեզ կը փնտռեմ և ոչինչ ունիմ ամէն տեղ, որովհետեւ զքեզ չունիմ։ Աչքերս՝ որ քեզ այնքան հանդիպած են տասնեչորս ամսէ ի վեր, չեն գըտներ զքեզ. այն քաղցր ժամանակն՝ որ անցած է, ներ-

կայն աւելի ցաւագին կ'ընէ մինչեւ այն ատեն, երբ քիչ մը վարժուիմ։ Բայց երբեք այն աստիճան չպիտի վարժուիմ, որ ջերմապէս չբաղձամ վերստին տեսնել զքեզ և ողջագուրել։

Ապագային վրայ չունիմ այնքան յոյս, որքան անցելոյն. գիտեմ թէ ո՜րքան տառապեցուց զիս քու հեռաւորութիւնդ։ Եւ անով աւելի թշուառ եմ, զի յանխորհուրդս ինձ սովորութիւն մի ըրի անպատճառ ըզքեզ տեսնել. գոգցես բաժանման ատեն պէտք եղածին պէս չփարեցայ քեզ։ Եւ ի՛նչ ունէի՝ զգուշանալու. ըստ բաւականին քեզ չըսի թէ ո՛րչափ գոհ եղայ գորովանացդ, ոչ ըստ բաւականին յանձնարարեցի ըզքեզ Պ. Կրինեանի, և ոչ բաւական շնորհակալ եղայ նմա բոլոր պատուասիրութեան և բարեկամութեան համար՝ զոր առ իս ունի։ Ուրեմն կ'սպասեմ տեսնել թէ ի՛նչ պիտի ըլլայ արդիւնքն ամենայնի։

Անձկութենէ կը մաշիմ և մխիթարութիւն կ'ակընկալեմ միայն քու նամակներէդ, որք ինձմէ հառաչներ արձակել պիտի տան։ Վերջապէս, դո՛ւստր իմ, քեզ համար միայն կ'ապրիմ։ Աստուած շնորհէ ինձ սիրել զնա օր մը այնպէս, որպէս կը սիրեմ զՁեզ։ Մեր բաժանման պէս տխուր բաժանում մը երբեք չէ եղած։ Բառ մը չէինք ըսեր։ Կ'ողջունեմ զՔեզ, սիրելի՛ դուստրս, ցաւէ ինձ քեզնէ բաժնուելուս համար։ Աւա՜ղ, դարձեալ նամակներու մէջ։

[Թարգմ.]

---

## 15. Նամակ մօր մը առ իւր դուստր։

Ինչ որ ըսիր ինձ Օր... ի նկատմամբ քու նամակիդ մէջ, ինձ կարծեցուց թէ դու գեղեցկութիւնը մեր

*սեռին մեծագոյն արժանիքը կը համարիս, և թէ կին մը այն ատեն միայն յարգելի է, երբ գեղեցիկ է։ Այդ բան՝ երիտասարդաց և անտխախոհ մարդոց սխալանքն է, որք իրերն իրենց արտաքինէն կը դատեն։ Արդարև ի՞նչ օգուտ ունի կնոջ մը արտաքին ամէն շնորհներով լի ըլլալն, եթէ չքնաղ արտաքին երևութի մը տակ յոռի նկարագիր մը և վատթար սիրտ մը ծածկէ։ Նոյնչափ պիտի սիրէի գեղեցիկ պատկեր մը կամ արձան մը. որովհետև անոնք իմ նայուածքս կը զօշոտեն, բայց խորշելի չեն գար մտքիս, մինչդեռ այս հպարտ ու սէգ գեղեցիկ կիներ ընդհանրապէս կը զըզուեցնեն իրենց շուրջը գտնուողներն. արդ, որովհետև իրենց անձերը տեսակ մը դիցուհիներ կը համարին, կ'երևակայեն թէ ամէն ոք պարտի խոնարհիլ իրենց առջև, թէ ամէն ոք պարտի զիրենք պաշտել։ Ընդհանրապէս անոնք միմիայն իրենց անձերը կը սիրեն ու կը յարգեն, և բոլոր մնացեալն կը դիտեն գթոյ և արհամարհանաց նայուածքով։ Բայց մարդ անոնց փոխարէնը լաւ կուտայ. եթէ երբեմն անոնց ուէր ընծայուի, այդ շատ անդամ ուրիշ բան չէ բայց եթէ մատուցում մը, որ ոչ այնչափ մարդոց առ այն ունեցած յարգանքէն յառաջ կուգայ, որչափ պատշաճութենէ և մարդոց իրենք զիրենք յարգելէն։*

*Գեղեցկութեան փայլը յաճախ համեմատուած է վարդի փայլին հետ, և շատ իրաւացի է այս։ Հիւանդութիւն մը բաւ է զայն եղծանելու համար. կը փայլի այն մեր կենաց գարնան մէջ, յորմէ յետոյ կը խամրի։ Եւ այն ատեն ի՞նչ կը լինին այն կանայք, որք իրենց գեղեցկութենէն զատ ուրիշ արժանիք չունին, և որոց շնորհիւ միայն կը մեծարուէին. կամ ծաղրելի կը դառնան կարծելով ինքզինքնին և կամ ուզելով ե-*

*րեւալ դարձեալ այնպէս, որպէս չեն այլ եւս, և կամ եթէ չիտակը խորհելով՝ կ'որոշեն ահա հրաժարիլ աշխարհէ, որ իրենցմէ կը խորշի և կ'արհամարհէ զիրենք, յայնժամ Նախանձը կը կրծէ զիրենք, տաղտուկը կ'ընկճէ և զայրոյթը կը տանջէ։*

*Այսպէս չէ սակայն անոր համար որ իւր չունեցած դէմքի գեղեցկութեան տեղ ստոյգ արժանիք ըստանալու հետամուտ է։ Արդարեւ եթէ նուազ կը մեծարուի, նուազ վտանգներու ենթակայ է. եթէ փառքը նուազ չքեղ է, բայց աւելի ամբիծ է. եթէ անոր վրայ նուազ կը խօսուի, բայց աւելի կը գովուի, եթէ անոր այնչափ նայուածքներ չեն ուղղուիր, բայց աւելի կը յարգուի. եթէ իւր բարի յատկութիւններն կ'ընծայեն անոր տեսակ մը ազդեցութիւն սրտերու վրայ, բայց այդ ազդեցութիւն երբեք վաղանցիկ չէ որպէս գեղեցկութեանը։ Ժամանակն, որ կը խամրեցնէ գեղեցիկ կնոջ մը փայլն ու գեղն, ընդհակառակն նոր փայլ մը կուտայ առաքինի և սիրելի աղջըկան արժանեաց. մարդ ընդհուպ կը ձանձրանայ դիմաց հրապոյրներուն զգայուն ըլլալէ, այլ իմաստութեան և բարութեան հրապոյրներուն միշտ զգայուն է։*

[Թարգմ.]

---

## 16. *Պլինիոս առ Մարկեղին։*

*Տխրութեամբ վհատեալ կը գրեմ Ձեզ։ Մեր .... բարեկամին դեռածաղիկ դուստրը մեռաւ։ Երբեք տեսած չեմ անձ աւելի սիրուն, աւելի սիրելի, աւելի արժանի ոչ միայն ընդերկար ապրելու, այլ միշտ ապրելու։ Դեռ նոր տասնեւչորս տարուն լրացուցած էր, և արդէն կը ցուցնէր լրացեալ հասակի խոհեմութիւնը։*

Այդէն կ՚երևէր իր կերպարանքին վրայ ազնուական կնիք մը վեհութիւնը և այս ամէնը ոչինչ կը պակսեցնէր իր անմեղ պարկեշտութենէն, և այն բնական շնորհներէն՝ որք առաջին հասակի մէջ այնքան հաճելի են. ի՜նչ պարզութեամբ իր հօրը պարանոցին փարած կը մնար, ի՜նչ քաղցրութեամբ և ի՜նչ պարկեշտութեամբ կ՚ընդունէր զինք սիրողները։ Ի՜նչ արդարակորով հաւասարութեամբ բաժին կը հանէր իր գորովէն իր ստնտուաց և ուսուցչաց՝ որք մշակած էին կամ իր բարքը կամ իր միտքը։ Կարելի՞ էր ուսանիլ աւելի ջանիւք և լաւագոյն յաջողակութեամբ. կարելի՞ էր նուազ ժամանակ և աւելի շրջահայեցութիւն դնել իր զբօսանաց մէջ։ Դուք չէք կարող երևակայել իր զգուշութիւն, իր համբերութիւն, իր հաստատամըտութիւն նոյն իսկ իր վերջին հիւանդութեան մէջ։ Հնազանդ էր իր բժշկաց, ուշադիր իր հայրը և քոյրը սփոփելու, որոնցմէ յետոյ իր քաջութիւն աննըկուն կը մնար բոլորովին ուժասպառ լինելէ վերջ։ Այդ քաջութիւն ընկերակից եղաւ նմա մինչև իր վերջին կէտը. ոչ երկարատև հիւանդութիւն, և ոչ մահուան երկիւղ զայն կրցան ընկճել. և այս է որ մեր ցաւն ու մորմոք կ՚աւելցնէ։ Արդարև աղետալի՜ և կանխահա՜ս մահ. բայց մահուանէ աւելի աղետալի՜ և դժնդա՜կ պատահակցութիւն. նա շատ սիրելի երիտասարդի մը հետ պիտի ամուսնանար։ Հարսանեաց օրն էր, մենք ալ հոն հրաւիրուած էինք։ Աւա՜ղ, ի՜նչ փոփոխութիւն, ի՜նչ սարսափ կը յաջորդէ այնքան ուրախութեանց։ Չեմ կրնար ձեզ բացատրել թէ ի՜նչ տխրութեամբ համակեցայ, երբ իմացայ թէ աղջկան հայրը վշտով ներշնչեալ՝ որ տխրագին հնարագիտութիւն կ՚ուսուցանէ, անձամբ հրամայեց որ ամէն գոհարներու,

ադամանդներու գինը գործածուի բալասանի․ իւղե-րու, անուշահոտութեանց։ Սա գիտուն և իմաստուն մարդ մ'է, և որ ամենէն թարմ երիտասարդութենէն ի վեր կրթած է իր բանականութիւնը լաւագոյն գիտութեամբք և գեղեցկագոյն արուեստներով․ բայց այսօր կ'արհամարհէ ամէն ինչ որ կ'ըսուի իրեն և նոյն իսկ ինքն իրեն ըսած է։ Վերջապէս իր բոլոր առաքինութիւններն կ'անհետանան և միայն իր խանդաղատանաց հետ առանձին կը թողուն զինք։ Դուք չպիտի շատանաք իրեն ներելով․ այլ պիտի գովէք իսկ, եթէ մտածէք անոր կորստեան վրայ։ Նա կորսնցուց աղջիկ մը՝ որ չունէր միայն իր հօր վարմունքը, կերպարանքը, ձեւը․ այլ որ պիտի կրնար անոր պատկերը կոչուիլ․ այնքան անոր կը նմանէր։ Եթէ գրէք իրեն այսքան խրատալի վշտի վրայ, յիշեցէք որ պէտք է դը-նել աւելի քաղցրութիւն և սէր քան թէ կորով։

Ժամանակն ալ քիչ օգնութիւն չպիտի մատուցանէ իրեն ադոնք ընդունելի ընելու իրեն․ վասն զի ինչ-պէս որ նոր վէրք մը վիրաբուժին ձեռքէն կը խորշի և յետոյ կը տոկայ և կը փափաքի իսկ, այսպէս ալ նոր վիշտը մխիթարութեանց դէմ կ'ըմբոստանայ և կը մեր-ժէ, բայց տակաւ կը խնդրէ զայնս և տեղի կուտայ անոնց՝ որք ճարտարութեամբ կը մատուցանեն։ Ողջոյն։

[Թարգմ.]

---

### 17. Նամակ մօր մը առ իր դուստր։

Սիրելի՛ս,

Նամակդ զիս ուրախութեամբ լցուց, և համոզուե-ցայ թէ բարի սիրտ մը կը կրես, և այդմ իսկ ըղձա-

*ցած եմ միշտ քեզի համար։ Ստոյգ է որ սրտի բարու-
թիւնը երկնից մի պարգեւն է. ըստ իս պատուակա-
նագոյն է այն, և քու Նամակաւդ հասկցայ թէ եր-
կինք զայն շնորհած են քեզ. Նա՝ որ ի բնէ բարի սիրտ
ունի, զգացող է այն բարեաց՝ զորս կ'ընդունի և կը
զգուշանայ, գի մի գուցէ այլոց փոքր ինչ վնաս պատ-
ճառէ։ Զարախօսութեան անձնատուր չըլլար. իւր ըն-
թացից կանոն կ'առնու քրիստոնէական գութն։ Երբ
մարդ բարի սիրտ ունի, ոչ միայն չշատանար այլոց
համբաւին խնայելով, վշտացուցիչ բան մը անոնց չը-
սեր, այլ հետամուտ կ'ըլլայ անոնց օգտակար ըլլալու,
ամէն բարիք ընելու անոնց, որչափ որ կրնայ, ակա-
րաց նեցուկ կը հանդիսանայ, տառապելոց սփոփանք,
և ուրիշին երջանկութեան համար ամէն բանի հոգ կը
տանի։*

*Կը փափաքիմ որ խայթող խօսուածքի և հնարա-
գէտ չարամտութեան տեղ՝ որովք ոմանք կը ջանան
իրենց անձը կարեւոր ցուցընել աշխարհի մէջ, իգա-
կան սեռի անձինք, որոց ընդհանրապէս վիճակեալ կը
համարուի քաղցրութիւն, երեւնան միայն քաղցրաբա-
րոյ ձեւերով, հաճոյական դիմօք, սրտազեղմամբք
այնպիսի բարութեան մը՝ որ իրենց շուրջը բոլոր գը-
նուողներուն վրայ տարածուի. բայց շատերը երկչո-
տութեամբ կամ պատշաճութիւններ չկատարելու վա-
խով, չեն համարձակիր իրենց բնածին բարութեան
հակամիտութեան հետեւելու և կը համոզուին թէ
յարգելի ըլլալու համար պարտին կեղծեօք ցուցնել
անտարբեր և անուշադիր կերպարանք մը, մանաւանդ
երբ արանց ընկերութեան մէջ ըլլան։*

*Ճշմարիտ է որ անոնց հետ միշտ զգուշաւոր վար-
մունք ունենալու ենք, վասն զի երբ կը տեսնուի մա-*

*տաղաւի կին մը և մանաւանդ ծաղկահասակ օրիորդ մը՝ որք արանց խօսակցութեան կը խառնուին, հաճելի կերպով կը ժպտին և անոնց ընտանենալուն թոյլտուութիւն կ՚ընեն շատ ընտանի ձեւերով, գէշ գաղափար մը կը ծնի ի մեզ։ Բայց կարելի է լինել բարի, հաճոյակատար, սիրուն, առանց ծայրայեղութեանց մէջ լինելու։ Կարելի է ցուցնել քաղցրութիւն, պարկեշտութիւն, առանց դոյզն նշանը տալու պչրողութեան, և ոչ միայն աշխարհ այս սիրելի յատկութիւնները մեղք մը չնկատեր, երբ արդար սահմաններու մէջ բովանդակուին անոնք, այլ միշտ կը գովէ զանոնք։*

*Գիտես, աղջի՛կս, թէ բան մը պակաս չըրի քու հաճոյիցդ համար. բայց քու փափաքներուդ աւելի կամաւ ունկն պիտի դնեմ, երբ գիտնամ թէ քու քաղցրագոյն հաճոյից կարգը կը դասես այն գոհութիւնը՝ զոր մարդ կ՚ունենայ սփոփելով տառապեալները։ Այն ատեն սիրտս պիտի ընդարձակուի, ձեռքս պիտի բացուի, և քու փառքդ ապահովող պարգեւները նուազ պիտի համարիմ, երբ դուն ուրիշին երջանկութիւնը տաս։*

[Թարգմ.]

---

## 18. Նամակ առ մանուկ մի։

*Երկար ժամանակէ ի վեր Ձեզ պատասխան մը պարտիմ. բայց կը տեսնէք, աչքերս տկար են, ուստի պէտք է զիս չքմեղացնէք։ Բժիշկները կ՚արգիլեն ինձ գրել. կը հնազանդիմ բժշկաց, ինչպէս դուք կը հնազանդիք Ձեր մօրը։* Կեանքը հնազանդելով կ՚անցնի։

*Մի՛ մոռնաք այս բանը։ Բայց դուք որ փոքր էք, ինծմէ աւելի երջանիկ էք։ Ձեր հասակին մէջ հնազանդութիւնը միշտ քաղցր է. իսկ իմ հասակիս մէջ երբեմն դառն է։ Կը տեսնէք, որովհետեւ ինծ կ'արգիլուի Ձեզ գրել։ Ողջո՛յն, փոքրիկ բարեկամս։ Եղի՛ք մեծ և իմաստուն միանգամայն։*

Վ. ՀԻԿՕ

---

## ԸՆԴԼԱՅՆԵԼԻ ՆԻՒԹԵՐ

1. — **Հիւանդ ընկերոջ մը ուղղեալ նամակ.** — *Ձեր ընկերներէն մին չէ կրցած դպրոց գալ, որովհետեւ հիւանդութեան պատճառաւ ստիպուած է սենեկէն դուրս չելլել. Խընդրած է ձեզմէ՝ որ իրեն իմացնէք ամէն օր այն դասերն՝ զորս կուտայ ուսուցիչն իր բացակայութեան միջոցին։ Այս կերպով պիտի կրնայ հեռուէն հետեւիլ դասերուն՝ իր ունեցած գրքերուն շնորհիւ։ Իրեն կը պատմէք նամակաւ մը ինչ որ պատահած է երէկ դասարանին մէջ։ Կը վերջացնէք մաղթելով որ շուտով ապաքինի։*

2. — **Գթասիրտ բարեկամներ.** — *Ձեր անցեալ տարուան ընկերներէն մին Յակոբ շատ օրեր է ի վեր դպրոց չի գար. ամենքդ ալ կը փափաքիք գիտնալ պատճառը։ Ձեր ուսուցչին հարցուցէք թէ ինչո՞ւ չի գար. և նա կ'ըսէ. Յակոբ աղքատ է, շնորհքով ըզգեստ չունի, որ դպրոց գայ։ Այն ատեն հանգանակութիւն կ'ընէք եւ զգեստ առնելու համար պէտք եղած դրամը կը ժողվէք։ Այս պատմութիւնը [illegible] պէս աւարտեցէք և այս ամէնը գրեցէք Ձեր բարեկամներէն միոյն։*

3. — **Փոքրիկ տանտիրուհին.** — *Ձեր մայրը հեռու տեղ մը ճամբորդած է, իր բացակայութեանը տունը դուք կը կառավարէք։ Ձեր բարեկամուհիներէն միոյն նամակով մը կ'իմացնէք թէ ինչպէս կը կատարէք ձեր այս նոր պաշտօնն։*

4. — **Չքմեղանաց գիր.** — *Առ ընկեր մը.* — *Պարագայի մը մէջ զոր կը նշանակէք, բարկացած էք ձեր ընկերներէն միոյն դէմ և իրեն հետ կոշտ կերպով վարուած։ Արդ կը զղջաք և նամակաւ հաշտութիւն կ'առաջարկէք իրեն։*

5. — **Աղետալի անխոհեմութիւն մը.** — Սոսկալի փոթորիկ մը պատահած է քիչ ժամանակ առաջ ձեր բնակած տեղը. Ձեր դպրոցական ընկերներէն մին՝ որ նոյն միջոցին գաւառին մէջ կը պտըտէր, անխոհեմութեամբ ապաստանած է ծառի մը տակ և շանթահարուած է։ Այս դէպքը պատմեցէք ձեր բարեկամներէն միոյն։

6. — Ուսուցչի մը հիւանդութեան առթիւ ուղղուած նամակ։

7. — **Քաղաքն եւ գիւղն.** — Ձեր նախկին ընկերն Պօղոս երեք տարիէ ի վեր քաղաքը կը բնակի և նամակաւ մը զձեզ կը յորդորէ որ դուք ալ քաղաքը բնակիք. բայց դուք չէք ընդունիր իւր առաջարկն. կ'ուզէք գիւղը մնալ. ըսէք թէ ի՛նչ պատճառներով նախամեծար կը համարիք գիւղը բնակիլ։ Պօղոսին պատասխանեցէք ։

8. — **Օգտակար անասուններ.** — Ձեզ ծանօթ ընտանի կենդանեաց մէջէն ընտրեցէք երեք հատ, զորս ամենէն աւելի օգտակար կը համարիք մարդուն և ցոյց տուէք այն ծառայութիւնները՝ զորս նոքա կը մատուցանեն։

9. — **Ձամաչենք մեր թերութիւնները խոստովանելու.** — Պետրիկ, փոքրիկ դպրոցականը դասարանին մէջ ջորեակներ թռուցած է. այս դէպքը մեծ աղմուկ յարուցած է աշակերտաց մէջ ։ Ուսուցիչը ուզած է իմանալ թէ ո՞վ է յանցաւորը ։ Պետրիկ չհամարձակիր զայն ըսելու . բայց տունէն վերադառնալուն իւր ուսուցչին կը գրէ իւր յանցաւոր ըլլալը , կը յայտնէ զղջումն, կը խնդրէ իւր պատիժը . և միևնոյն ատեն կ'ուզէ իւր դասընկերները ազատել ընդհանուր պատժէն ։ Կը խոստանայ որ ապագային այդպէս բան չպիտի գործէ ։

10. — **Առ բարեկամուհի մը.** — Իմացած էք թէ ձեր բարեկամուհիներէն մին շատ յարգանք չընծայեր իւր մեծ մօր նկատմամբ։ Դուք կը գրէք նամակ մը՝ յորում կ'ընդլայնէք սա առածն. « Քու ծնողացդ ծերութեան ատեն յիշէ՛ մանկութիւնդ ։ »

# ԳԼՈՒԽ Ժ.

## ԶԱՆԱԶԱՆ ՏՈՄՍԱԿՆԵՐ, ՀԵՌԱԳՐԵՐ.

### *Ծնունդ*

*Տ.*

........ *Խնդութեամբ սրտի կ'իմացնէ Ձեզ թէ իւր կին երէկ գիշեր արու զաւակ մը ծնաւ ։*
*Մայրն ու տղեկն շատ լաւ են ։*

[Թուական] * * *

---

### *Մահ*

*Տ.*

*Անհնարին մորմոքմամբ կ'իմացնեմ Ձեզ քաղցրիկ որդւոյս մահն ։ Անողոք փողացաւն խլեց զանի մեր դրկէն ։*

*Յուղարկաւորութեան տխուր հանդէսը վաղը պիտի կատարուի ի ժամ* ........ ։

*Սգակիր հայր*

[Թուական] * * *

---

### *Հարսանեաց հրաւիրագրեր ։*

*Տ.*

*Տիկին* .................... *պատիւ ունի ծանուցանել Ձեզ զամուսնութիւն իւր որդւոյն* ............ *ընդ Օր.* ............*ի*

և խնդրել որ հաճիք Ձեր ազնիւ ընտանեօք ներկայ գտնուիլ Ս. Պսակի խորհրդոյն՝ որ պիտի կատարուի յառաջիկայ Երկուշաբթի, Մայիս 31, ժամը 7ին (Ը. Թ.) ի բնակարան ............, փողոց ........ Թիւ 10։

Պէյքոզ, 25 Մայիս 1863

---

## Այլ օրինակ (երկուստէք հրաւիրեալ)

Տիկին Գայծառ Խանձեան պատիւ ունի ծանուցանել իւր որդւոյն Գեւորգ Խանձեանի ամուսնութիւնն Օրիորդ Զարուհի Կիւմիւշեանի հետ։

Տէր և Տիկին Կիւմիւշեան պատիւ ունին ծանուցանել իւրեանց դստեր Օրիորդ Զարուհւոյ ամուսնութիւնն Խանձեան Գեւորգ էֆէնտիի հետ։

Եւ կը խնդրեն որ հաճիք ընտանեօք ներկայ լինել Ս. Պսակի արարողութեան՝ որ պիտի կատարուի երկուշաբթի, Հոկտեմբեր 22 [Ն. Տ.] ժամը 7ին [Ը. Թ.] Ղալաթիոյ եկեղեցւոյն մէջ։

Շնորհաւորութիւնք պիտի ընդունուին Խանձեան բնակարանն Ղալաթիա, Եկեղեցւոյ փողոց։

Ղալաթիա 1890 Հոկտ. 4/16

---

## Մահազդ

## ԿԱՐԱՊԵՏ ԷՖ. ՍԱՄԱՆՃԵԱՆ

Յետ կարճատեւ հիւանդութեան՝ կնքեց իւր մահկանացու կենաց ընթացքն ի հասակի 59 ամաց, յանմխիթար սուգ թողլով իւր ընտանիքն, ազգականք և բարեկամք։

Յուղարկաւորութեան տխուր հանդէսը պիտի կատարուի վաղը, երեքշաբթի, ի ժամ 8, ի Ս. Յովհաննէս եկեղեցւոջ։

Կէտիկ փաշա, 7 Յուլիս 1893

# ԳՐԻԳՈՐԻԿ

ՈՐԴԻ ՓԷԹՄԷՋԵԱՆ ՍԱՐԳԻՍ ԱՂԱՅԻ

*Հանգեաւ ի Տէր ի հնգամեայ գեռածաղիկ տիս ։ Յուղարկաւորութեան տխուր հանդէսը պիտի կատարուի այսօր ի ժամ 9, ի Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն ։*

Պոլիս 8 Յունիս 1890

---

*Պալեան, Սարգսեան, Թումաճանեան ընտանիքները ցաւ ի սիրտ կը ծանուցանեն զդառնաղէտ մահ*

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՍԱՆԴՈՒԽՏ ՊԱԼԵԱՆԻ

*իւրեանց քեռ, զոքանչի, ի հասակի 70 ամաց ։*

*Վաղիւ, ի ժամ 4, յուղարկաւորութեան տխուր հանդէսը պիտի կատարուի Ս. Յարութիւն եկեղեցւոյն մէջ ։*

15 Մարտ 1890, Բերա

---

Հրաւէրի տոմսակներ ։

*Տէր և Տիկին Բ........ յարգանօք կ'ողջունեն զՏէր և Տիկին Ա........, ոյց կ'աղաչեն զի հաճին գալ վաղիւ ժամը 5ին՝ ի միասին ճաշելու ։*

Պատասխան ։

*Տէր և Տիկին Ա........ պատիւ կը համարին ուրախութեամբ ընդունելու Տէր և Տիկին Բ........ի հրաւէրն և կը խոստանան որոշեալ ժամուն ներկայ լինել, ի միասին վայելելու հաճելի ժամեր ։*

---

Այլ հրաւէր ։

*Սիրելի՛ բարեկամ իմ,*

*Շնորհ մեծ է ինձ Ձեր ներկայութիւն ի մեր խո-*

նարհ բնակարան և մանաւանդ սեղանակից ունել ըզՁեզ։ Զուարթ և պարզ հոգիք զարդ են այդ սեղանին։ Եկէք ուրեմն վաղընդմիոյթ։ Դուք պիտի աւելցընէք սեղանին հրապոյրն։

### Պատասխան։

Սիրելի՛ բարեկամ իմ,

Ոչ նուազ ուրախութիւն է ինձ վայելել այն պատիւն՝ ում կ՚արժանանամ այս անգամ ևս Ձեր կողմէ։ Հոգ տարէք որ գինին լաւ ըլլայ, որպէս զի մեր բանաստեղծութիւն նոր թռիչ առնու։ Սեղանին հրապոյրն կ՚աւելնայ, երբ զՁեզ կ՚ունենամ սեղանակից։

---

### Հրաւէր ընտանեկան ոճով։

Լաւ խորոված հնդկահաւ մը, համեղաճաշակ լաբրակ, Սելանիկի գինի, արծարծուն շմինէ մը, մանաւանդ ազնիւ ճաշակիցներ։ Բոլոր ասոնք, սիրելի՛դ իմ Կարպիս, բաւական չե՞ն զՔեզ հրաւիրելու։ Ուրեմն ե՛կ շուտ, գեղեցիկ երեկոյթ մը պիտի ունենամք։

---

### Այլ օրինակ։

Տիկի՛ն,

Սովորութիւնը, մանաւանդ զբօսանաց սէրն ինձ հարկ կը դնեն վաղիւ պարահանդէս մը տալ. ոչինչ պիտի խնայեմ, որպէս զի այն արժանի ըլլայ ամէն անոնց՝ որք իրենց ներկայութեամբ պիտի պատուեն զայն։ Բայց Դուք, Տիկին, Ձեր շնորհներով պիտի լինիք գլխաւոր հրապոյրը. Ձեզմով պիտի գեղեցկացնէք երեկոյթը։ Ուրեմն մի՛ մերժէք ինձ այս պատիւը։

## Այցետոմսի օրինակներ ։

Նոր տարի մաղթել ։

Բազում երջանիկ տարիներ ։

[Թուական],

Ծննդեան տօնի առթիւ ։

Կը մաղթեմ զի ծնունդն ծնանի Ձեզ նոր բախտ, երջանկութիւն։

[Թուական]

Շնորհակալութիւն

Անուան տօնի առթիւ ։

Ձեր մեծ անուան տօնին մաղթեմ արտագին, Ձի երկարին օրեր ուրախ Ձեր կեանքին ։

[Թուական] *

### Մտերմական ։

Մեծ ... ...

Ես եւ Գ. Դարբինեան կ'ողջունենք զՁեզ։ Իցի՜ւ երջանիկ պատեհութիւնն ունենանք զՁեզ տեսնելու ։

[Թուական] *

### Ընտանեկան ոճով ։

Մեծ ........

Անզգա՛մ, ինչո՞ւ չեկար երէկ գիշեր։ Մինք ժամադիր եղած չէի՞նք ։ Երեկոյթն սքանչելի եղաւ։ Քու բացակայութիւնդ զիս տխրեցուց ։

[Թուական] *

### Հարսանեկան հանդիսի յղեալ ։

Ի հանդէս հարսանեացդ կը յղեմ չքնաղ ծաղիկներ. կոխոտեցէք զանոնք եւ մտէք ի դրախտ երջանկութեան ։

[Թուական] *

### Ուղեւոր բարեկամի ։

Ջինջ եւ անամպ երկինք, զուարթ եւ կենցաղագէտ ուղեկիցներ, յաջողութիւնք գործոցդ՝ Մաղթէ բարեկամդ

[Թուական] *

### Անուան տօնի ։

Երկարութի՛ւն եւ երջանկութիւն կենացդ·
Համբո՛յր խոհուն ճակատուդ·

[Թուական] *

ՆՈՑԵՄԻ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ

### Հրաւէր ․

Ռեբէոս Սամուէլեան պատիւ կը համարի հրաւիրել զՊ … ․, որ հաճի գալ վաղիւ ի ժամ 7 յիւր գրասենեակ.

[Թուական] *

ՍՈՂՈՄՈՆ ՊԱՊԱՆԵԱՆ

Բերա Ծաղիկ փողոց

Ագոհէ Շնորհքեան

Սարգիս Տէրունեան

Կարապետ Ն. Մկրտիչեան

[Փաստաբան]

ՄԻՔԱՅԷԼ ՆՇԱՆԵԱՆ

# ՀԵՌԱԳՐԵՐՈՒ ՕՐԻՆԱԿՆԵՐ

*Ալիշանի գրական յոբելեանին առթիւ ուղղեալ.*

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀԵՌԱԳԻՐՔ

*Թիֆլիզ, 24 մայիս*

Մշակի *խմբագրութեան անդամք և Ձեր վրայ սքանչացողներու մի խումբ կը ներկայացնեն իրենց ջերմագին բարեմաղթութիւններն Ձեր յոբելեանի մեծ տօնին առթիւ։*

*(Ստորագրութիւնք)*

---

*Թիֆլիզ, 25 մայիս*

*Խմբագրութիւն* Նոր Դարու *շնորհաւորելով զարժանաւոր տօնախմբութիւն յիսնամեայ գրական գործունէութեան Նահապետին ծերունու, մաղթէ կեանս երկարագոյնս ի վայելումն պտղոց անզուգական վաստակոց իւրոց։*

*Սպանդարեան*

---

## ՄԱՍՆԱՒՈՐՆԵՐԷ ՀԵՌԱԳԻՐՔ

*Կ. Պոլիս, 25 մայիսի*

*Պսակաւորիդ հանդիսին խնդակից, օրհնելոյդ կենաց օրհնաբան, անմահացելոյդ յերգս և ի մատեանս հայրենական, շնորհաւորեմ ի սրտէ փառաւոր յոբելեանդ։*

*Գարեգին եպիսկ. Սրուանձտեանց*

---

*Իզմիր, 26 մայիսի*

*Առ յարգամեծար մեծ արժանաւոր պատմագիրն,*

աշխարհագէտն, հնագէտն, վիպագիրն, Թարգմանիչն, բանաստեղծն, գրագէտն առաքէ ջերմագին բարեմաղթութիւնս

Եպիսկոպոսն Օրմանեան

---

Հալէպ, 24 մայիսի

Ի խորոց սրտի կը պաշտէ զՁեզ, անկեղծօրէն կը սքանչանայ Ձեր վրայ, և իւր բարեմաղթութիւնները կ'ընէ Ձեզ

Ադամեան ողբերգակ

---

Թիֆլիզ, 25 մայիսի

Կը բարեմաղթեմ Ձեր հանդիսաւոր տօնախմբութիւնը, կը մատուցանեմ սրտակաթ ողջոյն, խորին երախտագիտութիւն և խորին յարգանք։

Գաբրիէլ Խատիսեան

---

Փարիզ, 25 մայիսի

Մեծ պատմագրին, բանաստեղծին շնորհաւորում եմ յոբելեան, ցանկանալով երկար կեանք։

Սանասարեանց

---

Հռոմ, 25 մայիս

Կամէի որ դարեր ապրիք, տրուպ Ձեր հիացող՝

Ցէրվանեան

---

## ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԷ ՀԵՌԱԳԻՐՔ

Թիֆլիզ, 25 մայիսի

Թիֆլիզի կանանց Բարեգործական ընկերութիւնը այսօրուայ հանդիսաւոր օրը մատուցանելով մատուցանում է բանաստեղծ Հայր Ալիշանին իր սրտագին շնորհաւորութիւններն՝ ցանկանալով Նորա երկար կեանք։

Ատենապետուհի Աղիխանեան

*Երեւան, 25 մայիսի*

*Երեւանի Հայոց Բարեգործական ընկերութիւնը ողջունում է բազմարդիւն Հայր Ալիշանի պատկառելի յիսնամեայ գրական գործունէութիւնն։*

*Բժիշկ Սիմեօնեանց*

---

*Բագու, 25 մայիսի*

*Բագուի Հայոց Մարդասիրական ընկերութիւնը խո֊րին երախտագիտութեամբ շնորհաւորում է Ձեր բազ֊մարդիւն գրական յիսնամեայ գործունէութիւն։*

*Նախագահ, Ա. Ասօնեանց*

---

## ԶԱՆԱԶԱՆ ՔԱՂԱՔՆԵՐԷ

*Ախալցխա, 25 մայիսի*

*Շնորհաւորում ենք Ձեր բազմաշխատ յիսնամեայ գրական գործունէութիւնը. ցանկանում ենք Ձեր գըր֊չին բեղմնաւորութիւն, կեանքին արեւշատութիւն։*

---

*Էջմիածին, 25 մայիսի*

*Կ՚առաքեմք մեր շնորհաւորութիւններն, կ՚աղաչեմք Աստուծոյ՝ որ շնորհէ Ձեզ երկար երջանիկ կեանք։*

---

*Նուխի, 25 մայիսի*

*Ո՛չ կարօտի ալեզարդ գլուխ Նահապետիդ ձեռա֊կերտ պսակի, զի պսակ անմահութեան բոլորեն ի գը֊լուխ Ձեր Ձեր գրական գործեր։*

---

*Օտեսա, 24 մայիսի*

*Նահապետիդ ձայն ողեկէզ, պատմաբանիդ սիրտ զգայունասուրան թռչին դէպ խանդակաթ ծերկիրն մեր, մուսայդ դու վեհ, դեռ շատ հնչէ՛ հնչէ՛ տաւիղդ անմահ։*

---

## ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԳՐԱԳԻՏԱՑ ՈՄԱՆՑ ՆԱՄԱԿՆԵՐ

---

*Պէշիկթաշլեանի նամակներէն պատառիկներ ։*

*Օրհնեալ ըլլան անոնք որ իրենց սրտին գանձերը աննախանձ կը բանան տառապելոյն առջեւ. սակայն ի զուր կը շողայ արեւը դօս արմատին վրայ, նա ոչ ոստեր ընձիւղէ և ոչ ծաղիկ բողբոջէ։*

---

*Մուրատեան Ռափայէլեան աշակերտք ի յիշատակ բարերարաց տարեկան տօնախմբութիւն մը կատարեցին անցեալները. ժողովականք ամէնքն ալ շատ ցաւեր են իմ բացակայութեանս վրայ, հապա իմ սիրտս ո՛րչափ եղաւ չի կրնալուս ներկայ գտնուիլ հոն, ու իրենց հետ՝ քամել զուարթարար բաժակը. որուն խորը միայն պատրանք չի գտնուիր. երանի՜ այն բարեկամաց, երանի՜ այն սիրելեաց որ ուրախական հանդիսի մը մէջ կամ սեղանի մը շուրջը զիրար համբուրելով ոչ զոք պակաս կը գտնեն։ Քանի մը ճառեր կարդացուեր են, ընկերներէն մէկը իւր ատենախօսութեան մէջ իմ յիշատակութիւնս ու իմ անձիս նկարագրութիւնը գրեր է. հանդիսականք յուզուեր և ուժգին ծափահա-*

*րեր են. այս համակրութեանց ցոյցերը, ո՜հ, յիրաւի շատ անուշ պէտք է ըլլան, որովհետև ցամքած սիրտ մը կրնան դեռ վերստին դալարացնել։*

---

*...Երէկ հազէն սաստիկ տանջուեցայ... դուք ողջ առողջ՝ անցաւ ու անվրիշտ եղէք միշտ, այսպիսի իղձեր ո՛րչափ աւելի եռանդեամբ կը սլանան մարդուս սրտէն երբ նա ցաւոց մէջ կը հեծէ։*

*Իմ առողջութեանս վիճակը միևնոյնն է, կրնամ ըսել աւելի վատթար... կը սիրէի ատեն մը կեանքը և իրաւունք ունէի սիրելու բայց հիմայ որ անհուն զգացումներս անհուն պատրանքներ դարձեր են՝ կեանքը ինծի համար ոչ հրապոյր և ոչ արժէք մը ունի, ուստի անոր կորուստն ալ՝ կամ կորստեան երկիւղը չկրնար այլ ևս երեւակայութիւնս վրդովել։*

*Շատ հանգիստ ուղեւորեցայ ի Բերա, օդը գեղեցիկ էր, ինչպէս գիտէի, պահ մը կառքին պատուհանէն անյագ նայեցայ մը նետեցի երկնից՝ տեսայ զինքը վերջապէս իր ամբողջութեանը մէջ, ո՛րչափ ատեն է որ դրեթէ զուրկ եմ իրմէ, ժպտեցաւ ինծի բոլոր իւր գեղովը, այլ ի՛նչ օգուտ, ուրիշ ժպիտ մը չունէի ես իրեն փոխարինելու։*

*Օդոց սպառնալիքէն խուսափուկ, փութացի հայրենի շուքին տակ ապաստանիլ. չկայ քան զայն ապահովագոյն ապաւէն մը որչափ ալ աղքատին ըլլայ։ Ողբանուագ տատրակը իւր յետին և ամենէն աղէկիզիկ վուվուն արձկելով, մուսայից գգուելի գլխիկը դողդոջ թեւերուն տակ կը հանգչեցնէ. լսեցի նորա սըրտահեծ մնչիւնը և արձագանգն արդէն սկսաւ հնչել հոգւոյս մէջ։*

Ո՛րչափ գեղեցիկ են օդերը. բայց ես շարժելու կարողութիւն չունիմ, որ գոնէ ձիով փոքրիկ շրջան մը ընեմ, ո՛րչափ երկայն տեւեց այս եղերական տրամը ու ե՞րբ պիտի գոցուի։

---

## Պետրոս Դուրեանի նամակները։

Բարեկամ,

Հոս ձիւնը բաւական եկաւ, ծածկեց հիւղերն՝ որուն ներքնակողմն մօտ թշուառն ըսաւ. «Ահա՛ մեզ ծածկելու համար Աստուծոյ դրկած վերմակը.» և դողաց։ Պատանքի մը պէս ցուրտ էր այն։ Տաքցի՛ր այն վառարանին քով և մի՛ նախատեր զայն, թէև նժդեհ ալ ըլլայ։ Եթէ չքաւորութեան մէջ այդ նժդեհութիւնն ալ չըլլայ, ո՞ւր կը մնայ մեր ճակատագիրը, այն ճակատագիրը՝ որ զմեզ միացուց մանկութեան մէջ՝ այն ընկերական վառարանին շուրջը, որ դպրոց կըսուի։ Միշտ ձանձրալի է այժմեան աշխարհը՝ անոր համար որ ուղեղին մէջ ջահ մը չունի։ Աշխարհի քաղցրութիւնը վայելելու համար այն դարին մէջ շնչելու է, որ քուրձ կը հագնի և կը սիրէ, փիլիսոփայ աշխարհը ըսել կուզեմ, որ արդէն ուղեղներու մէջ կը սաղմնաւորի...բայց հիմա սրտի ծալքերը թղթատելու ժամը չէ։

Քու սիրալիր թերթիդ մէջը ... կըսես և հառաչելով կը գոցես։ Բարեկա՛մ, երբէք պէտք չէ յուսահատիլ մեր ազնիւ բարեկամին կացութեանը վրայ. նորա վրայ երևցածը լոկ բնութեան մէկ ժամանակական ներգործութիւնն է, ինչպէս երբեմն իր Տ... եղբայրն ալ ունեցած է վաղանցիկ կերպով։ Ասի ի-

րենց ցեղին մէջ մէկ անձւաս օդերեւոյթն է։ Շատ մեծ յոյս ունիմ որ քաջառողջ կը վերադառնայ։

Այլ քու վերադարձդ ե՞րբ պիտի ըլլայ. պէտք է որ իմացնես, եթէ գիտես կամ որոշած ես. արդեօք ե՞րբ մեր նսեմ ճակատները պիտի միանան... քիչ մը յառաջ նժդեհութիւնը ծաղրեցի, այլ անոր դառնութիւնն կզգամ հիմայ։ Ա՜հ, բարեկա՛մ, միթէ մեր համազգաց սրտերուն յարայոյզ փոթորիկներն իրարու հաղորդելու համար կը բաւե՞ն այս տկար թուղթերն, որոնք կրկայի մը չափ յամրընթաց են մեր մագնիսացեալ սրտերուն կայծերը տեղափոխելու համար սրտէ ի սիրտ...։ Իմ վիճակս եթէ հարցնես, դեռ անորոշութեան մէջ կը ծփայ։ Եւ այժմ այսչափ։ Չեմ ցաւիր իմ վիճակիս և յուսահատ ապագայիս վրայ, որչափ յառաջ. ա՛լ ոչինչ փոյթս է, միմիայն ընտանեացս բեռ չըլլալ. այս է որ՝ կը կորացնէ քամակս... դեռ խօսելիքներս ուրիշ ատեն։

Ի տեսութիւն։

Պ. ԴՈՒՐԵԱՆ

1869 Դեկտ. 20

Իւսկիւտար

---

Սրտակից բարեկամ,

Ժամանակէ մը ի վեր է որ քեզ նամակ մը գրեցի, որ անպատասխանի մնաց. չցաւեցայ յայդ. հասկցայ որ կամ պատասխանելու միջոց չես ունեցած կամ կարեւորութիւն չես տուած. թէպէտ կրնայի ես այն ատեն նամակ մը երկրորդել. սակայն ի՞նչ գրէի. ի՞նչ կրնայ գրել ա՛յն, որուն սիրտը դատարկ է. պիտի մա-

կարերես արդ խելովի թէ քանի որ այժմ կը գրեմ, անշուշտ սիրտս լեցուն ըլլալու է՝ ... այո՛, աւելի է այն՝ սգալի յիշատակի մը արտօսրով։

Ես գրեթէ խաղաղ կը նիրհէի երբ Մայիս 21ի սեւ գիշերը կը քրտնէր, երբ հոգի մը սրտերու ու գերեզմանի մէջտեղ կը կողկողէր։

Փտեցան նորա ոսկերքն հիմա. հարթ և անյայտ եղաւ նորա հողակոյտը։ Չէի հաւատար թէ պիտի մեռնի, մինչեւ այն ժամանակ, երբ իր վերջին նուաղեալ նայուածքներէն մին արձակած ատեն, դեռ ինձ չհասած, երկուքիս մէջ տեղ ինկաւ, մարեցա՛ւ, մինչեւ ա՛յն ատեն, երբ խղդուկ ձայնը՝ տխուր մնաս բարովի մը մէջ կը մարէր ... Ա՜հ, յիշատակներ կան, որոնք իրենց շարունակութեան մէջ միեւնոյն շանթերն են...։ Սրտիս ծալուցը մէջ միայն մէկ կորովի խորշ մը կրցի պահել՝ իր տխուր դամբանականը արտասանելու համար։

Ինչպէս որ տեղ մը ըսած եմ, մարդկութեան վառարաններէն մէկուն՝ վարժարանի մը մէջ սեւ ճակատագիրը երկաթեայ պսակով մը մեր գլուխներն իրարու մօտեցուց, սեղմեց, ի մի խմորեց գաղափարներն, և մեզ՝ մանուկ հանճարներս՝ դալկահար շանթերու փունջ մ՛ըրաւ. ահա՛ այդ սեւ ճակատագրիս պլլուած շանթերէն մին մարեցաւ բոլորովին՝ տխուր վերջալոյս մը պատկերելով իր սիրելեաց սրտին խոր։

Տխո՛ւր խոստովանութիւն...

Ազնիւ բարեկամ, ձմեռը քեզ կը գրէի թէ կը մըսիմ, արդ կը դողդոջեմ, բերնէս արիւն կը հոսի, կը հիւծիմ, ճակտիս վրայ կենաց չիկնոտ ժպիտը կը տըժգունի, անդուլ կերպով քնարս կը թօթվեմ անհուն «մնաս բարով»ի մը համար անո՛նց, որոնք իրենց սըր-

տին ծալքերը չբացին ինձ. այլ միայն դուրսէն ճաճանչեցին. Նախ կնոջ... երեւակայութեան տիրուհւոյն..։

Ա՛հ. Նէրա մէկ շողը երազ մը կը վառէ, Նէրա մէկ բոյրը սրտի մը մթին խորանը կը խնկարկէ... մեռնի՜լ թարմ ու երազոտ, մեռնի՜լ առանց մարմարեայ ճակտի վրայ խորշոմ մը ձգելու, առանց շուրթեր համբոյրով մը բորբոքելու, առանց հոգին ժպիտով մը հրդեհելու, մեռնի՜լ... տխուր է այդ. սակա՛յն...

Շատ կը ցաւիմ. անցեալներն պիտի կարենայիր հոս գալ. բայց դարձեալ սեւ ճակատագիրն արիւնոտ ձեռքը կարկառեց մեզ և խառնակեց ամեն բան. չեմ գիտեր թէ Նորէն գալուդ համար միջոց մը պատրաստուա՞ծ է. եղբայրդ քանի մը օրէ տեսած և հարցուցած չեմ։

Ա՛հ. կուզեմ հետդ տեսակցիլ. դարձեալ ես նոյնն եմ, միայն թէ քիչ մը դերեզմանի հակած և խոկմանցս գագաթնակէտն յառած եմ։

Կը յուսամ որ ա՛լ քենէ նամակ մը կընդունիմ կամ քիչ օրէն հոս կը տեսնուինք։

Բարեկամդ

1871 Յուլիս 6 Իւսկիւտար — Պ. ԴՈՒՐԵԱՆ

---

Եղբայր իմ,

Ներեցէք.

Իրաւամբ զնէ հռչակել կուզէի, այլ զգացումներս մութ և դրիչս տկար գտի նիւթին վսեմութեան առջև... ա՛հ, միթէ կարելի՞ է Ովկիանոս մը հեծկլտալ։

Այս օրերս դարձեալ մշտնջենաւոր վէրքս շունչ առաւ կուրծքիս տակ, ձգէ՛ սա «Նոճեաց տղուն», (այսինքն իմ), օձիքն, սա «դաշնակցաց բուն», որ

վսեմութեան առջեւ երբեմն կ'ապշի, որուն սրտին ան-
դունդը կալեծփի, շուրթերը քար կը կտրին, որ միշտ
իր վէրքին կը նայի, ձգէ՛ սա «մտերմաց դալկահարը»։
Ցանցաւոր եմ... այլ ո՛չ. վէրքի՛ս մօտեցիր, եղ-
բա՛յր իմ, սա անդունդին... սակայն սեւ ժայռը եւ
երկինք հոն կրնան նայիլ լոկ։

Կը յուսամ որ մինչեւ այս տողերուն հասնելուդ
ներեցիր, և իմ չկրցած հասկցուցածս դու հասկցար ան-
շուշտ, վասն զի սրտի մը խաւերը կրնայ թափանցել՝
բանաստեղծի մը խոկմանց սլաքը։ Դեռ շատ կ'ուզէի
գրել. բայց թէ՛ ես անհուն եմ և թէ եղբայրս նա-
մակը ուշ ձեռքս հասցուց. բայց նա ալ այսպէս ընել
ստիպուած էր պարագայից բերմամբ։

Նամակիդ կ'սպասեմ։

Ի տեսութիւն։

Եղբայրդ
Պ. ԴՈՒՐԵԱՆ

1871 Օգոս. Իւսկիւտար

---

Մտերիմդ իմ,

Ահա՛ անհուն «Մնաք բարովի» ի առաջին թելը կը
զարնեմ. Զքեզ տեսնել ուզեցի, ուզե՛լ՝ ինձ համար
ծարաւիլ է, դողդոջ քայլերս կարգի դրի ձեր տունը
գալու, զքեզ հարցուցի և հարցունելուս հետ՝ անմի-
ջապէս կօշիկներուդ տեղը նետեցի ակնարկս. մայրդ
և դատարկութիւնը տխուր պատասխան մը տուին ինձ.
— Հոս չէ. — «Եղբայրս, ըսի իւրովի, հոս չէ՜...։»

Գիտեմ. կենաց դառն ներդաշնակութիւնը չներեց
գալ տեսնել անգամ մը եղբայրդ, դալկահար և դող-
դոջ հիւրը. սակայն այս ճակատագրին սեւութեանը
ի՞նչ պէտք է ըսել որ իմ տկար քայլերս չի վարձատ-

րեց և ստիպեց զիս յողդողդ ոտնափոխներս ներդաշնակելով մեկնիլ տխուր ու ցաւած։ — Ո՞ւր. — Ընտը-ռել խորշ մը, ուր արտասուաց բոցանուտ չիթերը կը քօղարկուին մարդոց աչքերէն։

Իմ վիճակս յուսահատական է, եղբա՛յր իմ, սակայն ես հանդարտ եմ և հարկաւ քիչ մը տխուր, թօշնեցաւ ամեն մարդկային տենչ սրտիս մէջ, տենչ, աշխարհի այդ ոսկեզօծումը. ամեն յոյսերս մոխիր դարձան, իբրև մեքենայ կապրիմ դրեթէ. իմացական հըրահրումս կորուսի, մտածումներս կարճ են և մութ։

Սակայն մի՛ ցաւիր, բա՛րեկամ, սապէս համոզուէ որ քու եղբայրդ գերեզմանի տեղ նոյեան տապանը կը մտնէ աշխարհի արիւնահեղեղէն փրկուելու համար ... ո՛չ, այս սեւ մտածումը չկշռեր երբէք ծանր՝ հոգւոյս վրայ, որչափ արցունք մը աչացս մէջ։

Ո՜հ, ո՜րչափ ինձ հաճոյական է քեզ ընթերակցելով դալկահար վերջալուսի մը փողփողումին քանի մը ժամեր ծծել... սակայն գիտեմ, այս հիւանդութեանս մէջ փոքր ինչ նողկալի եմ... ինձ նայողին ճակտին վրայ՝ արգահատական ծալքերու պատկերումը կը տեսնեմ ես։

Սակայն դու, սրտայօ՛դ բարեկամ, գիտեմ որ միշտ զիս ժպիտներուս, ցաւերուս, առողջութեանս և հիւանդութեանս մէջ առհասարակ համահաւասար, անյողդողդ սիրով կը սիրես, և երբ իմ վրայ դուրդուրալով ներքինս կուզես խառնել... ես կոպտութեամբ չատ անգամ քեզ կը յանդիմանեմ՝ մահուան սեւ մըտածումը սնուցանող ախտաւորի մը նման. կը յուսամ որ այդ կծու խօսքերը շրթունքէս ինկած ատեն՝ նոյն ժամայն ներողութեան արժանացած են բոլորն ալ։

Երբէք մի՛ մտաբերեր որ ես յուսահատ եմ. բնա՛ւ,

թանաստեղծ մը մահուանէ չսոսկար. այն ատեն իրաւունք ունէի ցաւելու, երբ ամէնքն անմահ ըլլային, և ես միայն մահկանացու։

Այսպէս համոզուէ՛։

Ի քաղցր տեսութիւն։

1871 Սեպտ. 5 Իւսկիւտար — Պ. ԴՈՒՐԵԱՆ

---

Եղբայր իմ,

Շնորհակալ եմ որ միշտ կը յիշէք զիս. «Յուշը սիրոյ քոյրն է». կը ցաւիք անշուշտ որ ես փոխադարձաբար չեմ խօսիր։ Ձեզ յիշեցուցած եմ արդէն որ ես վսեմին առջեւ կը պապանձիմ. պատասխանելու համար բաւական կը համարիմ, երբ արտօսր մը աչքիս եզերը կայրի, և շունչ մը շրթերուս մէջ կը բեկբեկի, մանաւանդ հիմա որ հոգւոյս կենսաբոյր ծաղիկը թօշնած է, և նորա տեղ վէրք մը կը մնայ ներսս. երկու տող բան չեմ կարող գրել. երեւակայութեանս մէջ ցուրտ մշուշ մը կայ թանձրացած։

Հիւանդութիւն և անբուժութիւն՝ գերեզմանի այդ երկու ստինքն կը ծծեմ. յուսահատութիւն՝ գերեզմանի այդ սեւ կաթն կը խմեմ . . . ինձ համար չկայ յոյս. անդունդին մէջ շիւղի մը պլլուած եմ։

Ազնիւ եղբայր, ո՛վ դրդեց քեզ այսպէս գորովիլ իմ վրաս, ունկն դնել անդունդն հսկող անձի մը խօսքերու, և զուարթ թիթեռնիկ մը ըլլալով՝ սիրել նոճիի մը շուքը . . .։

Ազնիւ եղբայր, թիթեռնիկով մը նոճի մը սգաւորութենէ չդադրիր. այլ գուցէ նորա ցուրտ շուքին ներգործութեան ներքև գողտր թիթեռն մը թօշնի . . .։

Ա՜հ, ո՛րչափ մթագնած է երեւակայութիւնս. ո՜հ, ո՞ւր էք, կրակք իմ, մարեցաք . . . մարեցաք, եւ ալ չպիտի վերադառնա՛ք, . . . ուժաթափ են այս խօսքերն, որքան գունաթափ է զանոնք ներշնչող հոգին . . . իմ մէն մի խօսքերս դուք Ձեր վառ երեւակայութեամբ մէկ մէկ գրքեր ըրէք, եւ զիս լաւ պիտի կարդաք այն ատեն, լաւ պիտի սուզիք յիս:

Եղբայր իմ, ներեցէք գրութեանս աններդաշնակութեանը. ի՞նչ ուղղութիւն կրնաս պահանջել աւրուած դաշնակէ կամ նուագարանէ մը:

Ի՛նչ գրելս չեմ գիտեր:

Կաղաչեմ, բա՛ւ համարեցէք ջախջախեալ քնարի մը այսչափ հեծեծանքը:

Քանի որ ժամանակնիդ ներէ, կաղաչեմ, ձեր սիրալիր գրութիւնքը մի՛ զլանաք, որոնք միշտ զիս պիտի յեղաշրջեն ի վսեմն:

Դուք Երկրագունտներ ինձ տալ խոստացած էիք. եթէ կարելի է, զանոնք շնորհելու փութացէք, վասն զի առանց կարդալու բան մը ունենալու, դունէն դուրս չելնելու ստիպուած ըլլալով. շատ կը նեղուիմ:

Նէրա հետ ի՞նչ ունեցաք մինչեւ հիմա. կաղաչեմ, տեղեկութիւն. տեսնուինք:

Եղբայրդ
Պ. ԴՈՒՐԵԱՆ

1871 Սեպտ. 6 Իւսկիւտար

---

## Նահապետ Ռուսինեանի նամակը:

Սիրեցեալդ իմ,

Ցանկալի գիրերդ առի, մէկը տարիէն աւելի կայ միւսն այս անցեալ օրերս: Գիր չեն ատոնք այլ հա-

ռաչք որ սրտիս մէջ եկան գտին արձագանք։ Ի՜նչպէս կրնայի գրով պատասխանել· գիրք ու գրիչք ընկած են աչքէս և անկարող կը թուին զիս բացայայտելու․ խօսակցութեան սիրող եղայ, այն մտերիմ զուարթ խօսակցութեան ուր ամէն բան կը ճառվի լայն ու ազատ ինչ որ մտքէ անցնի, առանց խնդրոց կարգ հարցընելու, ուր սրտեր կը կարդացվին։ Ո՞ւր են այն օրերը որք գիշեր կ'ըլլային և այն գիշերները որ տիւ կ'ըլլային և դեռ մեր խօսքերը չ'էին սպառեր և դեռ մեր սրտերը չ'էին յագենար։ Անցան այն երջանիկ ժամերը, կորուսի այն ցանկալի խօսակիցներս, 'զոմանս ի յաւիտեան, աւա՜ղ, և 'զոմն ի պանդխտութեան․․․․ շատ եկաւ բախտին մեր երանութիւնը, բայց չ'անցաւ ու չ'անցնիր սրտէս անոնց յիշատակը, միակ սփոփանքս, աղքատին մխիթար։ Կրկնակ հառաչանքդ ու Տիմոթեայ ձայնն որ կը լսեմ երբ երբեմն, կ'արթնցնեն յիս այն յիշատակները ու կսկիծներս կը նորոգեն։ Ի՜նչպէս չ'ըլլամ առանձնամոլ, երբ կամուրջէն անցնիմ ու դառնամ ու այն խուժանին մէջ ձեռք մը չ'ելլայ ձեռքս սեղմելու, ձայն մը ձայնիս և սիրտ մը սրտիս պատասխանելու։ Շատ են մարդիկ, լայն է աշխարհս· մարդիկ, աշխարհ, երկինք տաղտուկ են աչքիս, չը գիտեմ ի՛նչ է ուզածս․ սա կ'ըզգամ որ հոգւոյս նեղ կը թուի իր ջնջին ծրարը և զանի պատռել կը փութայ․ բան մը չեմ տեսներ որ զիս զբօսնէ, բան մը որ 'զիս աշխարհիս յարէ․ չիք մօտս բարեկամ մը որուն սիրտ բանամ. մարդոց արհամարհոտ ծիծաղին նիւթ չ'ըլլալու համար այս՝ մարդոցմէ հեռի և գուցէ վայրենացեալ՝ ես միւս եւս անբախտ կոչեալ ի սեղան կենին (կենաց)՝ շիրմին հանգիստը կ'սպասեմ․․․․․։

*Մի՛ տար բարեկամ և չեմ հաւատար որ կարենաս տալ իմ երկար լռութիւնս անտարբերութեան կամ թմրութեան մտերմական զգայից. ո՛չ ամենեւին, այլ ծուլութեանս տո՛ւր քիչ մը կ'ուզես նէ, բայց շատ մը շփոթութեան մասայ տուր, յուսահատութեանս, հոգւոյս այն քայքայեալ վիճակին 'զոր գիրք ու գրիչ չ'են կարող ըսի բացատրել. արդեօք հոգին կը նկարվի՞, զգայք կը գծվի՞ն. ցաւը կ'ըզգացվի, ձայնը կը լսվի բայց թղթի վրայ չ'են առնվիր:*

*Դու կը հառաչես, բարեկամ, ես կը հեծեծամ. գըրէ՛ միշտ ինծի, կրկնէ՛ յաճախ հառաչանքդ. որպէս հեշտութիւնք կրկնութեամբ կ'սպառին նոյնպէս և թախծութիւնք կրկնութեամբ կը մեղմին. ինծի հետ նամակներդ մի՛ համրեր. ես ազատ թող երբ կարողանամ գրելու. վարէ՛ ես իբրեւ հիւանդ կամ՛ իբրեւ վեղծ մանուկ: այսչափիկ ալ ինքնամոլութիւն ներէ՛ ծեր բարեկամիդ՝ որ զքեզ պինդ կը սիրէ,*

ՌՈՒՍԻՆԵԱՆ

---

## Ա Ղ Օ Թ Ք Ը

15 Դեկտ. 81

*Սիրելի եղբայրս,*

*Աշխարհիս վրայ մարդիկ կան որ կը հաւատան, մարդիկ կան որ չ'են հաւատար. ես անոնցմէ եմ որ կը հաւատան: Հիմա՞ միայն կը հաւատամ և միթէ այսօ՞ր սկսայ աղօթել: Կրնամ ըսել թէ կեանքիս մէջ օր մը չ'է եղած որ չ'աղօթեմ: Այս աշխարհիս մէջ այնքան անիրաւութիւնք կան և այնքան խեղճ է մարդս, որ արդարութեան զգացումն որ ունինք մեր ներսի*

դին և մեծութեան զգացումը մեզի կ'ուսուցանեն թէ այս աշխարհը անցք մըն է միայն մեզի համար, կամուրջ մը։ — Գիտեմ, սիրելի՛ եղբայրս, ազատութեան ատեն աւելի հաւատք կար և այսօր չըհաւատացողները գիտուններն են։ Չըհաւատացողնե՞րը․ ո՞ գիտէ թէ չ'են հաւատար։

Ասկէ 30—40 տարի առաջ Փրանսայի մէջ Բրուտոն անունով անձ մը կար մեծ սաղանդի տէր․ այս մարդը անհաւատութեան դրօշակիրը ճանչուած էր․ իր մէկ գրքին մէջ ըսած էր․ « Retire toi, Dieu, tu opprimes mon intelligence »․ այս մարդը հրապարակաւ Աստուծոյ չ'էր հաւատար․ երբ օր մը իր առջեւը ըսին թէ « Ահա Բրուտոն Աստուծոյ չը հաւատար »․ պատասխանեց « Qu'en savez-vous ? »։ — Այս ժամանակիս էն մեծ անհաւատներէն մէկը և ամենէն գիտունը թերեւս Լիթրէն էր․ իր մահուանէն վեց ամիս առաջ՝ դարձեալ մահուան սարիճան հիւանդ ինկած էր եւ բժիշկներն յուսահատած էին․ այն օրերը իր բժշկին ըսեր էր « Docteur, je vais entrer dans la grande nature »․ ահա՛ ճշմարիտ անհաւատի խօսք․ այլ այս խօսքը չը նշանակե՞ր թէ մեռնելէն ետքը մեծ բան մը կը բնտռէ կոր հոն մտնելու համար․ եւ ես երբ կարդացի այս խօսքը՝ ըսի․ « Լիթրէ սկսած է հաւատալ »։ Վեց ամիս ետքը մեռաւ և հաւատացեալ մեռաւ։ — Այլ կ'ընդունիմ որ անհաւատ ապրողներ ալ կան, թերեւս նաեւ անհաւատ մեռնողներ։ Ես հաւատացեալ ապրեցայ, եւ հաւատացեալ մեռնիլ կ'ուզեմ։ Նիւթընին հետ, Վօլթէռին հետ, Ժան Ժաք Ռուսօյին հետ, Բասքալին հետ, Լամառթինին հետ, Պայրընին հետ, Վիքթօռ Հիւկօյին հետ ես ալ հաւատացեալ եմ։ Այլ ոչ թէ անոնց համար և անոնց պէս, այլ նախ և ա—

*ռաջ հաւատացեալ եմ Հօրս համար ։ Եւ եթէ հայրս ալ հաւատացեալ չըլլար՝ ես դարձեալ հաւատացեալ պիտի ըլլայի ։*

*Անուրանալի է մարդկային բանականութեան համար որ ամէն արդիւնք պատճառ մ'ունի ։ Երբ կը տեսնենք այս աշխարհը և երբ մանաւանդ գիտութեան աչքով կը տեսնենք այն աշխարհները որ յանհունս կը մեծնան և զանոնք որ յանհունս կը փոքրկանան,* les infiniment grands et les infiniment petits, *որք կը կազմեն ինչ որ կը կոչենք* տիեզերք, *երբ կը տեսնենք այն զարմանալի ներդաշնակութիւնը և կարգը որով կը վարի այս տիեզերք, նոյն իսկ մեր բանականութիւնը կը հռչակէ մեզի որ ամենակարող զօրութիւն մը ու ամենագէտ իմացականութիւն մը՝ այս մեծ շինուածին ճարտարապետն է եղած ։ — Այլ եթէ անտեսանելի ըլլայ այս տիեզերք մեր պարզ աչքերուն ու մեր մտաց աչքերուն, եթէ չըլլայ այս տիեզերք մեզի համար, այլ հերիք է որ կայ ու կը լսենք ու կը զգանք ներքին ձայն մը, ներքին ձայն մը որ կ'ըսէ թէ « այս բանը գէշ է, մի՛ ըներ ». և « այս աղէկ է ըրէ՛ », ներքին ձայն մը որ կ'ըսէ մեզի թէ « ստեղծող մ'ունիս » և թէ « դատող մ'ունիս ». և այն ձայնը մեզի կ'ըսէ « աղօթէ Ստեղծողիդ և դատաւորիդ առջև սփռէ քու խոստովանութիւններդ ու զղջումներդ » ։ Ես այս ձայնը միշտ լսած եմ իմ ներսի դիս, և զօրաւորագոյն հնչած է յիս ամեն անգամ որ այնպիսի գործ մը կատարելու վրայ եղած եմ որ ծանր հետեւանք պիտի ունենար կեանքիս մէջ ։ Աւա՜ղ, ոչ միշտ հնազանդած եմ այս ձայնին, և աղէտներս միշտ այսպիսի անհնազանդութենէ յառաջ եկած են ։ Մարդիկ կան որ կը խեղդեն այս ձայնը իրենց սրտին՝ մէջ կամ կը գօսացնեն իրենց ա-*

կանչն ու սիրտը այս ձայնին դէմ։ Ես ոչ երբէք խեղդած եմ զայն և աստուածային արդարութեան ու գթութեան առջեւ այս միայն իրաւունքս մնացած է։

Այսպէս էր մեր հայրը, սիրելի եղբայրս. դուք գիտէք և կը վկայէք զայս, բոլոր եղբարք իմ և քորք։— Այլ մենք շատ իսկ լսեցինք ուրիշ տեսակ ձայներու, և անոր՝ աղմուկ մեր սրտին մէջ։ Ու դժբաղդութեանց մէջ չունեցանք այն սուրբ ու կամաւոր համբերութիւնն զոր ունէր մեր հայրը։ Կեանքին նիւթական վայելքներուն մէջ որ միմիայն յոգնութիւն ու զզուանք կը բերեն, բնտռեցինք այն ճշմարիտ վայելքները զոր միմիայն բարոյական կեանքը կուտայ։

Ինչո՞ւ կը զարմանաս որ կ՚աղօթեմ։ Աստուած չըկա՞յ ուրեմն որ չ՚աղօթեմ։ Այլ եթէ կայ, և դու գիտեմ որ բոլոր սրտով կը հաւատաս թէ կայ, ի՞նչ բան աւելի մեծ է քան աղօթելն Աստուծոյ. և երբ ես այս կարողութիւնը կը զգամ յիս, խիստ քի՛չ է որ չ՚աղօթեմ երբեմն կամ օրը ժամ մը կամ երկու ժամ. ես՝ ոչինչս՝ կը բարձրանամ առ այն որ ամենայն ինչ է. և անոր, Գերագոյն էակին ոտքը կը սփռեմ իմ զղջումներս ու խոստովանութիւնքս, անոր արդարութիւնն ու գթութիւնը կը հայցեմ ինձ համար. այս ըրածս թո՛ղ աշխարհ ծաղրէ՝ բայց դու ո՛չ, սիրելի եղբայրս։ Ի՞նչ աւելի մեծ մխիթարութիւն և ո՞ր զօրութիւն աւելի մեծ է, երբ մարդ՝ վիշտեր ունենայ, երբ աղետից հանդըպի, երբ խեղճութիւն տեսնայ, երբ պզտիկութիւն տեսնայ, կարենայ առ Աստուած համբառնալ։ Եւ «Աստուած եթէ անլսօղ ալ ըլլայ մեր ձայնին, ինչպէս կ՚ըսէ Լամառթին, մենք դարձեալ պէտք է աղօթենք. զի եթէ իր մեծութիւնն Անոր՝ մեզի չըլսելն եղած ըլլայ, մեր մեծութիւնը դարձեալ իրեն աղօթելն եղած կ՚ըլլայ»

*ու քիչ մը անդին կ'ըսէ « այլ ո՞ գիտէ թէ կորուսեալ է (աղօթքը)··· (կը ցաւիմ որ միտքս չ'է ամբողջ պարբերութիւնը և քովս չէ գիրքը) — աւասիկ իմաստը — ո՞ գիտէ թէ այնպէս չը սահմանեց Աստուած ի յաւիտենից, որ աղօթքով զմարդ ինքն ալ մասնակից ընէ իր սեպհական ճակատագրին կազմութեանը »։ — Լամարթինի այս էջը բոլոր կ'արժէ որ կարդաս Ռաֆայէլին մէջն է. իմ վրաս միշտ մեծ ազդեցութիւն ըրած է։*

*Ու մարդս այնքան վտանգներով շրջապատեալ է, այնքան թշնամիներ ունի, և իր էն մեծ թշնամին ինքն է, իր տկարութիւնները, իր մոլութիւնները։ Իյնալէն ետքը՝ նորէն ո՞վ պիտի կանգնէ զինքը եթէ ոչ աղօ՛թքը։*

*Ուրեմն կ'աղօթեմ, աղօթէ՛ դու ալ, սիրելի եղբայրս։ Մեր հայրը մեզի սուրբ և անկապտելի ժառանգութիւն մը թողուց, հաւատքն ու բարեպաշտութիւնը. աղօ՛թքը։ Կը յիշե՞ս այն ժամանակները որ բոլոր ընտանեօք կ'աղօթէինք իրկունները։ — Ուրիշ ինչ ժառանդութիւն թողած ըլլար՝ մինչեւ հիմա վատնած էինք. այս ժառանդութիւնը թէեւ վատնի՝ այլ նորէն կ'ստացուի։*

*Քոյդ*

* * *

---

## *Մտերմական նամակ առ Մ. Պէշիկթաշլեան։*

6 *Ապրիլ* 1866 *Ռուսճուգ*

*Գեղեցիկ է այս առաւօտ, ջուրն ու թռչունը ճըլուըլտալով ու մարդուս սիրտն ալ ճխալով կ'ողջունեն*

անոր ծագումը — եռեւէն ալ արեւը պայծառ ու զուարթագին՝ իր կարմիր ճաճանչները կը սփռէ Ոուս–ճուքի վրայ ու Պոլսոյ գեղեցկագոյն օրերը կը յիշեցնէ ինծի — իր ճառագայթը իբրեւ թէ Աստուծոյ ժպիտն է և ուր որ թափանցէ հոն մխիթարութիւն մը ու բարիք մը կը ծնանի․ ալիքներուն լալիքը՝ քաղցրաձայն կարկաջանաց կը փոխարկէ․ լեռներու լերկ գլուխները ծաղկօք ու դալարեօք կը պսակէ․ մեռելատիպ դաշտերու վրայ համասփիւռ խնծիղ ու կայտառ կը ցանէ — անոր կենդանարար այցելութիւնն ընդունելով՝ հոս ծառերը ծիլ կ՚արձակեն․ հոն ձունէն ու բուքէն մնացած սառի կոյտ մը կը փշրի ու ծործորին մէջ հեղեղին կը խառնուի որ կ՚երթայ դաշտը կ՚ոռոգէ։ — Իբրեւ թէ Աստուծոյ ակն է ամեն տեղ և մինչեւ ամենէն յետին հիւղակը կը թափանցէ և ամեն տեղ արտասուք մը կը չորցնէ և ուրախութեան փայլ մը կը ցոլացնէ․․․ու միայն իմ աչքիս արտասուքը չը չորցունե՛ր ու միայն իմ սրտիս մէջ լոյս ու մխիթարութիւն չը ծագեր այն ճառագայթը․․․։

Ա՜հ, քանի՜ գեղեցիկ էին այն առաւօտները որ ի Պոլիս կը ծագէին մեզի երբ երկուքիս ալ սիրտերը նմանօրինակ բաբախիւններով կը բաբախէին և անոնց բոցն ալ սա նոր ծագող արեւին բոցոյն նման հեշտ ու ջեռուցիկ էր միայն։ Ինչո՞ւ չեն դառնար այն երանաւէտ օրերը ու անոնց հեռաւոր յիշատակն իսկ կը մթագնի ինծի համար ներկային արձակած սեւ շուքերովը։ Վա՜յ, ուրեմն կորուսի երջանկութեան զգացումը որ մէկ մ՚ալ չպիտի փայլի իմ դիմացս վրա․․․ և թերեւս, ո՜վ գիտէ, քու դիմացդ ալ վրա արդէն մարած կամ նուաղելու վրա է, բարեկա՛մդ իմ։ Զի միեւնոյն ժանտ ճակատագիր մը՝ խնդում երեսով կը հալածէ

երկուքս ալ — երկուքս ալ ի մանկութենէ թշուառութեան կարծես նախագրեցին երկինք — դո՛ւն, խե՛ղճ Պէշիկթաշլեան, ծնած օրէդ, չգիտցար թէ ի՛նչ են մօր մը գգուանքը և թերեւս բոլոր կեանքիդ մէջ այսօրինակ սիրոյ մը քաշած կարօտդ հիւծեց մաշեց քու տխրազգած գոյութիւնդ և ամենայն այլ գգուանք անօրոշ ու վայրավատին յոյսերով օրօրելով զքեզ պահ մը, կեանքիդ ու խղճիդ հանդարտութիւնը վերուվայր ընելէն ուրիշ բանի չը ծառայեց քեզի համար — իսկ ես... ես բախտին ու բնութեան ձեռք խաղալիկ եղած՝ իմ անստոյգ գոյութեանս ամեն կէտին մէջ ծաղրին ու արտասուքը իրար խառնուեցան՝ ի հեճուկս սրտիս ամեն խանդին ու խանդաղատանացը, և հուսկ ուրեմն... Այլ ի՞նչ օգուտ վէրք մը բանալ ու արիւն հոսեցունել... Ներէ՛, Պէշիկթաշլեանդ իմ, եթէ նորէն տխրեցուցի զքեզ իմ վայրենի աւաչներովս. Պէտք է լռե՛լ. պէտք է հանդարտիլ ու սիրտը բոլորանուէր ողջակէզ ընելէն ետև գօսացնե՛լ ամենայն ներքին յուզմունք ու եռանդ երեւակայութեան։ Եւ ասոր համար ահա՛ ժամանակն մը ի վեր վանական կեանքի մը խորհուրդը կ'երկնեմ ինծի համար. ա՛հ, ինչո՞ւ աւելի հաւատք չունիմ որ կարենայի սանկ կեանքի մը մէջ խրիլ կորսուիլ ու անմեղաբար մեռցնել ինքզինքս աշխարհի համար։ Այս կենցաղը շարունակել անկարելի պիտի ըլլայ ինծի. ես զայդ կ'զգամ իմ բոլոր ընկերական կարօղութեանցս չքանալը տեսնելով, կը տեսնեմ որ ա՛լ անցած է սիրտս ալ... փափաք չեն մնացած ներսիդիս. իմացականութիւնս ալ կը թալկանայ երթալով մարմնոյս հետ. փոքր մի եւս և ահա կենդանական կարողութենէս իսկ չո՛ւնչ մը միայն պիտի մնայ յիս։ Անտարակոյս այս վիճակին մէջ շատ պիտի չը կրնամ

դիմանալ. բարոյական ու նիւթական խառն, հիւանդութիւն մըն է այս թերեւս՝ որուն թողած լքած եմ ինքզինքս, մինչեւ որ օրին մէկը բոլոր մնացած ոյժերս վրաս ժողովելով որոշում մը ընեմ: Խառն ի խուռն մտածութիւններով լեցուած է գլուխս. դեռ չգիտեմ թէ ի՛նչ կրնայ ըլլալ ընելիք որոշմունքս եւ մէկը չը կայ քովս, արի բարեկամ մը, ծանօ՛թ մը որուն հետ կարենամ խորհրդակցիլ եւ որուն հետ կարենամ խօսիլ երբեւ թէ սրտիս հետ ու խղճմտանքիս հետ խօսէի. բոլոր տեսած մարդիկներս այնպիսի մարդիկներ են, որ ոչ անոնք ինէ բան մը կը հասկնան, ոչ ես անոնցմէ բան մը կը հասկնամ, որոնք թերեւս երանի՜ կուտան ինծի զիս տեսնելով եւ խնդալով ձեռքս կը սեղմեն ու անտարբերութեամբ կ՚անցնին քովէս եւ որոնցմէ ոմանք կը տեսնեն անշուշտ ու կ՚ըսեն ինքնիրենց թէ կա՛մ ապուշ ու անկար ծնած եմ եւ կամ ժամանակէն առաջ ծերացած եմ: Ես ինքս հանելուկ մը եղած եմ ինծի համար. քանի որ չէի զգացած՝ մեկնութիւն մը կրցած չէի տալ իմ կեանքիս. որմէ հետէ զգացի՝ կը տեսնեմ որ այնպիսի ծովու մը վրայ ալեկոծութեան բռնուած եմ որ ո՛չ եզերք ունի եւ ոչ նաւահանգիստ...:

* * *

---

30 Հոկտ. 1883, Բարիզ

Ազնիւ Միսսիս Փանոսեան,

Առի եւ սիրով կարդացի նամակդ, զի երբեմն հանդըպած ըլլալով ոտանաւորներուդ ուրախութեամբ տեսած էի որ բանաստեղծի կոչումն ունիս: Ես այն

ստանաւորներդ շատ աւելի կը սիրեմ քան այս երգի-ծանքդ ։ Իմ բանաստեղծս , թերեւս գիտես արդէն , Լամառթինն է , եւ Լամառթին չ'էր սիրեր երգիծանքը , չ'էր սիրեր կծու ծիծաղն ու քամահրանաց քահքահը . մարդկային շրթանց վրայ հազիւ կը հաճէր տեսնել ժպիտը , քաղցր ու քիչ մ'ալ մելամաղձոտ ժպիտը ։ Իրաւ է որ իբրեւ գրասէր մարդ չ'եմ կրնար ապախտ առնել այդ տեսակը որ այնքան աւիւն վառած է եւ այնքան անուն հանած . և դու անտարակոյս հասարակ երգիծաբան չ'ես , ինչպէս մանաւանդ չ'ես և պէտք չ'է ըլլաս հասարակ բանաստեղծ մը . զի՝

« Քերթողաց ոչ դիք ոչ մարդ ոչ սիւնք ներեն լի-նել միջակ ։ »

Եւ ատոր համար պէտք է որ չը փոքրկացնես հոգիդ . վերէն նայէ՝ շատ բաներու վրայ . մի՛ յածիր , մի՛ քաշքըշեր աւիւնդ ալ ճախճախուտ կամ տափարակ տեղեր . [illegible]ր տեղերու օդ ծծէ՛ . մի՛ թեթեւ կամ դծուծ իրք արժ[illegible]ի դասեր քու խանդիդ . մեծ նիւթերն ընտրէ՝ որ մեծութեան հետ ընտելանաս ։ Ոչինչ աւելի փոքր է քան քէնն ու ոխն ու չարութիւնը . և իբրեւ դրական մարդ եթէ խորհրդածել ուզես , գիտցի՛ր որ ներողամտութիւնը ո՛չ թէ միայն առաքինութիւն է այլ նաեւ պարտաւորութիւն այն մարդուն համար որ կենաց հակասութիւններուն իրազեկ եղած է ։

Ու երբ ազնիւ զգացումներով վառուած ու բարձր մտածութիւններով սնած , սիրտդ թափես չափեալ ու յանգեալ տողերու մէջ , գիտցի՛ր որ ինչ որ արտադրես քենէ՝ միշտ սիրով ու թերեւս օր մը հիացմամբ պիտի կարդան հայ բանասէրք , ընդ որս եւ ես ։

* * *

Զմիւռնիա 29 դեկտ. 90

Մեծանուն Ռեթէոս էֆ. Պէրպէրեան

Կ. Պօլիս

Գերազնիւ և սիրելի բարեկամ,

Ո՛չ, չեմ գանգատիր Ձեր լռութենէ. լռութիւնն ալ, ինչպէս կ՚ըսէ հեղինակ մ՚իր խորհրդաւոր ճարտասանութիւնն ունի. դուք չէք խօսիր ուղղակի մեզ, բայց Ձեր գրիչը, Ձեր գործերն, Ձեր հոգին կը խօսին մեզ և մեր սրտին ու մտքին նոր աշխուժութիւն կ՚տան, և մեզ խօսելու կը գրգռեն։

Նոր տարւոյն հետ, նոր լոյս մը կ՚երևի Ձեր ընտանեկան հորիզոնին վրայ։ Ի՜նչ գեղեցիկ զուգադիպութիւն։ Անտարակոյս հոգեզմայլ կ՚դիտէք այդ սիրոյ և առաքինութեան ծնունդ, հանճարիդ մի փայլակն, Ձեր անգնահատելի, լուսաբեր վաստակոց արժանի տրիտուր ու սփոփումը։

Համբաւը բերաւ մեզ շնորհալի աւետիսն և մեզ անհուն խնդութեամբ լցուց. հոգւոյդ Թագուհին, շնորհազեղ Զարուհին, տուաւ Ձեզ անգին պարգև մը. հրեշտակ մ՚որ քան ամեն ամանորական շնորհ, քան ամեն գոհար, չքնաղագոյն է և հոգեպարար։ Կ՚երեւակայեմ, կ՚զգամ թէ ո՛րքան կ՚փառաւորուիք, ո՛րքան ուրախ և զուարթ էք, սիրելի՛ Պէրպէրեան, և իրաւունք ունիք. զի Ձեր երանութիւն պարտաճանաչ գործավարի հօր մ՚երանութիւնն է, պատրաստ ամեն զոհողութեանց։

Խնդակից եմ Ձեզ, ոչ միայն Ձեր մեծահամբաւ վարժարանով, այլ և Ձեր ընտանեկան շրջանի սիրա—

յօդ կազմաւորութեամբ, հայ անուան նոր փայլ և ընտանեկան ոգւոյն օրինակելի տիպար մը կ՚հանդիսանաք։ Ապրի՛ք, հազար ապրի՛ք և վայելէք յաւէտ անմրուայլ Ձեր սիրասուն զաւակաց գեղակազմ համաստեղութեամբ շրջապատուած, որոց կենսատու արևն էք, անխառն ու անսպառ երջանկութիւն։ Այս է բարեկամիդ փափաքն, այս է իր շնորհաւորական բարեմաղթութիւնն, զոր ի սրտէ կ՚ուղղէ Ձեզ։

Իմ ջերմագին մաղթանքս կը նուիրեմ նաև առ ազնուասիրտ կենակիցն Ձեր, և կ՚հայցեմ ի Տեառնէ որ միշտ քաջառողջ լինի և շատ ու շատ տարիներ վայելէ իր սիրելիներու հետ երանաւէտ կեանք։

Նամակս կ՚աւարտեմ, զի չէ ժամանակ խօսիլ Ձեզ հետ այլ խնդրոյ վրայ, քանի որ մեծ ու կենսական խնդիրն Ձեզի համար նորածին Պէրպէրեանն է, զոր գրկացդ մէջ առած ջերմագին կը համբուրէք, և անշուշտ իմ կողմէ ալ մի համբոյր տալու շնորհը չպիտի զլանաք ինձ։

Սիրով և կարօտիւ Ձերդ

Մ. ՄԱՄՈՒՐԵԱՆ

---

Առ Գարեգին էֆ. Տէմիրճիպաշեան

22 Նոյեմբ. 1887

Իւսկիւտար

Ազնիւ և սիրեցեալ բարեկամ,

Կ՚ուզէի մխիթարել զՁեզ Ձեր վշտին մէջ, բայց կ՚զգամ թէ չեմ կարող։ Աւա՜ղ, ո՞ր սիրտ յաշխարհի չէ վշտացեալ, ո՞ր սիրտ չէ ծակուած մահուան անա-

գորոյն նետերէն, և ի՞նչպէս ցաւակիրն կարէ սփոփանք տալ ուրիշին։ Եւ ի՞նչ ընել. կարելի՞ է մոռցընել այն դառն կորուստն զոր ըրինք. կարելի՞ է երբեք մոռնալ վայն որ մեր գրկերէն կը բաժնուի ու կ'երթայ գրկել սև հողն։ Կարելի՞ է երբեք լնուլ սրտին մէջ սիրելւոյն կորստեամբ գործուած պարապը, բուժել վէրքն որ կը բացուի անդ մահուան ձեռքով եւ որ պիտի արիւնի յաւէտ։ Աւա՜ղ. գիտեմ զայս բազմապատիկ փորձերով, ես որ վեցամեայ որբ մնացած եմ ի հօրէ, որ քսանեւմիամեայ պատանի կորուսի մայրս, և ոյր սիրոյ առաջին պտուղն կորզեցին վաղ ստուերք գերեզմանին։ Կրնա՞մ զՁեզ մխիթարել Ձեր եղբօր կորստեան համար։

Այո՛, ազնի՛ւ բարեկամ. սոսկալի է մտածել թէ ո՛չ ևս է անդ, քովդ, շուրջդ այն տարփելի էակն զոր կը կոչէիր միոյն ի սիրելագոյն անուանց որք կը հնչուին երկնից տակ, ոյր վերայ կը գուրգուրայիր որպէս աչացդ բբին վերայ, որոյ սէրն մին էր կենացդ սնունդը կազմող տարրերէն, որոյ երջանկութեան անձնուիրիլ մին էր հոգւոյդ վայելումներէն ու գոյութեանդ պայմաններէն, և թէ ո՛չ ևս պիտի նայի քեզ, ժպտի քեզ, խօսի քեզ, ո՛չ ևս պիտի պտըտի առջեւդ, երկնից արեւուն տակ, ընտանեկան յարկին տակ, լոյսին մէջ, օդին մէջ, ծաղկանց ու դալարեաց վերայ, այլ թէ հո՛ն է, մութ վհին մէջ, անզգայ, անկենդան, հեռի սիրելիներէ, ձիւնին տակ, անձրևին տակ, խճին ու աւազին մէջ, այն քնքոյշ մարմինն զոր կը պաշտէիր, զոր ամէն փափկութիւններով կը շրջապատէիր.... Կը մտածես թէ ի՛նչ եղաւ այն հոգին որ այդ փարելի մարմինը կը շնչաւորէր, որ այդ աչերուն մէջ կը ժպտէր, որ այդ գանկին մէջ կը խորհէր, որ զքեզ

*կը սիրէր, որ չքնաղ ծրիւք կը զարդարուէր, որ յոյսեր ու փափաքներ կը տածէր յինքեան, յո՜յս ու փափա՜ք՝ երա՛զ ու մոխի՛ր ամենայն։ Ո՛հ. գէթ մնայր մեզ մեր հայց հաւատքն, որով սոքա ցուրտ ու սեաւ հողէն յերկին կը վերցնէին իրենց աչերն, հոգւոյն աչեր, և անդ լուսեղէն ամպերու մէջ լուսազգեաց լուսաժպիտ կը նշմարէին փախստեայ հոգին, և սփոփանքը՝ իբրև նշոյլ ստուերայց մէջ կ՚իջնէր իրենց սրտին մէջ. բայց այդ մխիթարիչ ու հոգեկլմայլ տեսիլներուն վրայ քող մը ձգեց գիտութիւնը, թանձր քող մը որոյ վերայ նը-կարուած կը մնայ անջինջ՝ ժանտատեսիլ մահն, ահեղ գերանդին ի ձեռին ու դժոխային ծիծաղ մ՚իւր կմախային այտից վերայ։*

*Այս է Ձեր հոգւոյն վիճակը, գիտեմ. կ՚զգամ աղջամուղջն որ կը լնու զայն։ Ինչպէս կրնամ ըսել թէ որբեցէք Ձեր սրտասուքը. ոչ միայն դուք կ՚ողբաք հէք Գալուստը, այլ և ամէն անոնք որք կը ճանչեն զինքն. ազնուաբարոյ, բարեհամբոյր, բարեկիրթ, ուսեալ, տաղանդաւոր, բանաստեղծ Գալուստն, Տէմիրճիպաշեան ծաղկաւէտ պերդաստանին ընտիր շառաւիղներէն մին։ Իւր անակնկալ մահն սարսեցուց ամէն հոգիներ, ամէն մարդ զգաց իբր խուրձ մը կայծերու որ կը ցնդէր կը մարէր դատարկութեան մէջ. յոյսերն էին անոնք զորս ամէն զինք ճանչցող կը կարդար իւր ճակտին վրայ։ Հայ երիտասարդն վշտակից եղաւ Ձեզ, զի ինքն ալ կը կորուսնէր եղբայր մը. եւ ծերունիք որ կ՚ընկերանային իւր դագաղին՝ ընկճեալ էին հարուածին տակ, հաղորդ Ձեր թշուառ հօր եւ մօր դառնակսկիծ ցաւոյն։*

*Կուլաք, կուլանք, կուլան. այսպէս կ՚անցնի մարդկային կեանքը. վերջին անհրաժեշտ պայմանն է սիրոյն*

որ կ՚արտադրէ կեանքը։ Ապրելու համար ի սէր կը դիմենք, կը կազմենք սիրոյ կապեր, ծնողաց՝ որդւոյ՝ եղբօր և քեռ, ամուսնոյ քաղցր հանգոյցներով կը միանանք, այլ և այնքան առաւել զգայուն, ա՛յնքան առաւել վիրաւորելի կը գործեմք մեր սրտերն։ Իսկ առանց սիրոյ հնա՞ր է ապրիլ. — Ո՛չ, առանց վշտի կա՞յ սէր. — Ո՛չ. կը տեսնէք թէ չէ հնար դուրս ելնել այս երկաթի շրջանակէն։

Միայն մխիթարութիւն մը կայ, այս է՝ երբ կը տառապինք, պատահիլ վշտակից հոգիներու որք իրենց արտօսրը խառնեն մերինին. ինչ որ կայ ամենէն ահարկու՝ է լալ ամայութեան մէջ՝ գուցէ։ Հազարաւոր հոգիներ ողբակից ունիք Ձեզ որ Ձեզ հետ արտասուեցին ու կ՚արտասուեն Ձեր վաղամեռիկ եղբօր դամբանին վրայ։ Թո՛ղ մխիթարութիւն մ՚ըլլայ այս Ձեզ։

Ի մէջ բիւրաւորաց, սգակից է Ձեզ և տրտմութեամբ կը համբուրէ Ձեր ճակատն

Ձեզ համակրող ու զՁեզ սիրող

Ռ. Ց. ՊԷՐՊԷՐԵԱՆ

---

20 Ապրիլ 1893, յԱրմաշ

Սիրեցեալդ իմ Պ. Ս. Գ.

Նամակիդ իբրեւ պատասխան կ՚գրեմ և ո՛չ իբրեւ ուսուցմնասիրութիւն։ Կ՚հարցնես ինձ թէ «ի՛նչ հրապոյր ունի վանական կեանքն և թէ ի՛նչ տեսական ունիմ ես վանականաց համար.» ահա իմ կարծիքս։

Ընկերական կենաց մէջ թէ՛ ի հարկէ և թէ՛ բնական իմն բերմամբ երեւան կուգան ապրելու զանա-

զան ձեւեր կամ կենցաղներ․ վանական կեանքը հարկի մը ստեղծումն է և ո՛չ էական պայման մը ապրելու։ Հին աշխարհի մեղկ և անկարգ բարոյականը կը թելադրէր երբեմն զքրիստոնեայս հեռանալ ընկերային շրջանակներէ և ապրիլ յառանձնութեան։ Այդ եղանակն մեր մէջ ալ կանուխ ժամանակօք ընդունուեցաւ, եւ վանքերու անհամեմատ բազմութիւնն մեր եկեղեցական կեանքի ամենէն գործունեայ երեւոյթը կ'դնէ մեր առջեւ։ Վանքին հրապոյրն հո՛ն կ'սկսէր ուրեմն երբ մարդ ձանձրացած աշխարհէն և անոր վայելքներէն՝ կ'ուզէր յինքն ամփոփուիլ և անձուկ մթնոլորտի մը մէջ սեղմուելով՝ աւելի ուժգին սլացք մ'առնուլ դէպ առ այն՝ յոր կ'հաւատար և որում կ'կարծէր հաճոյ լինել, ցորչափ չնչէր մաքուր ու անխառն օդ մը եւ աղօթէր հանդարտիկ։ Իսկ այժմ՝ վանական կեանքն կորուսած է իւր նախկին գոյութեան պատճառը եւ չունի հրապոյր մը՝ որ յատուկ լինի իրեն։ Անոնք որ կ'համակերպին այս կամ այն կենցաղական պայմաններուն՝ յայտնի է թէ կ'չինեն մի ո՛ր և է հրապոյր՝ թէ՛ մտաւորական լինի այն և թէ հոգեւոր։ Ի՞նչ տարբերութիւն կրնայ ունենալ այժմեան եկեղեցականն թէ՛ վանքին մէջ ապրի նա թէ՛ քաղաքին․ Թէ վանականն կ'աղօթէ՝ չաղօթե՞ր ընկերութեան մէջ ապրող եկեղեցականը, թէ վանականն կը կարդայ կամ կը գրէ, ո՞վ կ'արգելու զմիւսն նոյն բանն ընելէ․ և միթէ մեր վանականք չե՞ն թողուր հաճութեամբ իրենց բոյնը՝ երբ բարձի մը կոչումն զիրենք հրաւիրէ յա՛յլ աթոռ կամ ասպարէզ։ Այն օրն՝ յորում կը հեռանան վանքէն, ի՞նչ ամայութիւն կ'զգան իրենց ներսը, ո՞ր փերթ կը փրթի իրենց կողէն, ոչինչ։ Քիչեր կան անշուշտ որ կամ անգործութեան կամ ան-

կարողութեան և կամ շահախնդրական կապերու շնորհիւ կը մնան գաւթին մէջ, մինչ բազմագոյնք առժամանակեայ հանգրուան մը կը նկատեն զայն։ Այս տեսակէտն արդէն սկսած է պարզուիլ վանքերն դպրեվանքի փոխելով՝ ուր աւելի կամ նուազ տարիներու մէջ աւանդուած կրթութեամբ՝ աշխարհի և ընկերային գործունէութեան համար կը պատրաստուին յուսալից պատանիներ։ Ըսէ՛ հիմա, որո՞ւն հրապոյրն աւելի կը կշռէ այս տեսութեամբ. Ի հնումն զաշխարհ կը թողուին փակուելու համար ի վանս, և հիմա վանքը սկզբնակէտ մը կը դառնայ կամ արձակարան մը՝ ուստի յառաջ պիտի նետուին կրկէսին մրցանակն խլելու հետամուտ ոգիներ։ Ոչ ոք ուրեմն ձանձրացած է աշխարհէն՝ որ վանքն ընտրէ իբրև մենաստան. թերևս ապաշխարողներն միայն՝ եթէ մարդոց ներկայութենէն կը շառագունին՝ վանական խցիկ մը հրապուրիչ պիտի գտնեն՝ իրենց խղճին ու Աստուծոյն հետ առանձին մնալու համար։ Վերցո՛ւր կրթութեան ոգին ու պաշտօնը վանքերու վրայէն. և ահա՝ ո՛չ մի հրապոյր պիտի գտնես անոնց մէջ ըստ ազգի իւրում (sui generis)։ Չեմ կրնար հաւանիլ անոնց՝ որք յուսահատ սրտի մը յանկարծական բերմամբ հառաչելով՝ վանքի մը լռութիւնն ու ամայութիւնը կը փնտռեն...։ Հովուական կեանքը՝ գիտես դու՝ ի՛նչ գեղեցիկ և անուշաբոյր ազդումներ կը թողու իւր սիրուն պատկերներով՝ երբ բնապաշտ բանաստեղծի մը գրչին տակ ոգևորի, ի՛նչ թարմութիւն՝ կ'ըսես իւրովի՝ ի՛նչ երանութիւն՝ ի՛նչ հրապոյր. ԺԸ. Դարու մատենագիրներ ալ կային՝ որ վայրենի ժողովրդոց կեանքն իբրև բնական բան մը նկատելով՝ դրախտանման հեշտութիւն մը կը փոխադրէին ձրիաբար հեռաւոր և անծանօթ կըղ-

զինէրու մէջ. բայց փորձն ցոյց տուաւ թէ արքայութիւն կարծուածն Քալէվալա մ'էր, ուր արփիննուշտ պատերազմողներ կային և ո՛չ թէ սպիտակազգեստ սուրբեր։ Զգացիր անշուշտ թէ յոյժ լաւատեսիկ հարցում մը ուղղած ես ինծ, թերեւս զիս՝ դեռ վանքի մէջ չբնակած ատենս՝ վանականի մը յատուկ եղող պարագամանց մէջ տեսած լինելով՝ կ'սպասէիր որ հիմա բուն յարկին տակ գտնուելուս շնորհիւ՝ գեղեցիկ հորիզոններ ցոյց տամ քեզ. դժբախտաբար սակայն՝ նոր փորձ մը կամ նոր գաղափար մը չեմ ստացած. ես արդէն կամայական աւանդութեամբ ծրագրուած՝ սեղմուած՝ միով բանիւ՝ պատնիշափակ կեանքէ շատ հաճոյք չեմ զգար. ինձ համար՝ իմ իսկ ձեռամբ ոլորած բժոժս աւելի լայն կը գտնեմ՝ քան այլոց ընդարձակ վանդակը. առաջնոյն մէջ կրնան թեւեր բուսնիլ, երկրորդին մէջ փետրաթափ կը բեկանի թըռիչը։ Եւ սակայն՝ չեմ ասեր ո և է կեանք՝ որ օգտակար լինելու յարմարութիւններէ զուրկ չէ բոլորովին։

Գալով վանականաց տեսլականին՝ զորմէ իմ կարծիքս կ'ուզես լսել՝ արդէն փոքր ի շատէ բան մը կըրցար հասկընալ ցարդ ըսածէս։ Բայց քիչ մ'ալ աւելի որո՛շ խօսիմ։ Վանքը դպրոց մ'է կամ պէտք է լինի. եկեղեցական ուսմանց և կրօնական դաստիարակութեան համար սահմանեալ պատշաճագոյն վայրն է՝ ուր պէտք է կրթուին ամէն անոնք որք պիտի ծառայեն Եկեղեցւոյն՝ ընդ նմին և Ազգին. այդ կրթութեան հանգամանքներ սակայն հա՛րկ է որ փոխուին ըստ պահանջման ժամանակաց և ըստ լուսամիտ ոգւոյ դարուն։ Վանական դաստիարակութեան ամենէն աւելի ակնյայտնի թերութիւնն եղած է ցարդ մեր մէջ

ի մասնաւորի՝ չկրնալ կազմել տալ միտք մը որ սեռն և սերտ հաւատքը յաջողի հաշտեցնել իմացական լոյսերու հետ, կը ներշնչենք կղերական հպարտութիւն մը, արհամարհանաց զգացումներն կ՚խօսեցնենք այն ամէն բանի համար՝ որ վանական չէ, հակառակ տեսութեանց կամ կարծեաց հանդէպ կը պատրաստենք յաղթասէր բրտութիւն մը, գործնական կեանքի նկատմամբ ապաժաման փցնութիւն մը դժուարաթեք, և քիչ մ՚ալ անձնասիրութիւն՝ առանձնասիրութեան հետ և այլն: Բայց ահա՝ այս ամէն թերութիւններն պիտի դարմանուին ինքնին, եթէ վանական դաստիարակութիւնն ծառայէ ո՚չ թէ վանքի մը խորշը մնալու, այլ ընդհանրութեան օգտին անընդմիջաբար սպասաւորելու համար, զի ո՚չ երբեք կը ներէ քրիստոնէական ոգին որ մակաբոյծ կեանքեր աճում գտնեն եկեղեցւոյ գործաբանաւորութեան մէջ և անգործ ապրելու պայմանին հետ ա՛յնքան հաշտ ընթանայ ուխտի մը վերագրուած ծուլնաքեայ առաքինութիւնը: Այսպէս՝ իմ տեսականս — քու բառովդ — կը կայանայ այս տկարութիւններն արմատաքի խլելու աշխատութեան մէջ:

Մնամ աղօթարար

ԵՂԻՇԷ Վ. ԴՈՒՐԵԱՆ

---

Առ Մեծարոյ Տէր,

Թադէոս պատուելի Կէօզիւրեան,

«Գիրքը՝ քու թարգմանութիւնդ՝ զոր ինձ ձօնեցիր, Պատուելի՛, կենաց վրայ կը խօսի, երկար ապրելու միջոցներուն վրայ: Մակագրէն գիտեմ զայդ, քանզի չը կարդացի մատեանդ: Այդ տեսակ գործեր շահեկանութենէ զո՞ւրկ են այլ ևս ինձ համար: Կենաց երկարութեան ո՞չ ապաքէն կը փափագի ա՛յն, որ խոր-

*հուրդ մ'ունի մարմնացնելու կամ ձեռնարկ մը՝ յանգ հանելու, որ ընտանիք մ'ունի պահպանելու կամ իղձ՝ ընտանիք մը կազմելու. ապրիլ՝ ի մի բան՝ ո՞չ ապաքէն ա՛յն կը բաղձայ միայն, որ կը սիրէ կեանքն, որում անծանօթ է ձանձրոյթն։ Արդ, իմ ընտանիքս ինձ հետ պիտի վերջանայ, և ոգեպահելու ոչ ևս ունիմ ոք երկրի վրայ. իսկ խորհուրդ ու ձեռնարկ՝ բնա՛և։ Ա՜հ, սէր մը միայն ունիմ սրտիս մէջ... Սակայն սէրն, որպէս կը զգամ և կ'ըմբռնեմ ես զայն, կեանքն ինձ նուազ քան մահն հրապուրիչ կը կացուցանէ։ Է՞ր ուրեմն ընթեռնում ա'յնպիսի գործեր, որք գիտցածս արդէն ինձ պիտի ըսեն, կամ չգիտցածս յանօգո՛ւտ ինձ պիտ՝ ուսուցանեն։*

*Ես փոխանակ կարդալու Թարգմանութիւնդ, որ յոյժ օգտաւէտ անշուշտ ու յանձնարարելի գործ մ'է, կը խորհիմ Թարգմանչին իսկ վրայ։ Կը խորհիմ, Պատուելի՛, թէ մշտնջենական բանտարկեալ մ'ես դու յաշխարհի։ Սակայն իսկոյն կը յարեմ. «Իր հոգւոյն բանտարկեալն է Թադէոս աչապուրկ Պատուելին։» Բանտարկեա՜լդ հոգւոյ, բանտիդ շրջանակն յաւէտ դու կ'ընդլայնես, և բանտդ ևս քան զևս չքեղաշուք կը զարդարես։ Երկնուստ առ քեզ առատաշնորհեալ իմացական կարողութեամբք՝ արգելանդ անսահման աշխարհի մը կը փոխարկես. արտաքին աշխարհին բարիք ու փառաւորութիւնք՝ որոց վայելմանէն զրկուած ես, ի ներքս ի քեզ զայնս ի նորոյ կը ստեղծես։ Եւ մինչ բիւրուց ի բիւրս արարածոց կը բաշխին արփենի ճաճանչք և աստղենի նշոյլք, ի քեզ՝ զքե՛զ միայն լուսաւորելու համար՝ արեգակ մ'ողջոյն և աստեղաց հոյլեր ունիս դուն, — երազ՝ զոր և ոչ տիեզերակալ մ'իրացուց երբէք յաւիտեա՜ն։ Ներքնաշխարհիկ ովկէա-*

*նըդ, որոյ մօտ թերեւս լճակք են երկրագնդոյս և երկրագնդից ովկէանք, յիւրն աւազածիր միակ միահեծան հանդիսատեսիդ առաջի կը պարզէ խռով կամ խաղաղ իւր տարածն հրաշափառ։ Ներքնակատար բարձանց բնակ՝ քոյինաստեղծ արծուոյդ երկնասլացիկ ճախրանաց բարձրութիւնն ալ երկիւղածօրէն կը մրցի գերաթռիչ հոգւոյդ վերասլացմանց։*

*Ցորժամ հանդըպինք միմեանց ու դու լսես ձայնս, թուի իմն ձեռինքդ ձայնիս ուղղութեան կը հետևին, և երևոյթն ունիս յայնժամ մարդո՛յ՝ յորոյ ձեռանէն թռչուն մը կը խուսափի՛։ Ձայնս արդարև ձեռացդ շօշափմանէն վրիպելով՝ աներևակ հաւ անհունաբա՛ղձ՝ կը խոյանայ հոգւոյդ մէջ։ Եւ հմայքն՝ որով ըզգեցեալ անտի կ'ելնէ դուրս, ահա այդ հմայքն է, Պատուելի՛, որ ի ներքս ի քեզ անցած սքանչելահրաշ անճա՛ռ իրողութեանց վրայ գաղափար ինձ կուտայ։ Եւ անտի՛ տենչն իմ մեծ՝ յաճախ մօտուստ ընդ քեզ ձայնի՛ւ խօսելու։*

*Բայց աւելի բուռն բաղձանք մ'ունիմ յաւէտ. — ունկն դնել ամայի բնակարանիս և համօրէն ամայութեանց լռութեան, որ կուտայ հոգւոյս նախաճաշակն անէութեան։ Ինձ այնպէ՛ս կը թուի թէ լաւ ևս կը լսեմ, երբ աչուիս խփեմ։ Եւ ստէպ ես աչքերս կը փակեմ արեգական դէմ։*

*Մերթ և մելամաղձութեամբ կը հարցնեմ ես ինձ, «Նա՛ և արտևանունքն առ յաւէտ չէ՞ կափուցած, որպէս զի լա՛ւ և լսէ և յարաժա՛մ լսէ ներքին ձայներն»։ Հարցումս զքէ՛ն խորհելով կ'ընեմ, և աչերս աւելի պինդ կը փակե՛մ...։*

Ե. ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆ

Գատըգէօյ 18 Դեկտ. 1891

« Ծաղկի » Բ. տարւոյ առթիւ առ
Տ. Յովնան Գ. Փաշազաշեան ։

Բարեկամ,

Ստացայ նոր շրջանիդ առաջին թիւը. յաջողութեան բարեմաղթութիւնք քեզ ի սրտէ ։ Շատ դժուարութեանց դէմ մաքառելու հարկին ներքեւ ես գտնուած առաջին տարւոյդ ընթացքին մէջ. լա՛ւ. բայց մրցութեանց ասպարիզի մէջ մրցանակի պայմանը դժուաթեանց յաղթելն է ։ Կամաց հաստատութիւն և ուղղամտութիւն թող միշտ ընկեր ըլլան քեզ, և մրցանակդ ապահովեալ է ։ Ալեկոծութեան մէջ նաւելն է քաջ նաւավարութիւն. Հրապարակային թերթի մ'առջեւ անպակաս են հակառակ ալիք. խմբագիրը հոն պիտի գտնէ իւր գործը, շահը և պատիւը ։

Ինձ նկատմամբ քու մտերմութեան հաւաստիք յարգանք մի է անշուշտ պաշտօնիս և հասակիս. գալով անձնականութեանս, իցէ՜ թէ կարենայի պատասխանել ակնկալութեանդ իբրև փորձառու, մինչ կ'զգամ թէ առաւել քան զայլ ոք պէտք ունիմ ուսանելու ։ Տարօրինակ չթուի քեզ խօսքս. աշխարհս հոն չէ ուր էր իմ մանկութեանս ժամանակ. ոչ ևս ճրագուն կամ ձէթ մերժեն գիշերի խաւարը, այլ օդագազ, ելեքտրական հոսանք. թէ աչքի լուսի համար այնչափ, ո՛րչափ առաւել մտաց լուսի համար ։ Բան մը կայ սակայն որ զիս կը վրդովէ. այն թէ լուսոյ մէջ ալ պէտք է չափ մը, համեմատութիւն մը. մի՛ գուցէ կարի շատ լուսով կուրանանք, զի մեր աչքը արեւով կը լուսաւորի, բայց արեւուն չկրնար նայիլ անքթիթ ։ Ըսողներ կան. « Ընենք ինչպէս կ'ընեն Եւրոպացիք ». մինչ ես կ'ըսեմ և

պիտի ըսեմ. ընենք ինչպէս մենք պէտք է ընենք, եւ որչափ կրնանք ընել։ Եզի և գորտի առակը որ ճշմարիտ էր Եզովբոսի ժամանակ, ճշմարիտ էր նոյնպէս Լաֆոնթէնի ժամանակը (գրականութեան մեծ դարուն մէջ). նոյնչափ, եթէ ոչ աւելի, կրնայ ճշմարիտ ըլլալ նաև մեր ժամանակ։ Թո՛ղ զարգանայ մեր միտքը նոր գիտութեամբք, մեր ձեռքը նորանոր ճարտարութեամբք, միայն թէ մեր բարոյականութիւնը Լուսաւորչայ վաղեմի կանթեղով լուսաւորուի. անկէ խոտորումը գլորում է, յառաջադիմութիւնը օտարացում։

Բարեկա՛մ, այս զգացումը արծարծելու պաշտօնը մեր հասարակաց թերթերու պատուաւորագոյն բաժինն է. և այդ քեզ ևս ի պատիւ։ Ես դասակարգ մը դրած էի ուսուցչական պաշտօնէից, կ՚ըսէի. 1. Ծընողք, մանաւանդ Մայրը, Որրանի ուսուցիչ. 2. Տէր Հայրը կամ Հայր Սուրբը, Եկեղեցւոյ ուսուցիչ. 3. Վարժապետը, դպրոցի ուսուցիչ։ Այժմ փոփոխութիւն մը կրած է այս դասակարգ ի միտս իմ, զի 3.ը յիրաւունս կը յատկացնեմ մեր խմբագրութեան իբրեւ Հայ հասարակութեան Ուսուցիչ, և 4.ը կը մնայ մանկավարժներու։ Ահա ուրոյն յօդուածներու նիւթեր՝ անոնց համար որ կարողութիւն ունին գրելու. ես փոքըր ինչ տեսութիւն մը միայն հաղորդեմ քեզ աստ 3.ին վրայօք, յուսով որ հաճիս ընդունիլ։

Արդի քաղաքակրթութեան մէջ օրագրութիւնը անհրաժեշտ պէտք մի է՝ ի գոհացումն մտաց, որոյ ի մատակարարութիւն, բարձրագոյն արտօնութեամբ, կոչուած են խմբագիրք մեր. այն իսկ է, սակաւք ոմանք պաշտօն ստանձնած են հասարակութիւնը լուսաւորելու բարեկրթելու։ Փափաքելի է, յատկապէս առ մեզ

որ լուսամիտ համախոհութիւն մը գոյանայ այս կարգէ անձանց մէջ ի նպաստ իրենց բարձր կոչման, քանի որ իրենց համաձայնութիւնը ինչպէս անհամաձայնութիւնը անմիջապէս կ'ազդէ հասարակութեան վրայ։ Երբ կուսակցութենէ աւելի յարգուի իրաւունքը, վէճը օրինաւորութեան սահմանին մէջ կը փակուի և կծու ակնարկք կը լռեն։ Ցայսմ ամփոփուին մեր բարոյական, գիտական և արուեստական շահերը, ընդ որս և հասարակաց լեզուի բարւոքումը, որոյ գործնականապէս լաւագոյն ուսուցիչն է հրապարակային թերթի մը խմբագրութիւնը։

Ըլլայ միշտ Ծաղիկդ քեզ պատիւ և ընթերցողացդ առիթ գոհունակութեան։

Քոյդ միշտ բարեմաղթու
Ց. ՈՍԿԱՆ

---

Մտերմական նամակ։

Փետրուարի 13.

Իմ առաջին ներկայացման յաջողութեան մասին անշուշտ տեղեկութիւն ունէք և կարդացած կը լինէք Մոսկուայում հրատարակուող Ռուսաց երկու գլխաւոր թերթերի մէջ. բոլոր թատրոնների դերասանները այնտեղ էին և իւրաքանչիւրը զատ զատ սենեակս կուգային բարեմաղթութիւններ անելու։ Ներկայացումից յետոյ պարահանդէս կար թատրոնի մեծ սրահին մէջ. յոգնած էի սաստիկ, բայց բռնի ինձ տարան սրահ, ուր հաւաքուած էին թատեր հանդիսականները, շատ էլ ռուսեր և ուսանողներ, բոլորը միաձայն սկսան ուռայ կանչել և ծափահարել։ Դուք երևակայեցէք իմ դրութիւնս. գետինը պատռուէր

տակն անցնիմ, կը մտածէի։ Դուք ինքնիրենդ անշուշտ կը հասկընաք, թէ ինչպէս ներսից ուրախ (այս կը խոստովանիմ), բայց միանգամայն դրսից ամօթահար եղել եմ, հասկանալի է. որ մեծ ուրախութիւն է դերասանի ծափահարուել բեմի վրայ, բայց կեանքի մի պարահանդէսի մէջ... կարող էք ըմբռնել թէ ի՛նչ զգում եմ. դուք, որ եթէ մէկը ձեր երեսին գովեստ տայ, կը նեղուիք. Այս բոլորն ինձ գրել չի վայլեր, բայց խոստացել էի գրել ամէն ինչ մանրամասնօրէն, և միայն ձեզ կարող և պարտական եմ գրել։ Ծանօթացայ բոլոր գլխաւոր դերասանաց և դերասանուհեաց հետ։ Ծանօթացրին ինձ նոյնպէս Աստրովսկու հետ, շատ սիրով վարուեցաւ հետս, հրաւիրեց ինձ իրեն մօտ ճաշի, երբ լսեց որ Արդիւնաւոր պաշտօն բիէսան թարգմանուած է հայերէն, և ես ներկայացրել եմ փաստոյը, սաստիկ ուրախացաւ։

Եկած օրէս ի վեր ո՜րքան տկարութիւն որ ունեմ, մէջտեղ ելան։ Տեսէք բաղդը, գալ Մոսկուա, այսպիսի մի անուն և յաջողութիւն գտնել և միշտ հիւանդ լինել...։

Առաջին հասոյթից գոյացաւ 1200 րուբլի։ Երկրորդ ներկայացմանը նուազ գիններով էր։ Այդ ներկայացմանը երեկոյին շատ դերասաններ կային, միշտ սենեակումս էին անդրաքդներն, ի միջի այլոց Սվապոտինա Պարիշէվա, Րիուգի, Տակմարովա դերասանուհիք ևս սենեակս եկան և խնդրեցին ինձնից իբրև յիշատակ մի մի տերև ուսանողների ինձ ընծայած պըսակից, որն որ տուի մեծ ուրախութեամբ։ Այս երեկոյ հրաւիրուած եմ տոմսակով Ռուսաց դրամատիքական թատրոնը Ապերախտ սարիֆ անուն նոր բիէսան տեսնելու, և յետոյ չայի գնալու իրենց մօտ։

Այս տեղ ծանօթացայ խիստ շատ Հայերի հետ։ Երկու լուսանկարներ եկան խնդրեցին, որ գնամ իրենց մօտ պատկերս հանել տալու։ Հինգ օրից վերջին ներկայացումը կը տրուի և ես հիւանդ՝ չեմ կարծեր որ կարողանամ մնալ այս տեղ, գուցէ ուղիղ Նախիջեւան գամ։

Անանովի մօտ հանդիպեցայ Այվազովսկուն, երևելի նկարչին, որ ինձ ուզեր էր տեսնել։ Զորս վայրկենի մէջ մի ծովային տեսարան ուրուագծեց գրչով և ինձ նուիրեց։ Կարող էք երևակայել թէ ո՛րքան ուրախացայ. յետոյ ուզեց որ մի բան արտասանեմ, արտասանեցի Դարբինները, իբրեւ ի փոխարինութիւն իւր թանկագին ուրուագծին, սակայն իմս անցաւ, նրանը մնաց։ Այո՛, այնպէս է. նկարիչներից, երաժիշտներից, արձանագործներից՝ և բոլոր գեղարուեստէրերից աւելի շուտ և բարոյապէս կը մեռնին թատերասէրք, այսինքն դերասանները. առաջիններուն գործերը մահից յետոյ ապրելով, կ'ապրեցնեն նաև իրենց հետ հեղինակներուն անուններն էլ, այլ խեղճ դերասանաց միայն յիշատակը կը մնայ, այն էլ եթէ ունենան սրտի տէր բարեկամներ, նրանց սրտին մէջ կ'ապրին։ Այլ թատերասիրաց համար միայն կը յիշուին այն տեղ, ուր որ կենդանի ժամանակնին ծափահարուած են, այսինքն թատրոնում։ Եթէ մի Հայ թատերասէր իմ մահից յետոյ, հանդիպի մի ուրիշ դերասանի, որ ներկայացնում է այս ինչ խաղը շատ վատ կերպով, անշուշտ ինձ կը յիշէ, բայց թատրոնին դռնէն դուրս ելլելուն պէս կը մոռնայ։ Եթէ մանկութիւնից ինձ լաւ բացատրէին թէ ի՞նչ է կեանքը, գուցէ ուրիշ ճանապարհով մտնէի նորա մէջ։

16 Դեկտ. 1892 (Արեւելք)

ՊԵՏՐՈՍ Զ. ԱԴԱՄԵԱՆ

## Առ Մկրտիչ Սանասարեան.

Վսեմափայլ տէր,

Ձեր վսեմութեան բարեբար անունն արդէն իսկ հռչակուած է բովանդակ Հայ ժողովրդեան մէջ: Դուք որովհետեւ միանգամայն քաջալերած էք դպրութիւնը և ախորժած էք այն քնարէն զոր մեր հին և նոր գուսաններ սիրատարփ հնչեցին, հաւաստի եմ, թէ կը հաճիք ընդունիլ սոյն Առակագիրքը զոր ի պատիւ անուան Ձեր վսեմութեան ձօնելու ոչ թէ ինձ միայն պարտք, այլ և փա՛ռք համարեցայ:

Սոքա իբրեւ գոհարներ, կ'աղաչեմ թոյլ տալ ինձ, յեռուլ և յաւելուլ ի պսակն այն, զոր Մատն Աստուածային արդէն բոլորած է ի Ձեր ճակատ. ուր գըթութիւնն իւր բոլոր շնորհներովն այնքան փառաւոր կը ցոլայ: Ծաղկազարդ պսակներ կը թառամին և ադամանդակուռ գոհարներ կ'եղծանին. այլ սակայն լուսոյ այն գոհարն, որ ծնունդն է մտքի, որ հոգւոյ մէկ ճաճանչն է, յաւիտեան վառ ի վառ կը շողշողայ և ոգեւորութիւն կ'ազդէ մինչեւ իսկ տգէտ և տխուր մտքերու և սրտերու:

Սոյն գրքոյկն, իբր դուզնաքեայ ինչ ձօն, ընդունել հաճելով, Գերազնիւ Տէր, կը թողուք զիս արդարեւ ոչ թէ միայն շնորհապարտ, այլ և աւագափող քարոզ ի վկայութիւն կաթոգին զգացմանց Ձերոց առ մեր դպրութիւն:

Մնամ ամենախորին յարգանօք և ողջունիւ ի Տէր

17 Մայիս 1880 ՎԱՀԱՆ Վ. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ

Կ. Պոլիս

## Ընտանեկան նամակ ։

*Յունվ. 20/1 փետրվ. 1884.*

*Բարիզ*

*Ամենասիրելիդ իմ ...*

*Ժամն(*) $1\,^1/_2$ին՝ Հրանտին հետ էի. որոշեցինք միասին ճաշել. կերակուրի ատեն ըսաւ ինձ թէ, մատամ Սառա Պէրնար, այս գիշեր Բոր-Սէն-Մարթէնի թատրոնին մէջ պիտի ներկայացնէր* Գամելիազարդ Տիկին *անուն թատերգութիւնը, առաջարկեց ինձ և չափազանց թախանձեց որ իրեն հետ միասին երթամ այս ներկայացման. տեսայ որ այնքան ստիպմամբ եղած հրաւէր մը մերժել ընդդէմ է քաղաքավարութեան, մանաւանդ այնպիսի բարեկամի մը համար, որու շատ անգամ ծանրութիւն տուած եմ, միանգամայն հետաքրքիր էի աչօք տեսնելու սա Սառա Պէրնար դերասանուհւոյն դերակատարութիւնն, որու համար բովանդակ աշխարհի լրագիրները գովեստ տալէ չեն դադրիր, վերջապէս գացինք. ներկայացումն սկսաւ ժամ երեքը քիչ մ'անցած ։ Խաղին նիւթը կարծեմ գիտես, բայց ահա խիստ համառօտ կերպիւ յիշեմ հոս. Գամելիազարդ Տիկինը՝ որ խաղին դիւցազնն է՝ Բարիզու ամենէն հռչակաւոր հոմանուհիներէն մին է, կառքեր, ձիեր, ընդարձակ և շքեղ ապարանքներ, բազմաթիւ սպասաւորներ ու սպասուհիներ ունի. ամենէն երեւելի և հարուստ կոմսեր, մարքիզներ և այլ երևելի մարդիկ կը յաճախեն իւր տունը, տարին 5—6000 ոսկի ծախք կ'ընէ, ինք սակայն կարևորութիւն չտար*

[*] Ժամերն ըստ Թուրքաց նշանակուած են ։

այնքան մեծ մարդոց․ այսու հանդերձ ուրախ զուարթ կը թուի, տանը մէջ միշտ հացկերոյթ, յաճախ պար, ցայգահանդէս․ այս հացկերոյթներէն միոյն է որ կը ներկայանայ Առման Տիւվալ անուն երիտասարդ մ'որ սրտանց կը սիրէ զՄարկրիտ (Գամելիազարդ Տիկինը)․ յետոյ առթիւ մը, իւր սէրը կը յայտնէ նմա․ բայց Մարկրիտ կը մերժէ Տիւվալի առաջարկն, յարելով թէ ամեն մարդիկ կը յեղյեղեն սէրը, բայց ինք ոչ մէկուն կը վստահի, վասն զի վաղանցիկ կը գտնէ այս զգացումը մարդոց վրայ․ Արման Տիւվալ զօրաւոր ապացոյցներով կը համոզէ վերջապէս զՄարկրիտ իւր սիրոյն անկեղծութեան և տեւականութեան մասին․ Մարկրիտ, որ ցայն վայր անզգայ մնացած էր ճշմարիտ սիրոյ հրապուրանաց, հետզհետէ այն աստիճան կը յափշտակի այս երիտասարդին սիրով որ միտքը կը դնէ աշխարհի յուզմունքէն հրաժարելով Արմանի հետ խաղաղ ու երջանիկ կեանք մը վարել Բարիզէն հեռի։ Անձնուիրութեան, սիրոյ և գորովոյ կենդանի տիպար, Մարկրիտ կ'որոշէ նախ պարտքերը վճարել, ուստի կը սկսի վաճառել բոլոր ունեցածներն և պարտատէրները գոհացնել։ Արման կ'իմանայ զայս, և որովհետև հայրը շատ հարուստ է, կ'երթայ անմիջապէս անոր հաշուակալին և քանի մը հազար ոսկիի վարկ բանալ կուտայ Մարկրիտի համար, որպէս զի սա կարենայ առանց բոլոր ունեցածները ծախելու, պարտքերն ամբողջովին հատուցանել․ հաշուակալն խրոխութիւնը Արմանի հօրն իմացնելուն, այս վերջինը կը փութայ Մարկրիտի ներկայանալ․ տեսակցութիւննին շատ սրտառուչ էր․ նախապէս, Արմանի հայրը Մարկրիտի առջեւ ելած ատեն հազիւ գլխարկն հինգ վայրկենի չափ վար կ'առնէ, բայց որովհետեւ դէմինը հասարակաց կին մ'էր, այդ-

չափ յարգանքն իսկ շատ կը համարի և վերստին գըլուխը կը գոցէ, կ'իմացնէ իրեն թէ իւր պատճառաւ Արման բոլոր հայրական հարստութիւնը փճացնելու սկսած է, թէ ինք (Մարկրիտ) ահագին քանակութեամբ ստակ կը մսխէ, ստակ զոր Արման հօրը գանձէն առնելով կը բերէր իրեն, թէ իրաւունք չունէր այսպէս պատուաւոր և հարուստ ճանչցուած ընտանիք մը թէ՛ անպատուել և թէ մուրոյ վրայ նստեցնել, ևլն. Բայց Մարկրիտ, յետ յայտնելոյ թէ ինք Արմանէն և ոչ մէկ ստակ ընդունած էր, թէ անոր վերջին կարգադրութենէն բնաւ տեղեկութիւն չունէր և թէ նոյն իսկ ինք, առանց Արմանի գիտցնելու, արդէն բոլոր ունեցածները ծախելով պարտքերը վճարած էր, զոր տոմրակներ ցուցունելով կը հաստատէր, և այս ամէնն յայտնելէ յետոյ իւր սիրոյն մեծութեան, սրբութեան և ճշմարտութեան վրայ այնպէս և այնքան գեղեցիկ ու երկար կը խօսի, որ Արմանի ծերունի հայրը կրկին անգամ գլխարկը վար կ'առնու, ներումն կը խնդրէ Մարկրիտէն, կ'արտասուէ մինչև իսկ՝ երբ Մարկրիտ կը յայտնէ իրեն թէ արդէն մահացու հիւանդութենէ մը բռնուած էր, և յոյս չունենալով շատ տարիներ ապրելու՝ շնորհ կը խնդրէր իրմէ՝ ապրիլ Արմանի հետ .... Բայց ծերունին ընտանեկան շահուց և պատուոյ պահանջմանց տեսակէտով անողոքելի կը մնայ. Արմանի մերձակայ ամուսնութեան կարեւորութեան վրայ կը կը պնդէ և չը բաժնուիր՝ մինչև որ Մարկրիտ ծայր աստիճան յուսահատեալ կը խոստանայ մեկնիլ Արմանէն, մերժել անոր սէրը և չիմացնել անոր թէ հօրը հետ այս մասին տեսնուած է։

Արդարեւ Մարկրիտ անմիջապէս կը մեկնի նամակ մը թողլով, յորում գրած է առ Արման թէ մինչև

այն ատեն խաբած էր զինքը, սիրել կեղծելով, թէ գիւղի հաճոյքները քանի մը ամիս վայելելու համար Բարիզը թողած էր, և թէ այժմ վերստին հոն կը դառնար իր հին աղմկալից ու չքեղ կեանքն անցունելու. քիչ օր յետոյ Բարիզի մէջ Մարկրիտի ներկայութիւնը մեծ ձայն կը հանէ, դարձեալ կ'ստանայ իր ապարանքները, կառքերը, ձիերը եւայլն: Բայց ինք գիշերցերեկ կը տանջուի Արմանի սիրով. հիւանդութիւնը՝ որ թոքախտ է, հետզհետէ կը սաստկանայ, կ'ուզէ Արմանը տեսնել և կը փախչի անկէ ....: Բայց ահա Արման ներկայ կը գտնուի երեկոյթներէն միոյն մէջ, ուր կ'սկսի անուղղակի նախատել զՄարկրիտ, հոն գտնուողներուն հետ թուղթ կը խաղայ և միշտ կը շահի, միշտ ալ կրկնելով առածը թէ — Ով որ խաղի մէջ կը շահի, սիրոյ մէջ կը կորսնցունէ. — Հուսկ ուրեմն, երեկոյթին վերջերը, Արման առանց Մարկրիտին լացերուն կարեւորութիւն տալու, իբրեւ ստակով ծախու առնուելիք արարած, երեսին կը նետէ այնտեղ շահած 4-500 ոսկիի պանքնօթներն, և ամենուն առջեւ կը խայտառակէ զինքը՝ դրած ու իրեն ուղղած նամակը կարդալով. երեւակայէ՛ թէ ի՛նչ կ'զգայ Մարկրիտ այս միջոցին ....: Հազիւ քանի մ'օր անցած է և ահա խեղճ աղջիկն հազիւ կարող է սենեկին մէջ պտըտիլ, վերջին անգամ տեսակցելու համար իր բարեկամուհիներէն միոյն միջոցաւ լուր և աղաչանք կը ղրկէ Արմանի, որ նոյնպէս հիւանդ ու ցնորած, աշխարհէ զզուած, տխուր ու վախով կ'անցունէ օրերը, յիշելով Մարկրիտին զինքը խաբելը. այս լրոյն և աղաչանաց վրայ իր բոլոր զգացումները կը բորբոքին, կը թռի, կուգայ Մարկրիտի տունը. այն պահուն յորում Մարկրիտ իր սիրոյն վրայ երազելով և ինքնին խօսելով տկարաքայլ կը

պտըտէր սենեկին մէջ․ բժիշկը ժամ մ՚առաջ մեկնած էր քովէն գլուխը տրտմութեամբ օրրելով և սպասուհւոյն կամաց մ՚ըսելով թէ հիւանդին ապրելու ժամերը շատ քիչ են․ Արման կը մտնէ սենեակը առանց ձայն հանելու և առանց Մարկրիտէն տեսնուելու, մինչ այն համոզմամբ թէ իւր սիրուհին զինքը խաբած է․ Բայց երբ անոր ինքնիրեն և տկար ու մեռելական ձայնիւ խոստովանութիւնները կ՚իմանայ, երբ աչօք կը տեսնէ որ Մարկրիտ այսպէս միայնակ մնալով իւր վըրայ միայն կը խորհի ու կը խօսի, յառաջ կ՚անցնի և ՄԱՐԿՐԻ՛Տ, կ՚ըսէ․․․․։ Կարելի չէ իրենց այս անգամի գիրկընդխառնութեանց տեսարանը նկարագրել, Մարկըրիտ հորդան կուտայ իւր զգացմանց ու լեզուին ա՛յնքան ա՛յնպէս որ Արմանի գրկաց մէջ կ՚աւանդէ հոգին․․․․։

Ահաւասիկ այս է խաղին նիւթը։

Բայց, եթէ գիտնաս, Սառա Պէրնար ի՛նչպէս կը ներկայացնէ իւր դերը, ի՛նչ հրաշալի շարժուածք մարմնոյ, օ՛րպիսի վեհութիւն խօսքերուն մէջ, օ՛րպիսի անճառ անձնուիրութեան ցուցումն առ իւր սիրահարըն, եթէ, կ՚ըսեմ, այս կնոջ դերասանական հանճարին վրայ գաղափար ունենաս, անհնար է որ տեսնել չուզես իւր ներկայացումները․ ես շատ թատերգութեանց ներկայ գտնուեր եմ Պօլիս, հոս ալ քանի մը անգամ թատրոն գացի, բայց ոչ միայն Սառա Պէրնարի հաւասարող չեմ գտած, այլ այնքան կատարելութիւն չեմ երևակայած անգամ․ երբ կը խօսի, ձայնին ելևէջները, արտասանութեանց փափկութիւնն ու զմայլեցուցիչ հրապոյրը կարծել կուտան զմարդ ոչ այս երկրիս վրայ, այլ արքայութեան մէջ․ ես որ այսպիսի բաներու անզգայ եմ, քանի՛ անգամ արտաս-

ուեցի . . . և արտասուողներուն վերջինն էի։
Ժամ մըն էր, երբ Թատրոնէն տուն վերադարձայ։

Ա. Ա. ՍՈՒՐԷՆԵԱՆ

---

Շնորհակալութեան նամակ Մեզպուրեան վարժարանի քսանեւհինգամեակին առթիւ ուղղեալ առ Հիմնադիր Տնօրէնն նոյն հաստատութեան։

Մեծապատիւ

Մկրտիչ էֆէնտի Մեզպուրեան,

Ազնի՛ւ Դաստիարակս,

«ԿԱՄԻԼ ԵՒ ՄԻՇՏ ՋՆՈՑՆ ԿԱՄԻԼ»․ ասա՛ ահա կախումն ունի մարդոյ բարոյականը․ կամիլ զբարին, զհետ պնդել նմա, իրացնել զայն՝ տառապելով ու մաքառելով, յայտարար է արդար և արի բնաւորութեան։ Եւ ո՛րչափ ազնուագոյն ու յարատեւ լինի բարին զոր մարդ կը կամի ու կ'իրացնէ՝ ա՛յնքան աւելի մեծ պէտք է նկատուի այն մարդ, և ա՛յնքան աւելի արժանի պէտք է լինի երախտագիտութեանն ու քաջալերութեանն այն միջավայրին յորում կը գործէ։ Ի՞նչ բարի կայ աւելի ազնուագոյն ու յարատեւ քան Դաստիարակութիւն։ Մարդկութեան վախճանին, քաղաքակրթութեան ղեկն ունին ի ձեռին նոքա որք կը դաստիարակեն․ սերունդներ կ'անցնին, աշխարհի կազմաւորութիւնք կը փոփոխին, և սակայն դաստիարակի գործն մարդկութեան մէջ կը խմորի և աճելով կ'աճի։

Քառորդ դար մ'է ահա որ Հայ մանկտւոյն ձեռքէն բռնած՝ ցոյց կուտաք նոցա ուղին ընդ որ պարտին

*ընթանալ, պարտուց ուղին՝ իւր բազմաճիւղ արահետներով։ Ու Ձեր սաներէն բազում են նոքա որք՝ մտած այդ ուղւոյն մէջ և սփռուած իւր արահետից վրայ՝ պատիւն են Ձեր անուան ու Ձեր հաստատութեան։*

*Ես, յետինն անոնցմէ, կուգամ այսօր Ձեր քսանևհինգամեայ Յոբելեանին առթիւ՝ իմ խորին երախտագիտութեան ու մեծարանաց հարկը վճարել Ձեզ, համբուրելով Ձեր ձեռներ, և խնդրել յԵրկնից որ տայ մեզ հանդիսապէս տօնել Ձեր յիսնամեակի Յոբելեան՝ երբ դուք արդէն ալեզարդ՝ բերկրալից դիտէք Ձեր շուրջն Ձեր արդիւնաւոր կենաց նորաբողբոջ շարունակութիւնն յանձին Ձեր զաւակաց և յանձին նոցա՝ որոց եղէք բարոյական հայր։*

*Մնամ խորին երախտագիտութեամբ*

Գ. Ա. ՄԱՂԱԹԵԱՆ

1 Հոկտեմբեր 1890
Սկիւտար

---

*Առ Տ. Եղիա Տէմիրճիպաշեան։*

8 Յունվար 1884

*Մեծապատիւ էֆէնտի,*

*Ընդունեցայ Ձեր գեղեցիկ նամակն և զգածուելով կարդացի զայն, վասն զի անկեղծութեան դրոշմը կը կրէր. թէև իրաւ է որ գովեստներ շռայլած էիք ինձ, բայց այդ առատութիւնը Ձեր երիտասարդ հոգւոյն խանդին կը վերագրեմ և ոչ թէ շողոքորթական նուաստ կամէութեանց։*

*Դուք կը հաճիք որ և է գրութիւն խնդրել ինձմէ*

*այնպիսի թախանձալից ձայնիւ, որ անշուշտ անմիջական ազդեցութիւն մի պէտք էր ունենալ և Ձեր ուզած արդիւնքը արտադրել: Բայց եթէ հակառակը նշմարէ՛ք. մի՛ նեղանաք, կ'աղաչեմ, դուք անձամբ դատեցէք:*

*Ես մէն մի անգամ որ գրած եմ՝ հաստատ գաղափար մի և կամ լաւ եւս ըսեմ հաւատքս յայտնելու դիտաւորութիւն ունեցած եմ, անփոյթ ըլլալով գովեստ ընդունելու կամ քննադատութեանց ենթարկուելու. բաւ է ինձ որ ես գոհ ըլլամ խղճիս դատաստանին առջեւ:*

*Որ և է հաւատք անկեղծութիւն է, և անկեղծութիւնը բարձրայօն կրնայ կանգնիլ ամէն ժամանակ. սուտը միայն կորագլուխ քալելու սահմանուած է:*

*Հաւատքս հռչակեցի ակար ձայնիւ, իրաւ է, բայց վերջապէս հռչակեցի, քաջութիւնս նոյն հաւատքէն քաղելով նոյն իսկ. առ այժմ ոչինչ ունիմ ըսելիք, ուրեմն ի՛նչ կ'ուզէք որ գրեմ: Սակայն առաջին անգամ որ զգածուիմ որ և է պարագայէ մը՝ կը խոստանամ գրելու, և գրութիւնս ձեզ յղելու. այո՛, զայդ կը խոստանամ սիրով: Կը տեսնէք անշուշտ թէ յօժարութեան թերութիւնը չէ յիս այլ կարողութեան, որով վստահ եմ Ձեր ներողամտութիւնն ստանալու:*

*Ընդունեցէք, ևլն:*

ՍՐԲՈՒՀԻ ՏԻՒՍԱԲ

---

Կիրասոն, 10 Յուլիս 1884

*Սիրելիդ իմ Եղիա,*

*Անպատում ուրախութեամբ ընթերցայ նամակդ: Այդ նամակ ոչ միայն խաղաղութիւնս չվրդովեց, այլ*

պահ մը վերացոյց միտքս ու հոգիս այն հասարակ մըտածութիւններէն, որոց դատապարտուած եմ տարիէ մը ի վեր։ Այնքան չար, այնքան եսասէր աշխարհի մէջ երբ հավուագիւտ բախտով մը իրօֆ բարի մարդու մը բարեկամութիւնը վաստկեր եմ, ի՜նչ իրաւամբ պիտի գգուեմ, ի՜նչ իրաւամբ պիտի անիծեմ այդ բարեկամութեան օրն կամ օրերն։ Ընդհակառակն զանոնք ի յուշ ածել կենացս հաճոյքներէն մին է։ Եթէ դու ևս, հնազանդելով հոգւոյդ թելադրութեանց՝ հաճիս սրտիդ պէտքը լնուլ, գրելով ինձ, անդնահատելի ծառայութիւն մը, ոչ պիտ՚ ըսէի բարեկամութիւն մ՚ըրած կ՚ըլլաս ինձ։ Թէև ունիմ ամուսին և երկու ձագուկներ, զորս հոգւով չափ կը սիրեմ, այլ նոքա չեն կարող լնուլ սրտիս բոլոր պարապը։

Ամէն իտէալ երբ մարմին կ՚առնու, շատ կը կորսնցնէ իւր կատարելութենէն և հրապոյրներէն․ դու ընտանիքը իբր իստէալ կը պատկերացնես մտացդ աչաց առջեւ։ Արդարեւ ընտանիքը ունի իւր քաղցրութիւններն ու երանութեան ժամերն, բայց այն ալ զերծ չէ դառնութիւններէ, մանաւանդ երբ ընտանեաց կեանքն բաւական ապահովուած չէ։ Այդ պարագային մէջ ընտանեաց հայրն ստիպեալ է սա երկու բաներէն մին ընել․ 1⁰ կամ հրաժարիլ ամէն անձնական համոզումներէ և կարծիքներէ և փոքր ի շատէ հանգիստ կեանք մը վարել և 2⁰ կամ պաշտպանել իւր համոզումներ, այլ թշուառ ընել ոչ միայն զինքն այլ և իւր բաղդին կապուած խել մը արարածներ․․․։

Շատ կը փափաքիմ անգամ մը Պոլիս գալ նոր մըխում մը (trempe) ստանալու համար քու և նմանեացդ տեսութեամբ, զի կ՚զգամ թէ ամէն օր չօշափած մարդոցս niveauին կը մօտենամ․ միայն գրքերը բաւական

չեն պահպանելու զիս այդ անկումէն․ բայց և այս պարագային մէջ նիւթական կեանքն իւր անողոքելի պէտքերով կը կաշկանդէ իմ ոտքեր։ Առաջին առթիւ պիտի գամ անոյշ դայլայլիկդ մտիկ ընելու․ դեռ ականջիս կը հնչեն Շահնազարեան վարժարանի վերի դասատան մէջ առաւօտները երգած դայլայլիկներդ։

Ի՜նչ երանաւէտ օրեր։

Ցնոր տեսութիւն։ Բարեկամական սէր և ողջոյն։

Միշտ քոյդ

Ս․ ԷԹՄԷՔՃԵԱՆ

---

Բարիզ 8 ապրիլ 1882

Սիրեցեալ Եղիա,

Հազիւ երկու ժամէ ի վեր շոգենաւս հեռացած էր Վոսփորի ափունքէն․ արեւը մարը մտած էր արդէն և մութն կը թանձրանար տակաւ տակաւ․ նոյն օրն մեծ ցնցում մը կրած էր հոգիս․ լալով բաժնուած էի, առաջին անգամ լինելով, ընտանեացս գրկէն, և, միայնակ, դեռ ոչ իսկ քսանամեայ, ես կը հեռանայի այն ասպնջական յարկէն, ուր տակ անցուցած էի մանկութեան և պատանեկութեան տարիներս, տարինե՜ր անմեղութեան և երանութեան, կը հեռանայի․․․ ա՛լ սնարիս մօտ չպիտի գտնէի հոգատար մայրիկս, ա՛լ շուրջս չպիտի տեսնէի խանդաղատանքի ժպիտներն, ա՛լ զրկուած պիտի մնայի ընդերկար ընտանիքէս և բարեկամներէս, կ՚երթայի հեռու, շատ հեռու քաղաք մը, ուր ո՞ գիտէ, ի՛նչ փորձութիւնք և աղէտք ինձ կը սպասէին․ ուր, անփորձառու և առանձին, պիտի

ստիպուէի մարտ մղել ինձ սպառնացող անհամար հըրապուրանաց դէմ. այս տխուր գաղափարներն, գիշերուան մթութեան և Սեւ ծովու ներգործած առաջին տպաւորութեան հետ խառն, սոսկում ազդեցին ինձ. յանկարծ ուզեցի ետ դառնալ, դառնալ խաղաղութեան գիրկը, զոհելով ուսումն ու ապագայն. այլ Տանաէ յառաջ կը խիզախէր և անիւին անձնիւր չրջանն կը հեռացնէր զիս ծննդավայրէս. աչքս յառած էի այն կողմն, ուր դեռ կը տեսնէի Ֆէնէրի կանթեղին լոյսը, որ տակաւ կ'աղօտանար. տեսայ թէ անհնար էր ետ դառնալ, թէ հա՛րկ էր մարտնչիլ և մարդ լինել. որոշեցի վանել սև խորհուրդներս՝ ընթերցմամբ. ձեռքս գրպանս տարի և անդ գտայ նամակդ, երթաս բարեաւի միակ գիրն, զոր ստացայ քաղաքէդ մեկնելէս յառաջ, կարդացի զգայուն տողերդ, որք սփոփեցին զիս, մանաւանդ այն տողն ուր գրած էիր. «Գնա՛, հետիկդ ըլլայ Աստուած...»:

Այո՛, Եղիա, ըսի ինքնիրն, իրաւունք ունիս, պէտք ունիմ Աստուծոյ օգնութեան անվնաս ազատելու համար այն մրրկէն, որ մէջ կը նետուիմ, այլ քանի որ քեզ պէս առաքինի սրտէ մը այդպիսի մաղթանք մը ինձ կ'ուղղուի, Աստուած հետիկս է, պիտի պաշտպանէ զիս...:

Նոյն օրէն ի վեր այդ նամակդ ծոցս կը պահեմ և երբեմն կը կարդամ զայն. Նոյն տողերը միշտ կը զօրացնեն սիրտս և խրախոյս կուտան ինձ:

Վեց ամիսէ ի վեր կը հետեւիմ իրաւագիտական դասերուն. կ'աշխատիմ որքան կարելի է, գիշերն խառնելով ցերեկուան. չգիտեմ պիտի յաջողի՞մ, այլ խիղճս հանդարտ է, քանզի պարտքս կը լնում. Բարիզ չհրապուրեց զիս, կը տեսնեմ թէ կամք ունեցող երիտա-

սարդի մը համար հնար է սաստ ապրիլ անվնաս և առանց վէրքի ազատիլ ամէն կողմէ արձակուած թունաւոր սլաքներէն։

Եղբայրդ

ՀՐԱՆՏ ԱՍԱՏՈՒՐ

---

Բանաստեղծութիւն։

Գաղատիա, 29 Յունիս 1885

… Տէր,

Յուսամ անհոգութեան կամ անքաղաքավարութեան արդիւնք համարած չէք լռութիւնս փոխարէն Ձեր չքնաղ նամակին, զոր այնքան բերկրութեամբ ստացայ անցեալ տարի և զոր բառ առ բառ կը յիշեմ ամէն օր։ Կան սրտեր որք զիրար կը հասկնան, և Ձերն անշուշտ գուշակած է որ առ Ձեզ խորին յարգանաց զգացում մի առիթ տուած է գրոյս յապաղման։ Զի դուք ծայրայեղ ներողամտութեամբ դատելով գրական դոյզն աշխատութիւններս, պատիւ ըրած էք ինձ առաջարկել որ շարունակեմ զայնս Ձեր խմբագրութեան ներքեւ հրատարակեալ պատուական Երկրագունտի աշխատակցելով։

Քանի՜ երախտագէտ զգացմամբ համակուեցայ այն բարձր պատուոյն համար, որով կը հաճէիք ջնջին անունս այնքան մեծ անուններու քով արձանագրել, սակայն ընդունելութեանս հետ այս մասին զգացած ուրախութիւնս կը փափաքէի գործնապէս ապացուցանել, կցելով պատասխանիս տաղ մի կամ մի յօդուած։

« L’homme propose et Dieu dispose »

*Ցարդ ընտանեկան զբաղմունք չը ներեցին ինձ սոյն իղձս գործադրել և ընկերութենէ հեռի վարած կեանքս օր ըստ օրէ նուազեցոյց քաջութիւնս, որ անդադար կը վարէր զիս ի հրապարակ. մինչ իսկ եղաւ օր մի յորում կասկածեցայ գաղափարներս անզգայ թղթին հաղորդելու կարողութեանս վերայ։ Այլ փոխուեցաւ սոյն վիճակն ալ որպէս կը փոխուի ամեն ինչ։ Այն օրէն ի վեր որ մեկնեցայ Պրուսայէն և զերծայ տաղտկալի հիւրեր ընդունելու տանտիկնական պարտքէս, գոգցես սկսայ չնչել ազատ, և աստ ամուսնոյս հայրական տունն վերստացայ նոր ընտանեացս քով այն մանկական վիճակն, զոր երբեմն ծնողացս գիրկն կը վայելէի. Աստ կ'զբաղիմ ըստ հաճոյս ընթերցանութեան, և ընթեռնուլ՝ սիրելի ընկերութեանց մէջ ապրիլ է ինձ համար։ Ուստի կը փութամ վերսկսիլ գըրական պաշտելի կեանքս և կը յուսամ կը ներէք ինձ որ առաջին գործս թարգմանութիւն մը լինի, մինչեւ կարենամ բաւական վստահութիւն գտնել յիս բուն իմ ներշնչմամբք հրապարակ գալու։*

*Ուրեմն կը յղեմ Ներփակեալ Լամարթինայ մի քերթուածն զոր Ձեր միջոցաւ ընթերցած եմ երբեմն, եւ կը ձօնեմ բարեկամուհեացս միոյն։ Նորա անունն ալ առ այժմ ծածուկ է մեծ քերթողին դիւցազնուհւոյն նման, և ինքն չքնաղ է և հանճարեղ իբրեւ զայն։*

*Առ Ձեզ երախտագիտութեանս յարատեւման ապացոյց մի կը համարիմ հաւատալ որ միշտ միեւնոյն ներողամտութեամբ պիտի դատէք զիս, և չնորհ ընէք հիւրընկալել սոյն տաղն Ձեր անգին թերթին մէջ, ընդունիք նաեւ մշտատեւ հիացմանս և խորին յարգանացս հաւաստիքն։*

*Որով Մնամ Ձերդ ի սրտէ*

[Երկրագունդ] ԶԱՊԷԼ Կ. ՏՕՆԵԼԵԱՆ

## Նամակ առ Արժ. Յովհ. Աւագ քահանայ Մկրեան, նորա Յակոբիկ որդւոյն մահուան առթիւ:

Որդեկորոյս Հա՛յր,

Գարնան զուարթաբեր առաւօտ է, Ծաղկազարդի տօն էր, մինչդեռ աշխարհ կը ծաղկազարդէր, քո ծաղիկդ խամրեցաւ, ո՜հ և մինչ մանկիկն ձիթաստանեայց լերան վրայ 'Ովսաննա՛յ կ'երգէր. մինչ եկեղեցին կը հրճուէր, դու Յակոբիկդ կուլաս և ինձ դոյժ կուտաս որ իբրև զհայրդ կը սիրէի զինքն, և ո՞վ չէր սիրեր այդ աննման Հայ զաւակդ, որ իւր ամեն ազնիւ ձիրքերով սիրելի եղած էր ամենուն: Եւ գիտեմ, դու անհընարին կը վշտակրիս և կը խռովիս թէ ինչո՞ւ համար շուտ խամրեցաւ նորաբոյս գարնան ծաղիկդ: Դու կը հաւտա՞ս, Հա՛յր, թէ ծառերու և ծաղիկներու զարդարիչ մշակը՝ երկնից նախախնամութիւնն է. և նա է որ մահկանացուաց աշխարհէն կը տեղափոխէ անմահութեան աշխարհին և դրախտին մէջ կը տնկէ. և ո՞վ կարող է կամ իրաւունք ունի նախախնամողին ձեռք բռնել, որ իսկապէս ծաղիկներուն դարմանիչ տէրն է:

Մի քանի օր առաջ զՅակոբիկդ տեսայ, նա գիտես թէ կռուեր իւր անձին դէմ և երկնից դէմ կ'ոգորէր. Հոգին ներքուստ կը հեծէր, շրթունքները կափկափելով կը պաղատէր. «Տէ՛ր իմ, կ'ասէր, դեռ մատաղ մանուկ եմ, նոր եկայ աշխարհը, թող որ տեսնեմ թէ ի՞նչ կայ. ես լոյս կը սիրեմ, առաքինութեան ասպարէզ նոր մտեր եմ, ի բոլոր սրտէ յառաջդիմութիւն կը սիրեմ. ո՜հ, մրցանակս մնաց, թոյլ տուր ապրիմ, նպատակիս հասնիմ, մրցանակս առնում և ապա մեռնիմ»: Յառաջդիմութեան սիրահար Յակոբը, ա՜հ,

մինչեւ քու տագնապի և մահուն օրը գիր սիրեցիր, ու գրիչ սիրեցիր և յառաջդիմութեան կարօտով մեռար։ Ցակոբին գրիչը՝ ձեռք առէք, այնպէս դրէք ի գերեզման. թո՛ղ երթայ Երկնից դպրութեան մառանը, հրեշտակներու հետ պարապի, երգէ ու գրէ։

Հա՛յր, կ՚աղաչեմ, ողջոյն տուր Ցակոբիկիդ, ես չեմ կարող ժամանել և չեմ հանդուրժել նորա դագաղը տեսնալ։ Համբուրէ՝ այն պայծառ ճակատը, որ յառաջդիմութեան նշան կուտար և մահուան ժանտ ձեռք եղծեց զայն։ Համբուրէ՝ այն դրասէր աչերը որ ընթերցմանէն լուսանուաղեր էր. և գիտեմ թէ քանի՛ անձկութեամբ կ՚սպասէր, որ իւր վաստակաւոր մատանց երկասիրութիւնը (1) տեսնայ և այնպէս մեռնի և միթէ ուխտե՞ր էր Հայոց մանկտւոյն ընծայ մը տալ և մեռս բարով սալ։

Սորա համար, Հա՛յր, քո վիշտն անկշիռ է և ո՞վ կարող է զքեզ և քո ցաւերդ սփոփել։

Այլ մխիթարեա՛ց, մխիթարեա՛ց, դու Քահանայ Տեառն ես, Քահանայ ես Քրիստոսի եկեղեցւոյն, անմահութիւն և արքայութիւն կը քարոզես, ձեր մեծ կոչումն է, որ սգաւորները մխիթարես։ Ուստի գնա՛ սեղանոյն առաջ զոր կը պաշտես դու, քու ձեռներդ վերամբարձ տարածէ՝, լի հաւատով գոչէ՝ Ոսկեբերանին վերօրհնութիւնը.

« Փա՛ռք քեզ, Աստուած, փա՛ռք քեզ, յաղագս ամենայնի ». Դարձի՛ր ի տուն, սփոփէ՝ Ցակոբիկին սգաւոր մայրիկը, որ քան զքեզ առաւել կ՚աղեկիզի և կը մրմռքի. զի մայր է, և մօր գորովն անհուն է։

Վշտակից Ձեզ

1876 Մարտ 28

* * *

[1] Նախաշաւիղ Գիտութեանց եւ Արուեստից։

### Եօթանասնամեակի շնորհաւորութիւն ։

*Մեծավաստակ խմբագիր . . . լրագրոյ .*

*Ընդունեած եմ արդէն հեռագիրդ , որ կը շնորհաւորէր ծեր հասակիս եօթանասնամեակը . աւա՜ղ , միթէ այդ ժամանակակէտ հասա՞ծ եմ ։ Գիտէ՞ք զի ես ուշամոռաց մի մարդ եմ դարձել , որ չեմ կարող միտ բերել անցելոյն հաշիւը , զի մտածմանս խորհուրդ զիս միշտ դէպ յապագայն կը տանի ։ Չէի ուզեր նաեւ կեանքիս հաշիւ տեսնել և յուշ բերել ըստ Սաղմոսին . թէ ո՛րչափ ինչ պակասեալ է յինէն ։*

*Դուք և համայն գրական և ընկերական դասեր ձայն տուին ինձ՝ ինչպէս մի պատգամաւոր հրեշտակ՝ թէ լրացաւ մեր եօթանասնամեակի շրջանը ։ Շնորհաւորելով հանդերձ , ինձ լաւին կերպով կ'իմացնեն Մարգարէին բան , թէ « հրաման տուր վասն տան քո , զի մեռանիս և ոչ կեաս ։ »*

*Իսկ ես զգալով փոխադարձ պարտքս՝ կ'օրհնեմ այն ազնուասիրտ բարեկամաց կեանք և բազմաց յառաջդիմութեան և բարգաւաճման համար կը մնամ միշտ*

*Աղօթարար ի Տէր*

1890 Ապրիլ 25 * * *

## Մասնաւոր նամակ առ Ազն. Մկրտիչ էֆ. Մեզպուրեան:

Ազգակի՛ց Տէր,

Դրախտի եկեղեցւոյ Ս. Քահանայն էր նոյն ինքն Աստուած. Հրեշտակաց յանձնուեցաւ այնուհետեւ նոյն սուրբ և սրբազան պաշտօն. Քահանայն՝ որ Աստուծոյ և մարդկութեան շաղկապն է եւ միջնորդ, մինչեւ ցարդ մարդկային աստիճաններուն ամենէն գերագոյն եւ բարձր տեղին կը գրաւէ. Նոյն սուրբ կարգին պաշտօնեայք են Աբէլ, Սէթ, Ենովք, Նոյ, Աբրահամ, Աբիմելէք, Իսահակ եւ Յակոբ: Այնուհետև առ ստորոտով Սինայ լերին Քահանայութիւնը տրուեցաւ Մովսեսի եւ վերջապէս եղաւ սեփհական միայն Ահարոնի տան կառավարել զհինն եկեղեցի յանապատին եւ յերկրին Աւետեաց:

Հին ստուերական ուխտի պաշտօնեայք յԱստուծոյ էին կարգեալ. և ով որ մարմնաւոր շահուց ցանկութեամբ կը յանդգնէր վարել զնոյն սուրբ պաշտօն. փոյթ ընդ փոյթ կենթարկուէր Աստուածառաք պատժոց, ինչպէս Կորխ, Դաթան, և Աբիրոն, Սաւուղ եւ որդիք Հեղեայ: Խե՛ղճ Ոզիա, Ուխտի Տապանակին միայն դպչելուն համար իսկոյն դատապարտեցաւ մահուան: Տէ՛ր, կարծես Նոր Օրինաց Աստուածը փոխեր է իւր բնութիւնն, աւելի ներողամիտ, աւելի անյիշաչար կը ներկայի մեր աչքին:

Իմ ի Ռուսաստան և աստ տեսած դունդագունդ քահանայից դասուն մէջ քանինե՛ր իբրեւ մեքենայ կը

վարեն պաշտօն․ կը գործեն իբրեւ արհեստ․ երբ մեքենաբար նորածինը կը մկրտեն, երիտասարդը կը պսակեն և զմեռեալը կը թաղեն։ Այնպիսիներուն գիտութիւն առնցմով կը վերջանայ։

Մարդացեալ Աստուած իսկ էր միանգամայն քահանայ ըստ կարգին Մելքիսեդեկի․ և ինմանէ սուրբ Առաքեալք և նոցա յաջորդք մինչեւ ցայսօր և ցկատարած աշխարհի կը վարեն և պիտի վարեն նոյն նուիրական պաշտօն։

Մեր տոհմի անցելոյն գիտակ և ներկայ վիճակին հեռատես դիտողը լաւ կը տեսնէ արժանաւոր քահանայի պէտքն․ զի պատմութեանց էջերուն մէջ ամենէն գլխաւոր թշուառութեանց պատճառ կը տեսնուի չահամոլ քահանայ մը․ Տէր Կիրակոսներ, Գաղիչոյ և Բրգիչոյ, եւայլն։ Իսկ Սուրբ Ոսկի, Սուրբ Ղեւոնդեանք և նոցա նմանիք ի՛նչ բարիքներ չեն կարող ընել ժողովրդեան մը, որ օրօրանէն մինչեւ ցդագաղ իրեն միայնակ ընկեր ունի տան երէց քահանայ մը՝ զոր կը սիրէ, կը պատկառի անկէ, ջերմեռանդութեամբ կը համբուրէ նորա ձեռներն ու քղանցքն, իւր նիւթական գործոց յաջողութիւն՝ նորա պահպանիչէն, բժշկութիւնն ի ցաւոց՝ նորա փարատեաէն, և խղճի անդորրութիւն և յաւիտենից երջանկութիւն նորա ողորմեսցիէն և հոգոցէն կ՚սպասէ։

Դուք, Մեծ․ Տէր, զիս իբրեւ պարտաճանաչ, նոյն Աստուածային բարձր և սուրբ պաշտաման արժանաւոր տեսնելով, բարեսրտութեամբ կը հրաւիրէք ըստանձնել Ձեր բնակած թաղի Ս․ Եկեղեցւոյ մէջ քահանայական պաշտօն։ Կը յարգէի Ձեր կամքը, զի սիրելի է ինձ ի մանկութենէ անտի ընդ աղբ կալ ի տան Աստուծոյ։ Արդէն 15-20 տարի դպրութեամբ կը ծա-

*ռայեմ առաջի Տեառն և ի տան Տեառն։*

*Այլ այն ծանր ծանր պատասխանատուութիւնք՝ որք կը ծանրանան նոյն քաղցր լուծին հետ քահանայից վզին վրայ, այն ահաւոր պատիժներն՝ զոր հին Օրինաց ըմբոստ քահանայք կրեցին, և պիտի կրկնապատիկը կրեն Քրիստոնէական Ս. Եկեղեցւոյ անարժան պաշտօնեայք, և քննելով զիմ անձն, ի կշիռ դնելով զիմ բարոյական և նիւթական կարողութիւնս, դեռ անպատրաստ և անարժան կը գտնեմ ինքզինք գէթ առ այժմ։*

*Ո՛ գիտէ, եթէ Տէրն է որ զիս կը կոչէ, անշուշտ կը կրկնէ իւր սուրբ ձայնն, և ես ապաւինելով յողորմութիւն Նորա սուրբ կամաց, իմ տկարութեամբս կուխտեմ ցկեանս ծառայ լինել իւր սուրբ անուան և սիրելի տոհմիս՝ որոյ հարազատ զաւակն եմ ուխտաւոր*

*Ազգակից*

1893 Ապրիլ 11 Ջէնկիլէր — Գ. Մ. ՃԷՊԷՃԵԱՆ



# ԳԼՈՒԽ ԺԲ.

## ԹՂԹԱՏԱՐՈՒԹԻՒՆ

*Թղթատարութիւնը հասարակաց մեծ գործ մ'է. իւր պաշտօնն է նամակներու փոխանակութիւն, որ անհրաժեշտ է վաճառականութեան և ճարտարութեան պիտոյից։ Նա հաւասարապէս գոհացում կուտայ թէ՛ ընտանեկան և թէ բարեկամական շահուց։ Վերջապէս կը դիւրացնէ ժողովրդոց մէջ յարաբերութիւններ։*

*Ուրեմն իրաւամբ ըսած է Վօլդեռ. «Թղթատարութիւնն ամէն գործերու, ամէն վաճառականութեանց կապն է. անով բացակայք կը լինին ներկայ։ Այն՝ սփոփանք է կենաց»։*

*Թղթատարութիւնը ստիպողական պէտքէ ծնած է և այդ պէտքն է մարդոց իրարու հետ թղթակցիլն, անոնց՝ որ երբեմն միացած էին, իսկ այժմ բաժնուած են։ Ուրեմն կարելի է ըսել թէ քաղաքակիրթ աշխարհի պէս հին է այն։*

*Յունական հնութեան պատմագիրք կը խօսին ձիաւոր սուրհանդակաց հանգոյցներու մասին* (relais), *զորս Կիւրոս կարգաւորեց Յիսուս Քրիստոսէ* 550 *տարի առաջ, իւր հրամաններն հասցնելու համար իւր ընդարձակ պետութեան ամէն կողմ։*

*Աստուածաշունչը, Եսթերի Գրքին մէջ, առհասարակ մը քանի ծանօթութիւններ կուտայ թղթատարական կազմակերպութեան մասին, որ Արտաշէս Պար-*

*սից Թագաւորին օրով կը բանէր երագաձի սուրհանդակաց միջոցաւ։*

*Հռովմայեցիք ևս, երբ հաստատեցին իրենց անհուն պետութիւնը, զգացին կարեւորութիւնն իրենց բոլոր երկիրները հաղորդակցութեան մէջ դնելու։ Նոցա շնորհիւ զանազան Թղթատուններ հաստատուեցան, որոց բազմաթիւ հետքերն մեր օրերն իսկ կ՚երեւան։*

*Բայց ընդհուպ բարբարոսաց արշաւանքը Հռովմէական կայսրութեան անկումը յառաջ բերաւ, իբրև կոհակ տարածուեցաւ և մարեց ամէն քաղաքակրթութիւն. որպէս այլ հաստատութիւններ Թղթատարութիւնն անհետացաւ.*

*Մեծն Կարոլոս ջանաց իւր կայսրութեան գաւառներուն մէջ հաղորդակցութիւններ հաստատել։ Բայց անոր մահէն ետք յաջորդները Թղթատարութիւնն անկեալ վիճակի մէջ թողուցին։*

*Որովհետեւ Աւատականութեան ատեն բոլոր ճանապարհք ապահով չէին, կարելի չէր կանոնաւոր ծառայութիւն մը հաստատել. Թղթատարութիւնն այս խռովեալ ժամանակաց մէջ գրեթէ այլ ևս գոյութիւն չունէր. միայն յատկապէս խրկուած սպասաւորներ կամ մի քանի սակաւաթիւ անձինք պատգամաւորներու պաշտօն վարելով նամակներ կը տանէին վտանգաց դիմագրաւելով։*

*Սակայն բազմատեսակ պէտքեր զգացուցին թէ Թղթատարութիւնն հարկ է հիմնովին բարեկարգել, այսպէս այն ընդունեցաւ մեծամեծ բարւոքումներ մինչեւ մեր օրերն յորս արդի ընկերութեան պիտոյից համաձայն եղաւ։*

*Այսօր Թղթատարութիւնն գրեթէ կատարեալ գործի մ՚է ամենուրեք և կանոնաւորուած է* 1878*ի Բարիզու*

Միջազգային Թղթատարական Համաժողովէն , նոյնպէս անցեալ տարւոյ (1892) ի Պեռն գումարուած Համաժողովէն , ուր կայսերական կառավարութեան կողմէ պատուիրակ ներկայացաւ Ազն. Մելքոն էֆ. Իւզպաչեան ։

Այսպէս շնորհիւ հիանալի տնօրինութեանց՝ թղթատարութիւնն կ՚ապահովէ այժմ աշխարհի հինգ մասանց բնակիչներու մէջ արագ , դիւրին և խնայողական յարաբերութիւններ ։

Աչքի առաջ ունենալով թղթատարութեան արդի մեծ դիւրութիւններ , տեսնենք այժմ թէ ո՞րպիսի սուրհանդակք էին երբեմն ի Փոքր Ասիա , քաղելով Charles Texierի Universի ՓՈՔՐ ԱՍԻԱ անուն հմտալից գործէն ։

« Պարսիկները ի Խրիսուպօլիս ( յիւսկիւտար ) հաստատած էին սուրհանդակներու կայան մը , որ հրամաններ կը տանէին կայսրութեան բոլոր երկիրներուն մէջ , և Հռովմէական կայսրութիւնն այս հաստատութիւնը խնամով կը պահէր ։ Օգոստոս կայսրն Պարսից օրինակին հետեւեցաւ հաստատելով վէռէտառիներու ( թղթատար ) արհեստապետութիւն մը՝ որ կայարաններ ունէին յիսուն մղոնը անգամ մը , հոն կը գտնուէին պահեստի ձիեր՝ որք յոգնած ձիերու տեղ կը գործածուէին , նոյնպէս երկանիւ կամ քառանիւ կառքեր՝ որք մինչեւ հազար լիպրա ծանրութիւն կրնային կրել ։ Լծուելու սահմանեալ կենդանեաց , ձիոց կամ ջորեաց թիւը որոշուած էր կանոնագրութեանց միջոցաւ ։

«Երկանիւ կառքերն 500 լիպրա կրնային տանիլ , սուրհանդակին ձին 50 լիպրա աւելի կրնար տանիլ ։ Ամառը ութը ջորի կը լծուէին , ձմեռը տասը . երկանիւ կառքերուն երեք ձի կը լծէին ։ Վաղենտինիանոս թող

*չտուաւ որ այս վերջնոց մէջ երեք հոգիէ աւելի նստին։ Փոխադրութեան այս միջոցներէն զատ կային* վէռէտի *կոչուած արշաւի ձիեր, որք ահագին հեռաւորութիւններ կը կտրէին կ'անցնէին մեծ արագութեամբ։ Եթէ թամբին և սանձին ծանրութիւնը* 60 *լիպրայէն աւելի ըլլար, տուգանք կար. իւրաքանչիւր կայարան պէտք էր պատրաստ ունենալ քսան ձի, և երբեք առանց ձիու չմնար։ Պատրիկները իրենց ձիերը ճոխ կազմածներով կը հանդերձէին. սանձերը ու պախուցները ոսկեզօծ էին։ Վերջապէս հասարակութեան կողմէ վճարեալ անասնաբոյժ մը կայարանին մէջ պաշտօն ունէր։*

*« Ամէն տարի ձիերու թուոյն մէկ քառորդը կը նորոգուէր, և անոնց տեղ նոր ձիեր կուտար նահանգն։ Այս սուրհանդակներու շնորհիւ լուրերը կը տարածուէին ամենամեծ արագութեամբ։ Ձիերը թամբելու համար միշտ պատրաստ դերիներ կային։ Պաշարաբարձ շտեմարաններ կը ծառայէին ոչ միայն սուրհանդակի ձիերու, այլ եւ այն ձիաւորներուն՝ որք ջոկատ առ ջոկատ կը ճամբորդէին։ Կայսերք իսկ փոխադրութեան այս միջոցը կը գործածէին։ Տիտոս հիւանդացաւ սուրհանդակաց կայանի մը մէջ։*

*« Մասնաւոր անձինք կայսերաց փոխադրութեան համար ի գործ դրած միջոցը կրնային գործածել պրետորներու պետին մէկ մասնաւոր հրամանագրով։*

*« Պլինիոս, Բիւթանիոյ պրետորը, շատ խստապահանջ ըլլալ կը թուի այս հրամանագրերը տալու մասին, և Տրայիանոսի կը գրէ թէ բացարձակապէս կարեւոր պարագայի մէջ միայն կուտայ։ Նոյն ինքն իւր նահանգին մէջ պտըտած ատեն ձիով չ'էր ճամբորդեր, այլ կառքով. այս կերպով գնաց Եփեսոսէն ի*

Պերկամա․ բայց այս ճամբորդութիւնը շատ յոգնեցուց զինքը. և Պերկամայի Նաւահանգիստ Պլտանայէն նաւ նստաւ Բիւթանիա երթալու համար։

« Հասարակաց սուրհանդակներու (Անկարի) այս հաստատութիւնն տակաւ կը սկսէր դադրիլ Բիւզանդական կայսրութեան օրով, պանդոկապետները կողմնակցութեամբ և կամ դրամով՝ սուրհանդակաց կրնային ծառայել, և ուզողին իրենց ձիերը վարձու կուտային։ Ճամբաները գէշ ըլլալուն համար սայլերու գործածութիւնն անպէտ դարձած էր։ Վարչութիւնը կը սկսէր խառնակիլ, երբ Օսմանեանք տիրացան երկրին։ Ասոնք ձիաւոր ժողովուրդ ըլլալով՝ իրենց իշխաններն անգործածութեան մէջ չձգեցին հաստատութիւն մը՝ որուն մէջ ձին գլխաւոր դերն կը կատարէր։ Հռովմէական Մանսիոնէներուն յաջորդեցին Մէնզիլխանէներն, զորս Սուլթան Սիւլէյման բարեկարգեց։ Պրետորներու պետին կողմանէ յանձնուած հրամանագիրներուն (diploma) տեղ անցան պույրուլտուներն, զորս փաշան կուտար և կառավարութեան գործակատարները միայն իրաւունք ունէին ձի գործածելու։ Բայց փոխադրութեանց այս հաստատութեան մէջ վաճառականութիւնն ալ դեր ունէր։ Միևնոյն ժամանակ խարվանսարայ անուամբ սքանչելի պալատներ հաստատեցին, այսինքն կարաւաններու պալատներ։ Այս հաստատութիւնները գետնայարկի վրայ ունէին ընդարձակ ախոռներ, ապրանաց համար մթերանոցներ և առաջին դստիկոնին վրայ ճամբորդաց համար սենեակներ։ Ընդհանրապէս այս հաստատութիւններն իրենց յատուկ եկամուտ ունէին, այնպէս որ կարաւաններն չնչին գումար մը տալով կ'ընդունուէին։

---

## ՀԵՌԱԳՐՈՒԹԻՒՆ Ի ՀՆՈՒՄ

« Բացի կայսերական հրամանները ցամաքի ճամբով փոխադրելու եղանակէն, Բիւզանդիոյ Վեհապետները օդային-գիշերային հեռագրական թել մը հաստատած էին Տարսոսի և Սկիւտարի մէջ: Առաջին կայանը հաստատած էին Պուլկուրլու լերան վրայ: Այս հեռագրաթելը կը հաղորդակցէր Կոստանդնուպոլսոյ հետ:

« Այս տեսակ հեռագրական նշաններու գիւտը շատ հին ժամանակներէ կը սկսի: Տրովայի առումը աւետուեցաւ Յունաստանի՝ գիշերային նշաններով՝ որք իրարու փոխանցուեցան մերձ առ մերձ բոլոր լերանց գագաթներուն վրայ: Կեղտացիք ալ գիտէին թղթակցութեան նոյն միջոցը, բայց հեռագրական նշաններու կանոնաւոր կազմակերպութիւնը բուն իններորդ դարէն կը սկսի. այս նշաններն կատարելագործուեցան Թէոփիլոսի օրով ի ձեռն Լեւոն իմաստասիրի, եպիսկոպոսին Թեսաղոնիկէի: Թշնամեաց շարժումները գիտնալու համար կազմակերպել տուած էր այս տեսակ հեռագրութիւն մը. կրակներն այնպէս մը կարգադրուած էին՝ որ ծածկագրութիւններ կը ձեւացնէին եւ այս ծածկագրութիւններն պարբերութեանց իմաստը կը յայտնէին. ութը կայաններ հաստատուած էին Տարսոսի և մայրաքաղաքին մէջ: Առաջինն ի Քուլա Տարսոսի մօտ (անշուշտ այսօրուան Քիւլէկ Պօղազ կոչուածըն), իսկ վերջինը Պուլկուրլու լերան վրայ. այս վերջին կայանը կը հաղորդակցէր ուղղակի պալատին հետ:»

---

## ԹՂԹԱԲԵՐՆ ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

1830էն առաջ մասնաւոր անձինք իրենց նամակ-

ները իրենց ծախքով մարդ կը խրկէին կ'առնէին, եւ կամ անձամբ կ'առնէին զանոնք նամակատունէն։ Շատ նամակներ շատ օրեր կ'ուշանային կամ երկայն պտոյտներ ընելէ յետոյ նոցա տէրերն կ'առնուին։ Այսօր թղթատարութիւնը կանոնաւոր վարձեալ պաշտօնեաններ ունի, որք նամակներն կը ցրուեն իրենց հասցէներուն։

---

## ԴՐՈՇՄԱԹՈՒՂԹ

Դուք ամենքդ ալ տեսած էք դրոշմաթղթեր։ Ասոնք փոքրիկ նկարներ կամ դէմքեր են։ Ունին զանազան արժէք իրենց տպման համար գործածուած գոյներուն համաձայն։ Անոնք կը գործածուին նամակատունը յանձնուած թղթակցութեան առարկայից և նամակաց վճարումը այլ ևս ազատ ըլլալն յայտնելու համար։ Ժամանակաւ հարկ էր անձամբ երթալ թղթատուն կամ մարդ ղրկել և նամակին գինը վճարել։ Այսօր թղթատարը եւ սեղանաւորը կը վաճառեն դրոշմաթուղթ. մենք զայն կը փակցունենք նամակին վրայ, նամակատուփը ձգելէ առաջ, և այսպէս նամակը կը հասնի իւր տիրոջ։

Այս դիւտոյն փառքը Անգղիոյ կը վերաբերի, ուր առաջին դրոշմաթուղթք յօրինուեցան 1840 ին։ Լուի Ֆիկիէ հետեւեալ կերպով կընէ գիւտոյն պատմութիւնն la Science Ullustrée ի անցեալ տարւոյ թիւերէն միոյն մէջ։

« Դրոշմաթղթերու գիւտը կ'ընծայուի ընդհանրապէս Անգղիոյ Հասարակաց Խորհրդարանի մի անդամոյն, Սըր Ռաուլէնտ Հիլի. բայց այս գիւտոյ մասին Անգղիոյ իրաւունքները խնդրոյ նիւթ են, և գիւտոյն փառքը Ֆրանսական թղթատարութեան վարչութեան

կ'ընծայուի յոմանց, բայց երկու կողմէ փաստեր կը պակսին։

«Կըսուի թէ այս դարուս կիսուն Փարիզի Սէնդ-Անթուան արուարձանին մէջ առանձինն բնակող Բոլոնիացի Հրեայ մը Գրաքովիէն յաճախ նամակներ կ'ընդունէր Նամակատան մէջ Մնալի (poste-restante), իսկ ինք միշտ զանոնք կը մերժէր քանի մը վայրկեան ուշի ուշով աչքէ անցունելէ յետոյ։ Երբ այս մարդը դէպի Գրաքովիա ճամբորդելու եղաւ, Թղթատարութեան պաշտօնեայ մը անոր հարցումներ ըրաւ տրուած նամակները մերժելու տարօրինակ սովորութեանը վըրայ, անշուշտ իւր հարցման հետ քիչ մ'ալ դրամ խըթելով, ձեռնա՛րկ՝ որ Հրէի մը համար անմերժելի չէ։ Որուն փոխարէն Հրեան եւս սա խոստովանութիւնը ըրաւ. «Իմ կինս կը գրէր նամակին վրայ Տէր, աղջիկս ալ կը գրէր իմ անունս, փեսաս՝ Մնալի իմն ի Նամակատան և թոռնս՝ Փարիզ։ Այս կերպով կը տեղեկանայի թէ բոլոր ընտանիքս առողջ էին.

«Թղթատարական վարչութիւնն այն ատեն համոզուեցաւ թէ հարկ էր փոխել նամակաց փոխադրութեան գինն, որ այն ատեն շատ բարձր էր, վասնզի կը յիշեմ թէ 1840 ին Մոնփէլիէէն ի Փարիզ նամակի մը համար 18 (20 սոլը 1 Ֆրանք է) կը տրուէր։ Այն ժամանակէն է որ գաղիական Թղթատարութեան վարչութիւնը սկսաւ Թղթատարութեան բարենորոգման մը ուսումնասիրութիւնն ընել։

«Սակայն հաւաստեաւ Անգղիոյ մէջ է որ առաջին անգամ դրոշմաթուղթք գործածուած են, և պատճառ եղած են փոխադրութեան գնոյն մեծապէս նըւազման և հասութից աճման։

«Այս բարենորոգումը 1840 ին հաստատուեցաւ

յԱնգղիա Խորհրդարանին քուէարկութեամբ։

« Ահա այն մանրավէպը՝ որ Անգղիոյ մէջ կը պատմուի ի մասին այն եղանակին՝ որով Հասարակաց Խորհրդարանը համոզուեցաւ թղթատարական փոխադրութեան գինը նուազեցնելու պէտքին։

1837ին, Հասարակաց Խորհրդարանի անդամ Սըր Ռոուլէնտ Հիլ Սկովտիոյ մէջ ճանապարհորդած ատեն իջեւանեցաւ պանդոկ մը, ուր ականատես եղաւ հետեւեալ իրողութեան։ Ցրուիչը սպասուհւոյն կը բերէ նամակ մը իւր եղբօրմէն։ Սպասուհին ուշի ուշով կը քննէ պահարանը, յետոյ ետ կուտայ նամակը ցրուիչին, պատճառելով թէ դրամ չունի գինը վճարելու համար։ Անգղիացին յայնժամ կ'առաջարկէ որ ինք վճարէ նորա համար, բայց երիտասարդուհին կը մերժէ ի սպառ այս ծառայութիւնը։ Ճամբորդը այս յամառութեան վրայ զարմանալով իւր հարցման կ'ստիպէ զանի՝ սա խոստովանութիւնն ընելու թէ առանց քսակին բերանը բանալու իւր եղբօր հետ կը թղթակցէր ինչ ինչ որոշեալ նշաններով, որք նամակին պահարանին վրայ կը դծուէին։

« Սըր Ռոուլէնտ Հիլ այս դէպքը պատմեց Խորհրդարանին մէջ՝ հասկցնելու համար նամակաց գինն իջեցնելու հարկը։ Որպէս զի աղքատներն կարենան թղթակցիլ առանց պետական գանձուն դէմ նենգելու՝ առաջարկեց այդ գինը մէկ բէննիի իջեցունել։ Նուազումը քուէարկուեցաւ և Սըր Ռոուլէնտ Հիլի յանձնուեցաւ Թագուհւոյն գլուխը ներկայացնող պատկերներ փորագրել տալ և վերակացու լինել դրոշմաթուղթերու առաջին հանման՝ որ 1840ին եղաւ։

« Ի Գաղիա առաջին դրոշմաթուղթք՝ որոց համար 25 սանդիմ կը տրուէր 15 կռամ կշռող նամակի մը հա-

մար՝ Փարիզու փողերանոցին մէջ փորագրուեցան Հիւլօյի ձեռամբ և 1849 ին հանուեցան։ Ցետոյ գինը 15 սանդիմի իջաւ »։

Թուրքիա 1856ին հնարուեցան դրոշմաթուղթք. որք այլ և այլ ձեւեր առնելէ յետոյ կը կրեն այժմ Օսմ. զինանշաններ։

Մի քանի երկիրներ ընդունած են այլ և այլ պատկերներ տարբեր գնով դրոշմաթղթերու համար։ Այսպէս Ամերիկայի Միացեալ Նահանգաց դրոշմաթղթերն երկրին երեւելի մարդիկը կը ներկայացնեն, զոր օրինակ Ֆրանքլին, Վաշինկթոն։

Ուրիշ երկիրներ իրենց դրոշմաթղթերու վրայ տըպաւորած են իրենց ազգային պէնքերն կամ այն երկրին յատուկ ծաղիկներ, պտուղներ, կենդանիներ։

Պրազիլիոյ Նոր հասարակապետութիւնը իւր դրոշմաթղթերու վրայ դրոշմած է արժէքին համաձայն, զանազան գոյն յատակի վրայ, հարաւային խաչադնդին համաստեղութիւնը հինգ աստղներով։

Ճաբոնի դրոշմաթղթերն երկրին ծաղիկները, թըռչունները կը պատկերեն։

Արեւմտեան Աւստրալիա կարապն ընտրեց իւր դըրոշմաթղթերուն համար իբրեւ խորհրդանշան։

Եգիպտոս իրեններուն վրայ դրոշմեց բուրգերն և Սփինքսը, իւր նախնի քաղաքակրթութեան յիշատակներ։

Թէռ-Նէօֆի անգղիական գաղթականութիւնն ունի դրոշմաթղթեր՝ որոց վրայ նկարուած են փոկեր, ձողաձուկեր։

Դրոշմաթղթերու գործածութիւնն այսպէս քաղաքակրթեալ աշխարհի ամէն կողմերն արագօրէն տարածուիլն կը ցուցնէ թէ ո՞րչափ կարեւոր է անոր գո-

յութիւնն։ 1840 ին, երբ հնարուեցան անոնք, ո՞վ գիտէր թէ անոնք իբրեւ դրոշմաթուղթ ծառայելէ զատ, բաւական կարեւոր առեւտրոյ մը պատճառ պիտի ըլլային։

Մանկունք այս փոքր պատկերներէն հրապուրուելով մտածեցին զանոնք հաւաքել։ Ծնողք եւս շահագրգռուեցան եւ իրենց հաշուոյն հաւաքումներ կազմեցին։ Դրոշմաթղթերու ալպոմներու ճաշակն այսպէս բոլոր աշխարհ տարածուեցաւ ընկերութեան ամէն դասակարգերուն մէջ։ Եւ այս հաւաքածոներէն նոր վաճառականութիւն մը յառաջ եկաւ։

Փոքրիկ պետութիւններէն ոմանք, կ՚ըսուի թէ, հաւաքողներու համար աւելի դրոշմաթուղթ կը ծախեն քան թէ նամակի համար։

Կ՚ըսուի նաեւ թէ շատ երկիրներու մէջ պարբերաբար կը փոխուի դրոշմաթղթերու նկարը հաւաքողաց գնումներէն շահ ընելու համար։

Գալով տղայոց. հաւաքման սէրը զանոնք զբաղեցնելով եւ ախորժելի զբօսանք մը ընծայելով հանդերձ կրնայ նաեւ անոնց բան սորվեցնել։

Արդարեւ մանուկն այդ դրոշմաթղթերն ստէպ ձեռք առնելով եւ դասակարգելով կը բաղձայ գիտնալու թէ աշխարհի ո՛ր մասին մէջ կը գտնուի այն երկիր՝ ուստի կուգան անոնք։ Այսպէս անաշխատ կը յաւելու իւր պատմական եւ աշխարհագրական հմտութիւնքը։

Նմանապէս կ՚ուսանի այլ եւ այլ ժողովրդոց դրամական դրութեանց մէջ եղած տարբերութիւնները, եւ կ՚ընտելանայ շուտով օտար դրամոց անուններուն, ինչպէս նաեւ նոցա արժէքին։

---

Ցուցարտ այս ամէն տեղեկութեանց կը դնեմք աստ նամականուն յանձնուած թղթակցութեան վերաբերեալ նիւթոց այժմու գինն ու կշռոցը։

Օրն. Պետութեան ներքին եւ ծովեզերեայ քաղաքաց համար։

| ՊԱՐԶ ՆԱՄԱԿ | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| կռամ | ղրուշ | կռամ | ղրուշ | կռամ | ղրուշ | կռամ | ղրուշ | կռամ | ղրուշ | կռամ | ղրուշ |
| 15 | 1 | 105 | 7 | 195 | 13 | 285 | 19 | 375 | 25 | 465 | 31 |
| 30 | 2 | 120 | 8 | 210 | 14 | 300 | 20 | 390 | 26 | 480 | 32 |
| 45 | 3 | 135 | 9 | 225 | 15 | 315 | 21 | 405 | 27 | 495 | 33 |
| 60 | 4 | 150 | 10 | 240 | 16 | 330 | 22 | 420 | 28 | 510 | 34 |
| 75 | 5 | 165 | 11 | 255 | 17 | 345 | 23 | 435 | 29 | 525 | 35 |
| 90 | 6 | 180 | 12 | 270 | 18 | 360 | 24 | 450 | 30 | 540 | 36 |

Յանձնարարեալ նամակներու համար որոշեալ գնէն մէկ ղրուշ աւելի կ'առնուի։ Իսկ երբ յանձնարարեալ

*նամակի մը տիրոջը յանձնուիլը յայտնող ազդագիրը պահանջուի, այն ատեն մէկ ղրուշ ևս պէտք է տալ։ Ասկէ կը հասկցուի որ նամակի ծանրութիւնն ինչ որ ալ ըլլայ, յանձնարարեալի տարբերութիւնն միևնոյն կը մնայ։ Աստանօր կը յաւելումք թէ Օսմանեան թղթատարութիւնը ի դիւրութիւն թղթակցողաց՝ թղթատարական տոմսակներ ունի երկիջեան* (carte postale), *որոց առաջին էջին վրայ պէտք է գրել* միայն *նամակ խրկուելու անձին հասցէն, իսկ երկրորդ էջին վրայ նամակն։*

*Միջազգային թղթատարութիւնն պարզ նամակագիներն վերոգրեալ ցուցակին համեմատ կ'ընդունի։*

*Տպագրեալ գրեանց ևայլնի համար իւրաքանչիւր* 50 *կռամի* 10 *փարայ. ծանրութիւնը մինչև* 2000 *կռամ կ'ընդունուի։*

*Անարժէք օրինակներ կ'ընդունուին մինչև* 250 *կըռամի ծանրութեամբ, բացի առաջին* 50 *կռամէն՝ որոյ համար* 20 *փարայ կ'առնուի, միւս բաժանմանց համար մինչև* 250 *կռամ* 10*ական բարա գին կ'առնուի։*

*Ամէն տեսակ տպագրեալ գրեանք, հրատարակութիւնք, վաճառականի ձեռագիր հաշուեցուցակ կամ տետրակներ, աշխարհացոյց տախտակ, նօթա, ֆէրման, հէօճէթ, ևայլն, ևայլն թղթատարութեան միջոցաւ կը յղուին ըստ հետևեալ ցուցակի, իւրաքանչիւր* 50 *կռամի համար* 10 *փարա ներքին քաղաքաց համար, և իւրաքանչիւր* 75 *կռամի համար* 10 *փարայ ծովեզերեայ քաղաքաց համար։*

*Առ առաւելն* 2000 *կռամի ծանրութեամբ կ'ընդունուի։*

Օսմանեան Պետութեան ներքին եւ ծովեզերեայ քաղաքաց համար ։

| ներքին | | ծովեզերեայ | | ներքին | | ծովեզերեայ | | ներքին | | ծովեզերեայ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| կռամ | դրուշ | կռամ | դրուշ | կռամ | դրուշ | կռամ | դրուշ | կռամ | դրուշ | կռամ | դրուշ |
| 50 | 1/4 | 75 | 1/4 | 350 | 1 3/4 | 525 | 1 3/4 | 650 | 3 1/4 | 975 | 3 1/4 |
| 100 | 1/2 | 150 | 1/2 | 400 | 2 | 600 | 2 | 700 | 3 1/2 | 1050 | 3 1/2 |
| 150 | 3/4 | 225 | 3/4 | 450 | 2 1/4 | 675 | 2 1/4 | 750 | 3 3/4 | 1125 | 3 3/4 |
| 200 | 1 | 300 | 1 | 500 | 2 1/2 | 750 | 2 1/2 | 800 | 4 | 1200 | 4 |
| 250 | 1 1/4 | 375 | 1 1/4 | 550 | 2 3/4 | 825 | 2 3/4 | 850 | 4 1/4 | 1275 | 4 1/4 |
| 300 | 1 1/2 | 450 | 1 1/2 | 600 | 3 | 900 | 3 | 900 | 4 1/2 | 1350 | 4 1/2 |

Իսկ ամէն տեսակ անարժէք օրինակի համար (échantillon sans valeur) բացի հեղուկ կամ կրային և դիւրաբեկ նիւթերէ՝

Իւրաքանչիւր 50 կռամի համար 10 փարայ ներքին քաղաքաց համար և իւրաքանչիւր 75 կռամի համար 10 փարայ ծովեզերեայ քաղաքաց համար ։

Առ առաւելն 2000 կռամի ծանրութեամբ կ'ընդուն-

ուի ։ 250 կռամէն մինչեւ 2000 կռամ իւրաքանչիւր 50 կռամի համար 20 փարայ է ։

Գիներու մասին վերոնշանակեալ ծանօթութիւնները տալէ յետոյ կ'աւելցնենք նաեւ հետեւեալ կարեւոր տեղեկութիւնները ։ Թղթատարութեան պայուսակները կը յանձնուին Մախսուսէ, Խտիվիյէ, Կուրճի, Քիմի, Րուսական, Մէսաժըրի Մարիթիմ, Ֆրէսինէ, Ֆլօրիօ-Ռիւպպատինօ, Բանհէլլէնիք թղթատար շոգենաւներուն, որոնք շաբաթը մի անգամ կամ 15 օրն մի անգամ իրենց շրջանները կը կատարեն ։ Այս թըղթատարներ ընդհանրապէս որոշեալ օրերուն չերթալնուն համար աւելորդ համարեցինք անոնց մեկնման մանրամասն ցուցակը դնել ։

Եւրոպական Ռուսիա, Պէսարապիա թէ՛ Օտեսայի ճամբով և թէ երկաթուղւով կը խրկուին . իսկ Ռուսական Կովկասիա, Պուխարա Պաթումի ճամբով կը խրկուին ։

Վառնա, Վառնա-Ռուսճուգ, Պուրկազ, Կալաց, Սուլինա, Պրայլա, Քէօստէնճէ թէ՛ ծովու ճամբով և թէ երկաթուղւով կը խրկուին ։

Ատէն, Ատէն-Պոմպայ, Չին, Ճաբոն Սուէզի ճամբով Խտիվիէ շոգենաւներով կը խրկուին . Խտիվիէն ամէն չորեքշաբթի կանոնաւորապէս կը մեկնի մեր նաւահանգստէն ։

Երկաթուղւոյ գծով օտար երկիրներ խրկուելու նամակներն հետեւեալ պայուսակներու մէջ կը դրուին ։

### Երթալիք երկիրներ

Սերպիա (Փիրօթ-Նիշի պայուսակով) ։
Հունգարիա, Պօսնա, Հէրսէկովին, Գարատաղ,

Աւստրիա, Զուիցերիա, Ռուսիա, (Սէմիին-Գուքրէշի պայուսակով)։

Մէկլէնպուրկ, Համպուրկ, Տանիմարգա, Շուէտ-Նորվէկիա, Բրուսիա, Գրատէնպուրկ, Շլէզվիկ, (Օտէրպէրկ-Գրէսլաւի պայուսակով)։

Սաքսոնիա, Հաննօվէր, Գրէմա, Օտէնպուրկ, (Թէչէն-Տրէստընի պայուսակով)։

Գաւիէրա, Պատէն, Վիւրթէնպէրկ, Ալզաս-Լօրէն, Տարմշտատ, Պէլժիա, ստորին պետութիւնք, (Բասաօ-Րէկէնսպուրկի պայուսակով)

Րումանիա, (Վէրճէրօվօ-Գուքրէշի պայուսակով)։

Իտալիա, Թունուզ, (Բօնտէպա-Բօլօնիայի պայուսակով)։

Ֆրանսա, Սպանիա, Փորթուգալ, Ալժէրիա, Մարօգ, Հարաւային Ամերիկա, Պրազիլիա, Բարակուա, Ուրակուա, Գոլոմպիա, կեդրոնական Ամերիկա, Մէկսիկա, Կուատէմա, Սան-Սալվատոր, Արեւմտեան Հնդկաստան, Անգլիեան կղզիք, Գուպա, Ճամայիքա, (Ավրիգուռ-Բարիզի պայուսակով)։

Անգղիա, Հիւսիսային Ամերիկա, Միացեալ Նահանգքը, և Կանատա։ (Լոնտրաի պայուսակով)։

## ՎԵՐՋ



# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

